ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՀԿՊ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ

8

ՕԳՈՍՏՈՍ

ԵՐԵՎԱՆ 1957

ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

№ 8
Օ Գ Ո Ս Տ Ո Ս
1957 Թ.

★

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ
ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ЛЕНИНЯН УГИОВ — ТЕОРЕТИЧЕСКИЙ И
ПОЛИТИЧЕСКИЙ ЖУРНАЛ ЦК КП АРМЕНИИ

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
XXXIV
ՏԱՐԻ

## Բ Ո Վ Ա Ն Դ Ա Կ Ո Ւ Թ Յ Ո Ւ Ն

## СОДЕРЖАНИЕ








# ՊԱՐՏԻԱՅԻ ՈՒԺԸ ՆՐԱ ՇԱՐՔԵՐԻ ՄԻԱՍՆՈՒԹՅԱՆ, ՂԵԿԱՎԱՐՈՒԹՅԱՆ ԿՈԼԵԿՏԻՎՈՒԹՅԱՆ ՄԵՋ Է

*ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի Հունիսյան պլենումը (1957 թ.) կարևոր ուղենիշ է բոլշևիկյան պարտիայի լենինյան միասնության ամրապնդման, կոմունիզմի կառուցման գործում նրա ղեկավար ու կազմակերպիչ դերի բարձրացման ճանապարհին։*

*Պլենումը քննարկեց ՍՄԿՊ Կենտկոմի Նախագահության ներսում գոյացած՝ Գ. Մ. Մալենկովի, Լ. Մ. Կագանովիչի, Վ. Մ. Մոլոտովի հակապարտիական խմբակի հարցը, որն իրեն նպատակ էր դրել փոխել պարտիայի քաղաքական գիծը, արգելակել XX համագումարի որոշումների իրականացումը, որոշումներ, որոնց մեջ այդ գիծը իր կոնկրետ արտահայտությունն էր գտել։ Իրենց մտադրությունն իրականացնելու համար խմբակի մասնակիցները ձգտում էին ֆրակցիոն մեթոդներով փոխել պարտիայի ղեկավար օրգանների կազմը, որոնք ընտրվել են ՍՄԿՊ Կենտկոմի պլենումում։*

*Մալենկովի, Կագանովիչի, Մոլոտովի և նրանց հարած Շեպիլովի հակապարտիական խմբակը պարտիայի գծին դեմ դուրս եկավ «այն ժամանակ,— ինչպես նշված է պլենումի որոշման մեջ,— երբ պարտիան, Կենտրոնական Կոմիտեի ղեկավարությամբ, հենվելով համաժողովրդական աջակցության վրա, վիթխարի աշխատանք է կատարում XX համագումարի պատմական որոշումների կատարման ուղղությամբ, որոնց նպատակն է է՛լ ավելի զարգացնել ժողովրդական տնտեսությունը և անընդհատ բարձրացնել սովետական ժողովրդի կենսամակարդակը, վերականգնել ներպարտիական կյանքի լենինյան նորմերը, վերացնել ռևոլյուցիոն օրինականության խախտումները, ընդլայնել ժողովրդական մասսաների հետ պարտիայի կապերը, զարգացնել սովետական սոցիալիստական դեմոկրատիան, ամրապնդել սովետական ժողովուրդների բարեկամությունը, կիրառել ազգային ճիշտ քաղաքականություն, իսկ արտաքին քաղաքականության բնագավառում՝ վերացնել միջազգային լարվածությունը՝ կայուն խաղաղություն ապահովելու նպատակով, և երբ այս բոլոր բնագավառներում արդեն ձեռք են բերվել լուրջ հաջողություններ, որոնց մասին գիտե ամեն մի սովետական մարդ»։*

*Կենտկոմի պլենումի որոշման մեջ բացահայտված ու մերկացված են խմբակի մասնակիցների հակապարտիական հայացքները, որոնք տարակարծիք են պարտիայի գծի հետ, նրա XX համագումարի որոշումների հետ։ Ներքին ու արտաքին քաղաքականության բոլոր արմատական, սկզբունքային հարցերում, որ միահամուռ կերպով պաշտպանում և բացառիկ ակտիվությամբ պարտիայի ղեկավարությամբ կենսագործում է սովետական ժողովուրդը, խմբակի անդամներն ունեին այլ, պարտիային հակադիր հայացքներ։ Նրանք դեմ էին միութենական ռեսպուբլիկաների իրավունքների ընդարձակմանը, դրանով իսկ դիմադրելով պարտիայի գծին՝ ավելի արագ զարգացնել ազգային ռեսպուբլիկաների էկոնոմիկան ու կուլտուրան և էլ ավելի ամրապնդել ՍՍՌՄ ժողո-*

վորդների բարեկամությունը։ Հակապարտիական խմբակը դիմադրում էր բյուրոկրատիզմի դեմ պայքարելու և պետական ապարատը կրճատելու ուղղությամբ պարտիայի միջոցառումներին, պարտիայի նախաձեռնությամբ կիրառվող արդյունաբերության ու շինարարության կառավարումը վերակառուցելուն, դրանով իսկ դեմ դուրս գալով դեմոկրատական ցենտրալիզմի լենինյան սկզբունքին։ Պարտիան առաջադրել և հաջողությամբ իրականացնում է գյուղատնտեսության շեշտակի վերելքի խնդիրը, այնինչ հակապարտիական խմբակի մասնակիցները առարկում էին այն կարևորագույն միջոցառումներին, որոնք ապահովում են այդ խնդրի լուծումը։ Այդ խմբակն ըստ էության փորձում էր դիմադրել սոցիալական տարբեր սիստեմի պետությունների խաղաղ գոյակցության գծին, միջազգային լարվածության թուլացմանը և ՍՍՌՄ բարեկամական հարաբերությունների հաստատմանը բոլոր երկրների հետ։

ՍՄԿՊ XX համագումարը, նրա պատմական որոշումները արագացրին ՍՍՌՄ առաջխաղացումը դեպի կոմունիզմ, հսկայական դրական ազդեցություն գործեցին և շարունակում են գործել մեր ամբողջ քաղաքական, տնտեսական ու կուլտուրական կյանքի վրա, պետական ու պարտիական ամբողջ շինարարության վրա։ Մեծ վերելք է ապրում մեր Հայրենիքը։ Միայն քաղաքականապես կույրերը, իսկ հակապարտիական խմբակի մասնակիցները հենց այդպիսին էին, միայն նորը տեսնել չցանկացող մարդիկ ընդունակ են չնկատելու մեր առաջընթացը, ամբողջ կարևորությունն այն փոփոխությունների, որ տեղի են ունեցել երկրի էկոնոմիկայում, նրա կուլտուրայի զարգացման մեջ։ Ինչպես նշված է պլենումի որոշման մեջ, ընկ. ընկ. Մալենկովի, Կագանովիչի ու Մոլոտովի պարտիայի գծից հեռացած դիրքի հիմքն այն է, որ նրանք գերի են եղել և գերի են հին պատկերացումներին ու մեթոդներին, կտրվել են պարտիայի ու երկրի կյանքից, չեն տեսնում նոր պայմանները, նոր իրադրությունը, ցուցաբերում են կոնսերվատիզմ, համառորեն կառչում են աշխատանքի իրենց դարն ապրած, դեպի կոմունիզմ առաջընթացի շահերին չհամապատասխանող ձևերին ու մեթոդներին, ժխտելով այն, ինչ ծնունդ է առնում կյանքում և բխում է սովետական հասարակության զարգացման շահերից, ամբողջ սոցիալիստական լագերի շահերից։

Մեր պարտիան կանգնած է ստեղծագործական մարքսիզմ-լենինիզմի դիրքերում. նա չի հանդուրժում դոգմատիզմը, անկենդան վերաբերմունքը մարքսիստական-լենինյան ուսմունքին, որի նպատակն է աշխարհի արմատական վերափոխումը։ Պարտիայի և նրա Կենտկոմի գործունեությունը, մանավորապես վերջին տարիներս, տնտեսական-քաղաքական խնդիրների լուծման գործում թեորիան ստեղծագործաբար կիրառելու օրինակ է։ Հենց սա է արմատական պատճառներից մեկը այն հաջողությունների, որ ձեռք են բերվել ինչպես ներքին, այնպես էլ արտաքին քաղաքականության մեջ։ Այնինչ հակապարտիական խմբակի մասնակիցները իրենց ցույց տվին որպես աղանդավորներ ու դոգմատիկներ, տիրացուական մոտեցում ցուցաբերեցին դեպի թեորիան, դեպի պարտիայի քաղաքականության ըմբռնումն ու կիրառումը։ Եվ թեպետ նրանք մարքսիզմ-լենինիզմի ուղղափառ մեկնաբանողի դերի հավակնությունն ունեին, ենթադրելով, թե իբր միմիայն իրենք են ի վիճակի ճիշտ հասկանալու գիտական կոմունիզմի թեորիան և առաջ մղելու այն, այնուամենայնիվ դա ոչ այլ ինչ էր, եթե ոչ փուչ ու անպետք հավակնություն այնպիսի մարդկանց, որոնք հետ են մնացել կյանքից, գուցե և մարքսիզմ-



լենինիզմի կլասիկների երկերից որոշ ցիտատներ լավ հիշում են, բայց չեն կարողանում ու չեն ցանկանում թեորիան ստեղծագործաբար կիրառել կոմունիզմի համար մղվող պայքարի պրակտիկայում, ինչպես Լենինն է սովորեցրել՝ թեորիան գործողության ղեկավարություն դարձնել։ Նրանք չեն հասկացել, որ ներկա պայմաններում մարքսիզմ-լենինիզմը գործողության մեջ՝ դա ակտիվ պայքարն է ՍՄԿՊ XX համագումարի որոշումների իրականացման համար։ Այսօր մարքսիստական-լենինյան ուսմունքը կենսագործել՝ այդ նշանակում է բարելավել արդյունաբերության ղեկավարումը, հասնել գյուղատնտեսության համակողմանի վերելքին, նյութական բարիքների առատություն ստեղծելուն, ապահովել ժողովրդական մասսաների նախաձեռնության ըստամենայնի զարգացումը, ամրապնդել ՍՍՌՄ ժողովուրդների բարեկամությունը։

Ահա ներկայումս հենց այդպիսի ստեղծարար գործունեությամբ են զբաղված բանվոր դասակարգը, կոլտնտեսային գյուղացիությունը, մեր փառավոր ինտելիգենցիան, բոլոր սովետական մարդիկ։ Պարտիայի ղեկավարությամբ նրանք լարված աշխատում են ՍՄԿՊ XX համագումարի որոշումների կատարման համար։ Եվ այդ աշխատանքային սխրագործությունները նորանոր հիանալի հաջողություններով են պսակվում։ Բարձր թափով է զարգանում սոցիալիստական ինդուստրիան։ Այդ են վկայում արդյունաբերության աշխատանքի արդյունքները 1957 թվականի 6 ամսվա ընթացքում։ Արդյունաբերության համախառն արտադրանքի կիսամյա պլանը ՍՍՌՄ-ում ամբողջությամբ կատարված է 104 տոկոսով։ Անցյալ տարվա առաջին կիսամյակի համեմատությամբ արդյունաբերական արտադրանքն աճել է 10 տոկոսով։ Շարք են մտնում նորանոր ֆաբրիկաներ ու գործարաններ, դոմենյան վառարաններ ու հանքահորեր, էլեկտրակայաններ։ Այժմ ավելի, քան երբեք, տնտեսության մեր սիստեմը ակնառու կերպով ցույց է տալիս, թե որքան մեծ են նրա պոտենցիալ հնարավորությունները, թե որքան ռեալ և գործնականում հասանելի է XX համագումարի կողմից առաջադրված ՍՍՌՄ գլխավոր տնտեսական խնդիրը՝ բնակչության մեկ շնչին ընկնող արտադրանքի տեսակետից հասնել ու անցնել առավել զարգացած կապիտալիստական երկրներից։

Կգա ժամանակ, երբ ՍՍՌՄ-ն բնակչության մեկ շնչին ընկնող արտադրանք ավելի շատ կթողարկի, քան կապիտալիզմի ամենազարգացած երկրները, և դա ավելի շուտ կլինի, քան ենթադրում են բուրժուական քաղաքագետներն ու տնտեսագետները, ինչպես և ոմանք մեր երկրում։ Վերցնենք, թեկուզ, գյուղատնտեսական արտադրության զարգացման արդյունքները։ 1953 թվականի սեպտեմբերին Կենտկոմի պլենումը կարևորագույն համաժողովրդական խնդիր դրեց՝ հասնել գյուղատնտեսության շեշտակի վերելքի։ Անցել է մոտ չորս տարի, որ մեծ ժամանակամիջոց չէ, եթե հաշվի առնենք առաջադրված խնդրի վիթխարիությունը և այն, որ գյուղատնտեսության որոշ ճյուղեր բարձիթողի արված են եղել։ Եվ այնուամենայնիվ առաջադրված խնդրի լուծման ուղղությամբ արդեն շատ բան է արված։ Զգալիորեն շատ ավելի հացահատիկ, տեխնիկական կուլտուրաներ, բանջարեղեն, անասնապահական մթերքներ են արտադրվում, քան մի քանի տարի սրանից առաջ։ Կյանքը, պրակտիկան հաստատեց, որ ճիշտ ու արդյունավետ են եղել պարտիայի միջոցառումները խամ ու խոպան հողերի յուրացման, գյուղի աշխատավորների նյութական շահագրգռվածության բարձրացման, գյուղատնտեսական արտադրության բարձրացման գործում կոլտնտեսությունների ու կոլտնտեսականների նախա-

ձեռնության առավելագույն զարգացման ուղղությամբ։ Մենք դեռևս սննդամթերքների առատության չենք հասել, և սխալ կլիներ դոհանալ ձեռք բերած հաջողություններով։ Բայց և այն, ինչ արդեն արված է, հաստատ վստահություն է ներշնչում, որ պարտիայի ու կառավարության առաջադրած խնդիրը հաջողությամբ կլուծվի։ Կոլտնտեսությունների ու սովետական տնտեսությունների արտադրությունը նորանոր ուժեր է կուտակում, հայտաբերվում են այդ արտադրության մեջ եղած ամենահարուստ հնարավորությունները։ Դրան ապացույց կարող է ծառայել կոլտնտեսությունների, սովետական տնտեսությունների, ՄՏ կայանների նախաձեռնությամբ ծնունդ առած և իսկապես համաժողովրդական դարձած շարժումը՝ կատարելու առաջադրված խնդիրը, այն է՝ մոտակա տարիներին բնակչության մեկ շնչին ընկնող կաթի, մսի ու յուղի արտադրությամբ հասնել Ամերիկայի Միացյալ Նահանգներին։

Մեր ամբողջ կյանքն իր վրա բուռն ու անշեղ առաջընթացի կնիքն է կրում։ Դրա ակունքը ամենից առաջ գտնվում է ամենալայն մասսաների անսահմանորեն աճած ակտիվության մեջ, նրանց ստեղծագործական նախաձեռնության նոր վերելքի մեջ, որը բառացիորեն հրաշքներ է գործում։ Ֆաբրիկաներում ու գործարաններում, կոլտնտեսությունների ու սովետական տնտեսությունների դաշտերում, լաբորատորիաներում ու գիտական ինստիտուտներում աշխատող սովետական մարդիկ — ահա ովքեր են մեր երկրի բոլոր հարստությունների ստեղծողները և նրանց լիիրավ տերերը։ Եվ հենց դրա համար էլ, որ իսկական տերեր են, նրանք ամեն ինչ անում են, որպեսզի իրենց ձեռքերի ստեղծածը՝ սոցիալիստական կարգն ամրապնդվի և լցվի կենսահյութերով, ավելի հզոր ու անպարտելի դառնա, ավելի շատ բերկրանք ու գոհություն բերի մեր մարդկանց։ Լիովին հաստատվել է մարքսիզմ-լենինիզմի կլասիկների գիտական կանխատեսումը, որոնք նշել են, թե սոցիալիզմը այնպես կարագացնի մարդկության պրոգրեսը, որի մասին անցյալ դարաշրջաններում երազել անգամ չէր կարելի։

Հակապարտիական խմբակի մասնակիցները հեռացել էին պրոլետարիատի դիկտատուրայի սիստեմում Կոմունիստական պարտիայի ղեկավար դերի լենինյան ըմբռնողությունից։ Չէ՞ որ փաստ է, որ նրանցից ոմանք պնդելով, թե իբր մեզ մոտ գոյություն ունի պարտիայի դիկտատուրա, ըստ էության կրկնում էին տրոցկիստական զրպարտանքը պարտիայի հասցեին, իսկ մյուսները, փորձելով հիմնավորել պետական օրգանների վերադասության անհրաժեշտությունը պարտիական օրգանների նկատմամբ, աղավաղում էին լենինյան ուսմունքը պարտիայի դերի մասին՝ պրոլետարական ռևոլյուցիայի հաղթանակից հետո։

Կոմունիստական պարտիան ղեկավար ուժ է պրոլետարիատի դիկտատուրայի սիստեմում։ Միմիայն պարտիայի ղեկավարությամբ կարող է հաջողությամբ ավարտվել այն մեծ պայքարը, որի վերջնական նպատակն է կոմունիզմի կառուցումը։ Պրոլետարիատի դիկտատուրան բնութագրելով որպես համառ պայքար հին հասարակության ուժերի ու տրադիցիաների դեմ, որպես արյունոտ ու անարյուն, բռնի ու խաղաղ պայքար, որպես ռազմական ու տնտեսական, մանկավարժական ու վարչական պայքար, Վ. Ի. Լենինը հետևություն է արել. «Առանց երկաթե և պայքարում կոփված պարտիայի, առանց այնպիսի պարտիայի, որը վայելի այն ամենի վստահությունը, ինչ որ ազնիվ է տվյալ դասակարգի մեջ, առանց այնպիսի պարտիայի, որը կարողանա հետևել մաս-



սայի տրամադրությանը և ազդել նրա վրա՝ անհնարին է հաջող կերպով այդպիսի պայքար մղել» (հատոր 31, էջ 35)։ Քիչ ավելի ուշ Լենինը նորից հաստատում է այս հետևությունը. «Կառավարելու համար հարկավոր է կոփված ռևոլյուցիոն կոմունիստների բանակ ունենալ, այդ բանակը կա, նա կոչվում է պարտիա» (հատոր 32, էջ 59—60)։

ՍՍՌՄ ամբողջ քառասնամյա փորձը, ժողովրդա-դեմոկրատական երկրների ամբողջ փորձը հաստատում է, որ պրոլետարիատի դիկտատուրան հնարավոր է միայն այն ժամանակ, երբ ժողովրդի գլուխ անցած, նրա հետ միասին ընթանում է քաղաքական պարտիան, որը ոգեշնչված է մարքսիզմ-լենինիզմի գաղափարներով և հետևողականորեն կենսագործում է այդ գաղափարները։

Կենտկոմի Նախագահությունը և Կենտրոնական Կոմիտեն ամբողջությամբ համբերատարությամբ ուղղում էին ընկ. ընկ. Մալենկովին, Կագանովիչին, Մոլոտովին։ Հայտնի է, թե պլենումներում և Կենտրոնական Կոմիտեի որոշումներում ինչպիսի շիտակությամբ, անկեղծությամբ ու լենինյան սկզբունքայնությամբ էին քննադատության ենթարկվում նրանց սխալ հայացքները։ Կենտկոմը հույս էր դնում, թե այդ ընկերները դասեր կառնեն իրենց սխալներից, չեն պնդի նրանց վրա և համընթաց կգնան պարտիայի ամբողջ ղեկավար կոլեկտիվի հետ։ Սակայն նրանք շարունակում էին մնալ իրենց սխալ, ո՛չ լենինյան դիրքերում։

Պարտիայի դեմ պայքարի տրամաբանությունը, իրենց սխալ դիրքերի համառ պնդումը, իր օրենքներն ունի։ «Կա ֆրակցիոն պայքարի օբյեկտիվ տրամաբանություն, որը մինչև անգամ լավագույն մարդկանց, եթե սրանք պնդում են իրենց բռնած սխալ դիրքը, անխուսափելիորեն հասցնում է մի դրության, որը փաստորեն ոչնչով չի տարբերվում անսկզբունք դեմագոգիայից» (Լենին, հատոր 32, էջ 44)։

Խմբակի մասնակիցների ո՛չ պարտիական, ո՛չ լենինյան հայացքները, դրանց վրա պնդելը, պարտիայի ձայնին ունկնդրել չուզենալը հասցրել են նաև հակապարտիական գործողությունների՝ ֆրակցիոն գործունեության ՍՄԿՊ Կենտկոմի Նախագահության թիկունքում, դավ նյութելու և ինտրիգների, պայքարի սխալ և բոլշևիկյան քաղաքական գործչին անվայել մեթոդների։ Ինչպես ՍՄԿՊ Կենտկոմի պլենումի որոշման մեջ է ասված, «Համոզվելով, որ իրենց ոչ ճիշտ ելույթներն ու գործողությունները շարունակ հակահարված են ստանում Կենտկոմի Նախագահությունում, որը հետևողականորեն կենսագործում է պարտիայի XX համագումարի գիծը, ընկ. ընկ. Մոլոտովը, Կագանովիչը, Մալենկովը բռնեցին պարտիայի ղեկավարության դեմ խմբակային պայքարի ուղին։ Դավ նյութելով հակապարտիական հիմքի վրա, նրանք իրենց առջև նպատակ էին դրել փոխել պարտիայի քաղաքականությունը, պարտիան վերադարձնել ղեկավարման այն ո՛չ ճիշտ մեթոդներին, որոնք դատապարտվեցին պարտիայի XX համագումարի կողմից։ Նրանք դիմեցին ինտրիգային եղանակների և գաղտնի կերպով դավ նյութեցին Կենտրոնական Կոմիտեի դեմ»։ Դրանով իսկ նրանք կանգնեցին ֆրակցիոն պայքարի ուղու վրա, խախտեցին պարտիայի Կանոնադրությունը և պարտիայի X համագումարի որոշումը «Պարտիայի միասնության մասին», որ մշակել է Լենինը։ Խմբակի մասնակիցներն իրենց ֆրակցիոն գործունեությամբ ոտնակոխ արին պարտիական կյանքի տարրական նորմերը, որոնք պահանջում են պարտիական խստագույն

դիսցիպլինա պահպանել, խախտեցին կոլեկտիվ ղեկավարության սկզբունքները, անտեսեցին լենինյան այն ցուցումը, թե «դժգոհությունը կենտրոնների անձնական կազմից, բխելիս լինի դա անձնական գրգռվածությունից, թե այն տարաձայնություններից, որոնք պարտիայի այս կամ այն անդամին թվում են լուրջ, չի կարող և չպետք է հասցնի գործողությունների անլոյալ եղանակի» (հատոր 7, էջ 67)։

Հակապարտիական խմբակի մասնակիցները գործում էին ոչ լոյալ, որպես անսկզբունք պոլիտիկաններ, որոնք հանուն իրենց շահերի պատրաստ են ամեն ինչի։ Սկզբունքային գիծը միակ ճիշտ գիծն է, սովորեցրել է Վ. Ի. Լենինը։ Ե՛վ մեծ, և՛ փոքր բաներում ելնել պարտիայի, ժողովրդի, երկրի արմատական շահերից, անշեղորեն ղեկավարվել այդ շահերով, չնահանջել դրանցից — ահա թե ինչ է նշանակում լինել սկզբունքային։

Պլենումում ընկնելով լիակատար մեկուսացած վիճակի մեջ, ստանալով վճռական հակահարված և իրենց հայացքների ու գործողությունների անողոք գնահատական, հակապարտիական խմբակի մասնակիցները սկսեցին խոսել միասնության մասին։ Նրանք Կենտկոմի պլենումի առաջ էլ, տեսնելով իրենց դիրքերի խախուտությունը, զգալով, որ պլենումը չի պաշտպանելու ո՛չ իրենց հայացքները, ո՛չ պարտիայի գծի դեմ պայքարի իրենց անազնիվ, հակապարտիական եղանակները, փորձում էին միասնության կոչ անել։ Նրանք մոռացել էին, որ պարտիային միասնություն է հարկավոր մարքսիզմ-լենինիզմի սկզբունքային բազայի վրա, պարտիայի քաղաքականությունն ընդունելու և նրա կենսագործման համար ակտիվորեն պայքարելու հողի վրա, և ո՛չ թե մարքսիզմ-լենինիզմին խորթ այն հայացքների հիման վրա, որ պաշտպանում էին հակապարտիական խմբակի մասնակիցները և որոնք պարտիային քաշում էին հետ, դեպի ղեկավարման այն սխալ մեթոդները, որ ծնել էր անհատի պաշտամունքը։ Միմիայն մարքսիզմ-լենինիզմի բազայի վրա ստեղծված, պարտիայի գծից շեղումների դեմ պայքարում կոփված միասնությունն է հաստատուն ու անսասան, ամուր՝ ինչպես գրանիտ։ Միմիայն որևէ տեսակի անսկզբունքայնությունից զերծ միասնությունն է, որ ապահովում է իսկական ակտիվ պայքարը պարտիայի գծի համար։ Ահա հենց այսպիսի միասնությունով է բնորոշվում Կենտրոնական Կոմիտեի գործունեությունը։ Եվ ամբողջ պարտիան պաշտպանում է այդ միասնությունը, որովհետև դա, այդ լենինյան սկզբունքային միասնությունը ապահովում է պարտիայի էլ ավելի համախմբվածությունը։

Լենինն ուսուցանել է, որ մարքսիստական պարտիայի միասնությունը հանդիսանում է նրա ուժի ու հզորության անհրաժեշտ պայմանը, հուսալի երաշխիքն այն բանի, որ ինչ պայմաններում էլ լինի, պարտիան հաջողությամբ կկատարի աշխատավորների առաջնորդի ու կազմակերպչի իր միսիան։ Պարտիայի միասնության պահպանությունը, նրա շարքերի անդուլ համախմբումն ու ամրապնդումը Լենինը միշտ էլ համարել է պարտիայի անդամների ու ղեկավար օրգանների ամենակարևոր ու ամենօրյա պարտականությունը։ Նրա վերջին, մահվանից քիչ առաջ գրած հոդվածները, նրա նամակները պարտիայի XII համագումարին, տոգորված են այն հոգատարությամբ, որ կանխվի ու վերացվի պարտիայի պառակտման հնարավորությունը, ամենամեծ վտանգը, որ կարող է սպառնալ պարտիային։ Սովետական իշխանության առաջին տարիների փորձը համոզեց, որ պրոլետարիատի դիկտատու-



րան, նրա ամրությունն ու գործունեությունն ամբողջովին որոշվում է բանվոր
դասակարգի ավանգարդի՝ Կոմունիստական պարտիայի ամրությամբ ու հա-
մախմբվածությամբ։ Պատահականություն չէ, որ սպիտակգվարդիականներն
ու Սովետական Ռուսաստանի մյուս թշնամիներն այն ժամանակներում Սովե-
տական իշխանության տապալման իրենց բոլոր հույսերն ու ակնկալությունը
կապում էին պարտիայի պառակտման հետ։ Լենինն ուղղակի նշում է, որ
«Ռուսկայա միսլ» թերթում հանդես եկող սպիտակ-գվարդիականը «իրավացի
էր, երբ, նախ, Սովետական Ռուսաստանի դեմ իրենց խաղի մեջ հույսը դնում
էր մեր պարտիայի պառակտման վրա, և երբ, երկրորդ, այդ պառակտման
համար հույս էր դնում ներպարտիական ամենալուրջ տարաձայնությունների
վրա» (հատոր 36, ռուս. հրատ., էջ 544)։
Կոմունիստական պարտիայի պառակտումը, որ անցյալում ՍՍՌՄ թըշ-
նամիների փայփայած իղձն է եղել, մեր օրերում էլ մնում է իմպերիալիստա-
կան ռեակցիայի ամենամեծ հույսը՝ սասանելու սովետական կարգերը, թու-
լացնելու ՍՍՌՄ քաղաքական ու տնտեսական հզորությունը։ Իմպերիալիստ-
ները քնում և երազ են տեսնում, որ մեր պարտիայում, նրա ղեկավարու-
թյան մեջ տարաձայնություններ առաջանան, որ այդ տարաձայնությունները
զարգանան ու դառնան մի միջոց, որն ընդունակ լինի պառակտելու, քայքա-
յելու պարտիան, խախտելու նրա համախմբվածությունը, խառնակություն ու
շփոթություն գցի պարտիայի շարքերի մեջ։ Բայց անցյալում չի իրականա-
ցել և երբեք չի իրականանա կոմունիզմի թշնամիների այդ հույսը։ Պարտիայի
միասնության պաշտպան է կանգնած կոմունիստների յոթ միլիոնանոց բա-
նակը, նրանց մարտական ղեկավար շտաբը՝ Կենտրոնական Կոմիտեն։ Պար-
տիան անհաշտ վերաբերմունք ունի դեպի իր միասնությունը թուլացնելու
ամենափոքր փորձերը, այդ միասնությունը ֆրակցիոն գործունեությամբ
խախտելու, մարքսիստական-լենինյան թեորիան աղավաղելու փորձերը, դեպի
պասիվությունը՝ պարտիայի քաղաքականության, նրա որոշումների իրակա-
նացման գործում։
Պարտիայի միասնության կարևորագույն պայմանն է նրա ղեկավարու-
թյան միասնությունը։ Բավական է միայն սասանել պարտիայի ղեկավարու-
թյունը, և այդ անպայման կանդրադառնա պարտիայի դրության վրա։ Ահա թե
ինչու Լենինը բոլոր միջոցները ձեռք էր առնում, որպեսզի Կենտրոնական Կո-
միտեն աշխատի համերաշխ, համախմբված, իր ներսում թույլ չտա այնպիսի
գործողություններ, որոնք տանեն դեպի ղեկավարության պառակտում։ Ինչ-
պես հայտնի է, Լենինն այդ ուղղությամբ մի շարք միջոցներ է մշակել։ Պար-
տիայի գործիչների տարաձայնությունների պատճառով պառակտման և հենց
բուն Կենտկոմում կոնֆլիկտներ առաջանալու վտանգը կանխելու կարևորա-
գույն միջոցներից մեկը Լենինը համարում էր Կենտկոմի անդամների թիվը
ավելացնելը մինչև մի քանի տասնյակ և նույնիսկ հարյուրներ, «այն բանը
կանխելու համար, որ Կենտկոմի սակավաթիվ մասերի կոնֆլիկտները կարողա-
նան չափից ավելի մեծ նշանակություն ստանալ պարտիայի ողջ ճակատագրի
համար»։ Վ. Ի. Լենինն ընդգծում էր. «...մեր պարտիայի կայունությունը, այդ
միջոցառման շնորհիվ, կշահեր հազար անգամ» (հ. 36, ռուս. հրատ., էջ 543)։
Հետևելով Լենինի խորհրդին՝ պարտիան գիծ ընդունեց՝ մեծացնելու հա-
մագումարների միջև ընկած ժամանակամիջոցում իր բարձրագույն ղեկավար
օրգանի կազմը։ XI համագումարի ընտրած Կենտրոնական Կոմիտեն բաղկացած

էր 27 անդամից և 19 թեկնածուից։ XII համագումարը Կենտկոմի անդամների թիվն ավելացնելով հասցրեց 40-ի, XIII համագումարը՝ 53-ի։ Հետագա համագումարներում Կենտկոմի կազմն է՛լ ավելի մեծացվեց։ Այս կազմակերպական միջոցառումը, անտարակույս, սկզբունքային ու գործնական հսկայական նշանակություն ունեցավ այն ներպարտիական պայքարի լուծման գործում, որ ծավալվեց Վ. Ի. Լենինի մահից հետո և տևեց համարյա մի ամբողջ տասնամյակ (մինչև XVII համագումարը)։ Միանգամայն ակներև է, որ այդ պայքարը Կենտկոմում հակալենինյան տարրերին գերակշռություն տալ չէր կարող զգալիորեն շնորհիվ այն բանի, որ Կենտկոմի կազմն ընդարձակվել էր ի հաշիվ բանվոր-պարտիականների և գործնական աշխատանքում աճած ղեկավար կադրերի։ Վերջիններս Լենինի հին զինակիցների մի մասի հետ պարտիայի ղեկավար օրգանում կազմեցին լենինյան ամուր կորիզ, որը հաջողությամբ դիմադրեց լենինիզմի դեմ գործած բոլոր հարձակումներին։ Ներպարտիական պայքարի ամենաբարդ պայմաններում Կենտկոմը ոչ մի անգամ չշեղվեց ճիշտ գծից։ Նա հանդիսանում էր մի պատնեշ, որին զարնվելով փշրվում էին պարտիայի միասնությունը սասանելու, մարքսիզմ-լենինիզմն աղավաղելու բոլոր փորձերը, ում կողմից էլ որ արվելիս լինեին դրանք։

Տապալվեցին նաև Մալենկովի, Կագանովիչի, Մոլոտովի հակապարտիական խմբակի փորձերը պարտիայի միասնությունը թուլացնելու ուղղությամբ։ ՍՄԿՊ XX համագումարի ընտրած Կենտրոնական Կոմիտեն, բաղկացած 133 անդամից և 122 թեկնածուից, վճռական դեր խաղաց այդ հակապարտիական խմբակի գաղափարական ու կազմակերպական ջախջախման գործում։ Առանց չափազանցության կարելի է ասել, որ Կենտկոմի պլենումը փրկեց պարտիայի միասնությունը՝ հանդես բերելով լենինյան սկզբունքայնություն և բարձր քաղաքական հասունություն, լիակատար միահամուռություն հակապարտիական խմբակի գործունեության գնահատման գործում։ Այդ խմբակը փորձում էր իրեն հակադրել Կենտկոմին՝ հուսալով իր հետևից սխալ, հակալենինյան ուղիով տանել նրա անդամներին։ Բայց նա չարաչար սխալվեց։ Կենտկոմի պլենումի կազմում չգտնվեց ոչ մի մարդ, որը պաշտպաներ այդ խմբակին։

Պառակտիչները չէին հասկացել, որ ընդմիշտ ու անդառնալիորեն վերացված է այն սխալ դրությունը, որ գոյություն ուներ անհատի պաշտամունքի լայն տարածման ժամանակաշրջանում և երբ նսեմացվել էր Կենտրոնական Կոմիտեի դերը, երբ նրա ընտրած օրգանները Կենտկոմից վեր էին կանգնում և իրենց վրա էին վերցնում այնպիսի հարցերի լուծումը, որոնք բացառապես Կենտկոմի պլենումի իրավասության մեջ են մտնում։ Ներկայումս Կենտրոնական Կոմիտեն իսկապես լիիշխան ու հեղինակավոր օրգան է, որը հանդիսանում է գաղափարական ու կազմակերպական ղեկավարության կենտրոն, պարտիայի և ամբողջ սովետական ժողովրդի մարտական շտաբը։ Ղեկավարման լենինյան մեթոդները, որոնք հիմնված են պարտիական թե անպարտիական մասսաների հետ ամենասերտ կապի վրա, միլիոնավոր շարքային աշխատողների փորձի ուշադիր հաշվառման ու օգտագործման վրա, կոլեկտիվության ու լենինյան սկզբունքայնության վրա, ապահովում են պարտիայի անշեղ համախմբումը, կոմունիստական շինարարության հաջող ղեկավարումը։

Հավատարիմ մնալով Լենինի պատգամներին՝ Կենտրոնական Կոմիտեն ամեն բանից բարձր է դասում պարտիայի միասնության պահպանումը։ Միասնության լենինյան հոգատարությամբ է տոգորված Կենտկոմի ամբողջ



գործունեությունը։ Պարտիական կազմակերպություններին և պարտիայի անդամներին ուղղած իր դիմումներում Կենտրոնական Կոմիտեն միշտ ընդգծել է միասնության նշանակությունը, պարտիայի շարքերի հետագա համախմբման անհրաժեշտությունն այն ակտիվ պայքարում, որ մղվում է պարտիայի գլխավոր գծի կենսագործման համար։

Պարտիայի հետագա ամրապնդման, մարքսիզմ-լենինիզմի սկզբունքային բազայի վրա նրա համախմբման համար հսկայական նշանակություն ունեցավ անհատի պաշտամունքի քննադատությունը և նրա բացասական հետևանքների հաղթահարումը պարտիական, պետական ու տնտեսական շինարարության բոլոր բնագավառներում։ Այդ քննադատությունը չզլացան իրենց կեղտոտ նպատակների համար օգտագործել մեր թշնամիները՝ իմպերիալիստները և աջ սոցիալ-դեմոկրատների լիդերների շարքից իմպերիալիստների սպասավորներից ոմանք։ Հայտնի է, թե ինչպիսի կատաղի իդեոլոգիական գրոհ սկսեցին նրանք ՍՍՌ Միության և ամբողջ սոցիալիստական լագերի դեմ, կոմունիստական ու բանվորական պարտիաների դեմ։ Պետք է խոստովանել, որ եղբայրական, մարքսիստական-լենինյան պարտիաների շարքերում էլ ոմանք չդիմացան բուրժուական պրոպագանդայի ճնշմանը։ Սակայն անվիճելի է մնում, որ կոմունիստական շարժումն ամբողջությամբ այս փորձությունը պատվով անցավ, բուրժուական իդեոլոգիայի հետ այս ամենասուր գոտեմարտից կոմունիստական պարտիաները դուրս եկան ամրապնդված, է՛լ ավելի կատիր համախմբվածություն ու կոփված։ Բոլոր երկրների կոմունիստների համար համախմբվածության ու միաձուլության օրինակ է հանդիսանում ՍՄԿՊ-ն։ Մեր պարտիայի միլիոնավոր անդամները քննարկելով XX համագումարի որոշումները, ՍՄԿՊ Կենտկոմի 1956 թ. հունիսի 30-ի որոշումը անհատի պաշտամունքի ու նրա հետևանքների հաղթահարման մասին՝ քաղաքական բարձր հասունություն ցույց տվին։ Նրանք է՛լ ավելի սերտ համախմբվեցին իրենց Կենտրոնական Կոմիտեի շուրջը, լիակատար վստահություն հայտնեցին նրան։

Միասնության նկատմամբ հոգատարությունը, պարտիայի ամենաարժեքավոր նվաճումը՝ նրա շարքերի միաձուլությունը չգնահատողների նկատմամբ լենինյան անհաշտությունն է թելադրել ՍՄԿՊ Կենտկոմի Հունիսյան պլենումի որոշումը, պլենում, որը գործեց Լենինի ցուցումներին խստորեն համապատասխան։ X համագումարի «Պարտիայի միասնության մասին» բանաձևի յոթերորդ կետը, որ Լենինն անձամբ իր ձեռքով է գրել, ասում է. «Որպեսզի խիստ կարգապահություն կենսագործվի պարտիայի ներսում ու ամբողջ սովետական աշխատանքում և առավելագույն միասնություն ձեռք բերվի ամեն մի ֆրակցիոնություն վերացնելիս, համագումարը Կենտրոնական Կոմիտեին լիազորություն է տալիս կարգապահությունը խախտելու կամ ֆրակցիոնությունը վերածնելու կամ այն թույլ տալու դեպքում (դեպքերում) կիրառել պարտիական տույժերի բոլոր միջոցները, ընդհուպ մինչև պարտիայից վտարելը, իսկ Կենտկոմի անդամների վերաբերմամբ՝ նրանց թեկնածուներ փոխադրելը և նույնիսկ, որպես ծայրահեղ միջոց, պարտիայից վտարելը։ Այսպիսի ծայրահեղ միջոց (Կենտկոմի անդամների, Կենտկոմի թեկնածուների և Վերահսկիչ հանձնաժողովի անդամների նկատմամբ) կիրառելու պայմանը պետք է լինի Կենտկոմի պլենումի գումարումը՝ հրավիրելով Կենտկոմի բոլոր թեկնածուներին և Վերահսկիչ հանձնաժողովի բոլոր անդամներին։ Եթե պարտիայի ամենից ավելի պատասխանատու ղեկավարների այդպիսի ընդհանուր ժողովը ձայների

երկու երրորդով անհրաժեշտ համարի Կենտկոմի անդամին թեկնածու փոխադրելը կամ պարտիայից վտարելը, ապա այդպիսի միջոցառումը պետք է անհապաղ իրագործվի»։

Լենինյան բանաձևը Կենտրոնական Կոմիտեին և բոլոր պարտիական կազմակերպություններին պարտավորեցնում է վճռական հակահարված տալ ֆրակցիոնության ու խմբակայնության ամեն մի արտահայտության, պահովել բանվոր դասակարգի ավանգարդի՝ Կոմունիստական պարտիայի խիսպես համերաշխ, իսկապես կամքի ու գործողության միասնություն մարմնավորող աշխատանքը։ ՍՄԿՊ Կենտկոմի Հունիսյան պլենումը մեծագույն գոհունակությամբ նշեց Կենտկոմի բոլոր անդամների ու անդամության թեկնածուների, ՍՄԿՊ Կենտրոնական Վերահսկիչ հանձնաժողովի անդամների միաձույլ համախմբվածությունը, որոնք միահամուռ կերպով դատապարտեցին հակապարտիական խմբակը։ Ղեկավարվելով պարտիայի լենինյան միասնությունն ամեն կերպ ամրապնդելու շահերով՝ պլենումը որպես մեր պարտիայի լենինյան սկզբունքների հետ անհամատեղելի երևույթ դատապարտեց Մալենկովի, Կագանովիչի, Մոլոտովի և նրանց հարած Շեպիլովի հակապարտիական խմբակի ֆրակցիոն գործունեությունը։ Պլենումը Կենտկոմի Նախագահության անդամների կազմից և Կենտկոմի կազմից հանեց ընկ. ընկ. Մալենկովին, Կագանովիչին ու Մոլոտովին և ՍՄԿՊ Կենտկոմի քարտուղարի պաշտոնից ու Կենտկոմի Նախագահության անդամի թեկնածությունից ու Կենտկոմի անդամների կազմից հանեց ընկ. Շեպիլովին։

Հակապարտիական խմբակի վճռական ջախջախումը կրկին ու կրկին հաստատեց պարտիական կոլեկտիվ ղեկավարության անսասան ուժը, ամբողջ նշանակությունն այն բանի, որ պարտիան ղեկավարում է ոչ թե առանձին անձեր ու խմբեր, այլ՝ համագումարի ընտրած հեղինակավոր, կոլեկտիվ օրգանը։ Հակապարտիական խմբակի մասնակիցները դեմագոգիական նպատակներով՝ փորձում էին քողարկվել կոլեկտիվության շահերով։ Սակայն ո՞ւմ համար պարզ չէ, որ դա խաբեություն էր, կեղծիք, կեղծավորություն։ Հանուն կոլեկտիվության Կենտկոմի Նախագահության թիկունքում դավ նյութել նրա դեմ և ամբողջ Կենտկոմի դեմ—մի՞թե սա գերփարիսեցիություն չէ։ Երդվել ղեկավարության կոլեկտիվությամբ և անտեսել Կենտկոմը, որ օժտված է ամենալայն լիազորություններով, այդ թվում նաև Նախագահություն և Քարտուղարություն կազմելու իրավունքով — մի՞թե սա կեղծավորության օրինակ չէ։ Խոսել աշխատանքի կոլեկտիվության մասին և ոչ միայն չաշխատել պարտիայի քաղաքականությունը, նրա որոշումները կենսագործելու համար, այլ նույնիսկ դիմադրել դրան — մի՞թե սա նման է կոլեկտիվության լենինյան սկզբունքին։

Հակապարտիական խմբակի մասնակիցները ցույց տվին, որ չեն հասկանում կոլեկտիվ ղեկավարության էությունը։ Կոլեկտիվությունը պարտիական ղեկավարության բարձրագույն սկզբունքն է, պարտիայի ղեկավար օրգանների աշխատանքի մշտական մեթոդը վարից մինչև վեր, մի կարևորագույն միջոց, որը ղեկավարությունը զերծ է պահում միակողմանիությունից, ամրապնդում է պարտիայի կապերը մասսաների հետ, պարտիական կարգապահությունը։ Միմիայն կոլեկտիվ ղեկավարությունն ի վիճակի է մշտապես պարտիան համախմբելու մարքսիզմ-լենինիզմի սկզբունքային հիմքի վրա։ Նա, ով խախտում է ղեկավարման կոլեկտիվությունը, ով պարտիական օրգանի գործու-



նեության մեջ ինտրիգանության, խմբակայնության, ֆրակցիոնականության անարժան եղանակներ է մտցնում, նա ծանր պատասխանատվություն է վերցնում իր վրա, որովհետև պարտիայի պառակտման գիծ է վարում։

Մեր պարտիան, որին դաստիարակել ու կոփել է մեծ Լենինը, զանազան կարգի օպորտունիստների դեմ պայքարի պատմական մեծ ուղի է անցել և շատ լավ է հասկանում ու բարձր է գնահատում միասնությունը։ Ահա թե ինչու պարտիական մասսաներին այնպես վրդովեց Կենտկոմի պլենումում մերկացված Մալենկովի, Կագանովիչի, Մոլոտովի և նրանց հարած Շեպիլովի խմբակի ֆրակցիոն գործունեությունը։ Այն ցասումը, ընդհանուր դատապարտումը, որին պարտիայում հանդիպեցին ֆրակցիոներների գործողությունները, իրենց արտահայտությունը գտան պարտիական ակտիվի և սկզբնական կազմակերպությունների ժողովներում, որոնք քննարկում էին Կենտկոմի Հունիսյան պլենումի որոշումը։ Այն բարձր սկզբունքայնությունն ու պարտիական կրքոտությունը, որով կոմունիստների մասսաները դատապարտեցին հակապարտիական խմբակի գործողությունները, Կենտկոմի ձեռք առած միջոցներին լիակատար հավանություն տալը, այս ամենը վկայում է, որ պարտիական մասսաները գաղափարապես աճել են, ճիշտ են կողմնորոշվում իրադրության մեջ, արագորեն հասկանում են, թե ում կողմն է ճշմարտությունը, ով է պաշտպանում մարքսիզմ-լենինիզմը և ով է աղավաղում այն, ով է ակտիվորեն աշխատում կենսագործելու XX համագումարի որոշումները և ով է դիմադրում դրան։ Պարտիական ակտիվի և սկզբնական կազմակերպությունների ժողովները աչքի ընկան բացառիկ ակտիվությամբ։ Մոսկվայում, օրինակ, ավելի քան 8 հազար ձեռնարկությունների, կառույցների և հիմնարկությունների պարտիական ժողովներում զեկուցումների առթիվ բացված մտքերի փոխանակություններին մասնակցելու համար ցուցակագրվել էին պարտիայի ավելի քան 100 հազար անդամ-թեկնածուներ, հանդես են եկել մոտ 60 հազար մարդ։ Խարկովի մարզային պարտիական ակտիվի ժողովում մտքերի փոխանակությանը մասնակցելու համար ցուցակագրվել էին 136 մարդ, հանդես է եկել 31 մարդ։ Ժողովի նախագահությանը նիստի մասնակիցները 392 գրավոր հայտարարություն են տվել, որոնցով խիստ դատապարտում են հակապարտիական խմբակին։ Նույն պատկերն ենք տեսնում պարտիայի Լենինգրադի, Կիևի, Սվերդլովսկի, Վորոնեժի, Բելգորոդի և այլ կազմակերպություններում։ Այս ամենի մեջ արտահայտվում է նախ և առաջ այն վիթխարի աշխատանքը, որ կատարվել է վերջին ժամանակներս անհատի պաշտամունքի հետևանքների հաղթահարման ուղղությամբ, պարտիական կյանքի առաջներում խախտված նորմերի վերականգնման, պարտիայի բոլոր օղակներում իսկական կոլեկտիվ ղեկավարություն ստեղծելու և ամրապնդելու ուղղությամբ։

Ժողովները ցույց տվին, որ պարտիան գաղափարապես ու կազմակերպորեն ամուր է ավելի, քան երբևէ, որ նա իր միասնությունը խախտել չի թույլ տա ոչ ոքի, այդ թվում նաև ֆրակցիոներների խմբակին, ի դեմս Մալենկովի, Կագանովիչի ու Մոլոտովի, որոնք կարծում էին, թե իրենց ամեն բան թույլատրելի է։ Ամբողջ ուժով հենց այս միտքն է արտահայտել Լենինգրադի պարտիական կազմակերպության ակտիվը իր որոշման մեջ։ Այնտեղ ասված է.
«Լենինգրադի պարտիական կազմակերպությունը, ինչպես և մեր ամբողջ հզոր պարտիան, առաջիկայում էլ երբեք չի հանդուրժի, որ որևէ մեկը, ինչպիսի պոստ էլ գրավելիս լինի նա, կարողանա ձեռք բարձրացնել մեր լենինյան պար-

տիայի՝ համախոհ կոմունիստների պարտիայի երկաթե միասնության վրա»:

Միմիայն մեծամտացած աստիճանավորները, որոնք կորցրել են ռեալության զգացմունքը, վարակվել են մեծամտությամբ և իրենց մեջ չեն հաղթահարել անհատի պաշտամունքի մնացորդները, կարող էին մտածել, որ պարտիան հանգիստ կնայի, թե ինչպես են իրենք հակադրում XX համագումարի որոշումներին, և առավել ևս նրանց ուղղակի ոտնձգություններին պարտիայի ու նրա ղեկավարության դեմ:

Կենտրոնական Կոմիտեն հակապարտիական խմբակի մասին ընդունած իր որոշումը դրեց պարտիայի անդամների լայն քննարկմանը, պարտիային ու ժողովրդին տեղեկացրեց այդ խմբակի գործողությունների հետ կապված բոլոր հանգամանքներին: Այս դեպքում էլ Կենտկոմը ղեկավարվում էր լենինյան այն ցուցումով, որ մասսաների վրա հենվող պարտիայի մեջ պետք է լինի «ավելի վստահություն դեպի պարտիական աշխատողների ամբողջ մասսայի ինքնուրույն դատողությունը. Նրանք և միայն նրանք կկարողանան չափավորել պառակտման հակված խմբակների չափազանց բորբոքվածությունը, կկարողանան իրենց դանդաղ, աննկատելի, բայց համառ ներգործությամբ պարտիայի կարգապահությունը պահպանելու «բարի կամք» ներշնչել նրանց, կկարողանան թուլացնել անարխիական ինդիվիդուալիզմի եռանդը, կկարողանան միայն իրենց անտարբերության փաստով վավերացնել, ապացուցել և ցույց տալ այն տարաձայնությունների չնչին նշանակությունը, որ չափազանցնում են պառակտման հակված տարրերը» (Երկ. հ. 7, էջ 130—131):

Պլենումի որոշման լայն քննարկումը ոչ միայն պարտիական ժողովներում, այլև բանվորների, կոլտնտեսականների, ինտելիգենցիայի միտինգներում ու ժողովներում ցույց է տալիս պարտիայի ու ժողովրդի իսկապես ամուր ու անսասան միասնությունը: Այն օրերին, երբ պարտիան և ամբողջ սովետական ժողովուրդը դատապարտեցին Մալենկովի, Կագանովիչի, Մոլոտովի խմբակի ֆրակցիոն գործունեությունը և հավանություն տվեցին պառակտիչների դեմ ձեռք առած միջոցներին, ամբողջ աշխարհի առջև նոր ուժով հանդես եկավ պարտիայի ու ժողովրդի միասնությունը, նրանց խոհերի ու ձգտումների անբաժանելիությունը: Կոմունիստական պարտիան ու սովետական ժողովուրդն ունեն մեկ հոգի, մեկ սիրտ, միևնույն խոհերն ու հոգսերը, պարտիայի ուղին ժողովրդի ուղին է, պարտիայի գործը ժողովրդի գործն է, պարտիայի շահերը ժողովրդի շահերն են: Դրա համար է, որ պարտիան ու ժողովուրդն այնպես միասնական են ֆրակցիոներների խմբակի դատապարտման գործում, ֆրակցիոներներ, որոնք համարձակվել են հանդես գալ պարտիայի մեծագույն նվաճումների դեմ, այն բանի դեմ, ինչով ուժեղ ու հզոր է նա, այսինքն՝ նրա միասնության դեմ:

Պարտիան շահեց նրանից, որ ժողովրդին ուղղակի և բացահայտ ասաց հակապարտիական խմբակի գործողությունների և այդ խմբակի դեմ ձեռք առած միջոցների մասին: Պարտիական մասսաները և ամբողջ սովետական ժողովուրդը ճիշտ ընկալեցին ու գնահատեցին Կենտկոմի գործողությունները, լիակատար վստահություն հայտնեցին նրան և էլ ավելի ամուր համախմբվեցին նրա շուրջը: Սովետական պրոֆմիությունները, որոնք իրենց շարքերում միավորում են ավելի քան 45 միլիոն բանվորներ, ինժեներա-տեխնիկական աշխատողներ և մասնագետներ, լենինյան կոմերիտմիությունը, որը համախմբում է մոտ 18 միլիոն պատանիներ ու աղջիկներ, ստեղծագործական աշ-



խատողները՝ գրողները, նկարիչները, կոմպոզիտորները, արտիստները միահամուռ կերպով պաշտպանում ու հավանություն են տալիս ՍՄԿՊ Կենտկոմի Հունիսյան պլենումի որոշմանը:

Վ. Ի. Լենինը սովորեցրել է չթաքցնել այս կամ այն լիդերի պարտությունը, այլ նրանց դնել բոլորի դատաստանին: Նա գրել է. «Այդ — առաջին հայացքից անհարմար է թվում, այդ երբեմն պետք է «վիրավորական» թվա այս կամ այն առանձին ղեկավարի համար,— բայց մենք պետք է հաղթահարենք անհարմարության այդ կեղծ զգացմունքը, այդ մեր պարտքն է պարտիայի հանդեպ, բանվոր դասակարգի հանդեպ: Դրանով և միայն դրանով մենք հնարավորություն կտանք պարտիական ազդեցիկ աշխատողների ամբողջ մասսային (և ոչ թե խմբակի կամ խմբիկի պատահական կազմին) ճանաչելու
իրենց առաջնորդներին և նրանցից յուրաքանչյուրին համապատասխան դա-
րակի վրա դնելու: Միայն լայն հրապարակայնությունն է ուղղում բոլոր ուղ-
ղագիծ, միակողմանի, քմահաճ շեղումները, միայն այն է պարտիական ինք-
նադաստիարակման օգտակար ու անհրաժեշտ նյութ դարձնում «խմբիկների»
երբեմն անհեթեթ և ծիծաղելի «հականները» (Երկեր, հատոր 7, էջ 133):
Պարտիայի ներսում պլենումի որոշման լայն քննարկումը պարտիական
մասսաների դաստիարակման մեծ դպրոց է: Նա կծառայի պարտիական շար-
քերի գաղափարական էլ ավելի համախմբմանը, միլիոնավոր կոմունիստների
ակտիվության բարձրացմանը պարտիայի գծի համար մղվող պայքարում:
Մալենկովի, Կագանովիչի, Մոլոտովի հակապարտիական խմբակի մեր-
կացումը միջազգային վիթխարի նշանակություն ունի: Եղբայրական կոմու-
նիստական ու բանվորական պարտիաները դրա մեջ իրավացիորեն տեսնում
են սովետական ժողովրդի ղեկավար ու կազմակերպող ուժի՝ ՍՄԿ պարտիայի
էլ ավելի ամրապնդումը: Նրանք հավանություն են տալիս այն հաստատակա-
մությանն ու սկզբունքայնությանը, որով մեր պարտիան պաշտպանում է իր
XX համագումարի որոշումները: Նրանք հասկանում են, որ ֆրակցիոներներին
վտարելով իր ղեկավար շարքից՝ պարտիան է՛լ ավելի է ամրապնդել իր միաս-
նությունը, բարձրացրել իր մարտունակությունը: Ահա թե ինչու այնպես միա-
համուռ է նրանց ձայնը: ՍՄԿՊ Կենտկոմին ուղղած իր հեռագրում Չինաստա-
նի Կոմպարտիայի Կենտկոմը վստահություն է հայտնում, որ պլենումի ըն-
դունած որոշումը կծառայի ՍՄԿՊ շարքերի հետագա համախմբմանն ու ամ-
րապնդմանը: «Չինաստանի Կոմունիստական պարտիան,— ասված է այդ հե-
ռագրում,— անշեղորեն ու սերտորեն ի մի կհամախմբվի Սովետական Միու-
թյան Կոմունիստական պարտիայի հետ և միասնաբար կպայքարի Չինաստա-
նի ու Սովետական Միության եղբայրական մեծ դաշինքի հետագա ամրա-
պնդման համար, ամբողջ աշխարհում կայուն խաղաղության համար, մարք-
սիզմ-լենինիզմի գործի հաղթանակի համար»:
Ֆրանսիական Կոմպարտիայի Կենտկոմի պլենումն ընդունեց մի բանաձև,
որի մեջ ասված է. «Վստահ լինելով, որ ինքն արտահայտում է ֆրանսիական
ամբողջ կոմունիստական պարտիայի, բանվոր դասակարգի, աշխատավոր
գյուղացիության ու առաջավոր ինտելիգենցիայի զգացմունքները՝ Կենտրոնա-
կան Կոմիտեն իր լիակատար համաձայնությունն է հայտնում Սովետական
Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի բանաձևին և
իր լիակատար համերաշխությունն է արտահայտում Սովետական Միության
Կոմունիստական պարտիայի ու նրա Կենտրոնական Կոմիտեի հետ»:

ՍՄԿՊ Կենտկոմի Հունիսյան պլենումի որոշմանը իրենց լիակատար համերաշխությունն են արտահայտել Իտալիայի ու Գերմանիայի, Չեխոսլովակիայի ու Բուլղարիայի, Ռումինիայի ու Լեհաստանի և այլ երկրների կոմունիստները։ Շատ եղբայրական կոմպարտիաներում տեղի են ունեցել կոմիտեների պլենումներ և պարտիական ակտիվի ժողովներ, որտեղ քննարկվել է ՍՄԿՊ Կենտկոմի Հունիսյան պլենումի որոշումը, միահամուռ կերպով հավանություն են տվել այն միջոցները, որ Կենտրոնական Կոմիտեն ձեռք է առել հակապարտիական խմբակի դեմ։ Եղբայրական կոմպարտիաները կրկին ու կրկին նշում են պարտիայի ամենաթանկագին գանձի, նրա բոլոր հաջողությունների անհրաժեշտ պայմանի՝ պարտիական միասնության ամրապնդման կարևորությունը։ Մարքսիստական-լենինյան պարտիաների, աշխարհի բոլոր ազնիվ առաջավոր մարդկանց աչքում մեր պարտիան նորից ցուցաբերեց իր հեռատեսությունը, լենինյան անհաշտությունը մարքսիզմ-լենինիզմի մեծ սկզբունքներից շեղումների նկատմամբ։

Երկարատև ու կատաղի պայքարում մեր պարտիան կոփել է այն միաձուլությունը, որն այժմ նրա ներքին վիճակի ամենաբնորոշ գիծն է կազմում։ Սակայն դա չի նշանակում, թե կարելի է թուլացնել պայքարը պարտիայի հետագա համախմբման համար։ Եվ թեպետ ներկայումս իրադրությունն այնպիսին չէ, ինչպես եղել է, երբ Լենինը գրել է իր նամակները՝ պարտիային զգուշացնելով պառակտման վտանգից, այնուամենայնիվ լիովին պահպանում է իր ուժը լենինյան դրույթը՝ պարտիայի անաղարտությունն ու միաձուլությունը աչքի լույսի պես պահելու անհրաժեշտության մասին։

Թող կոմունիզմի թշնամիները, որոնք փորձում են իրենց հետևությունները անել Մալենկովի, Կագանովիչի, Մոլոտովի հակապարտիական խմբակի մերկացումից, մխիթարեն իրենց անիրականանալի հույսերով, թե հնարավոր է, որ պառակտում ընկնի մեր պարտիայի մեջ, փոփոխվի նրա քաղաքականությունը և այլն։ Թող անձնատուր լինեն ցնորքների, թող երևակայեն, թե իբր այդ փաստը պարտիայի ներքին թուլությունն է ցույց տալիս։ Անիրականանալի հույսերը երբեք չեն արդարանում, սին ցնորքները խորտակվում են ռեալ կյանքին դիպչելուց։ Անվիճելի է մնում այն փաստը, որ հակապարտիական խմբակի ջախջախումը ցույց է տալիս պարտիայի ոչ թե թուլությունը, այլ մեծ ուժը, ոչ թե նրա համախմբվածության բացակայությունը, այլ նրա շարքերի միաձույլ միասնությունը։ Առաջներում երբեք մեր պարտիան չի եղել այնպես միասնական ու համախմբված, ինչպես միասնական ու համախմբված է այժմ։ Ոչ ոքի և երբեք չի հաջողվի շեղել նրան լենինյան ճիշտ ճանապարհից։ Նա մեր Հայրենիքի ժողովուրդներին հաստատորեն ու վստահությամբ պայքարի է տանում էկոնոմիկայի ու կուլտուրայի նորանոր հաջողությունների համար, բոլոր խոչընդոտների ու դժվարությունների հաղթահարման համար։ Համախմբված մարքսիզմ-լենինիզմի դրոշի ներքո, Կենտրոնական Կոմիտեի շուրջը, պարտիան և նրա հետ ամբողջ երկու հարյուր միլիոնանոց սովետական ժողովուրդը իր ջանքերը գործադրում է կոմունիստական շինարարության մեծ խնդիրների հաջող լուծման համար։

«ԿՈՄՈՒՆԻՍՏ», № 10, 1957 թ.

# ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆ ԿԵՆՍԱԿԱՆ ՀԱՐՑԵՐԸ

## Լ. ԵՐԶՆԿՅԱՆ

ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի 1956 թվականի Դեկտեմբերյան և 1957 թվականի Փետրվարյան պլենումները վճռական դեր կխաղան ռեսպուբլիկայի շինարարությունը կարգավորելու և արմատապես բարելավելու գործում։

Դեկտեմբերյան պլենումի որոշումների մեջ ասված է, որ անհրաժեշտ է ճշգրտել շինարարության պլանները՝ հաշվի առնելով նյութական ռեսուրսների և ֆինանսական միջոցների առավել ռացիոնալ ու արդյունավետ օգտագործման ապահովումը։ Պլենումը պլանավորող կազմակերպություններին պարտավորեցրեց թույլ չտալ միջոցների ցրում բազմաթիվ շինարարական օբյեկտների վրա, նյութական ու ֆինանսական միջոցները կենտրոնացնել կարևորագույն կառույցների ու թողարկվող օբյեկտների վրա, որը հնարավորություն կտա բարելավելու նրանց նյութական ապահովվածությունը և նորմալ պայմաններ կստեղծի շինարարական կազմակերպությունների անընդմեջ ու ռիթմիկ աշխատանքի համար։

Այս որոշումները վերջ կտան մինիստրությունների ու պատվիրատու գերատեսչությունների կողմից միջոցները մեծ թվով օբյեկտների վրա ցրելու դատապարտված պրակտիկային, օբյեկտներ, որոնք հաճախ նյութա-տեխնիկական բազայով ապահովված չեն լինում։

Այդպիսի անխելամիտ պլանավորումը շինարարական կազմակերպություններին ստիպում էր իրենց ուժերն ու միջոցները ցրել բազմաթիվ օբյեկտների վրա, խախտել շինարարության ռեալության *պետական նորմաները՝ առանց հարկավոր էֆեկտ ստանալու կառուցվող օբյեկտներից։

Հայտնի է, որ ռեալ պլան կարող է լինել միայն այն պլանը, որը լիովին ապահովված է իր կատարման համար անհրաժեշտ նյութերով։ Այնինչ մեզ մոտ արատավոր պրակտիկա է դարձել պլանի ու նրա նյութական ապահովվածության կապակցության բացակայությունը։

Հիմնական շինարարության պլանավորման գործում լուրջ թերություններ նկատվեցին անցյալ շինարարական սեզոնում նաև մեր ռեսպուբլիկայում։ 1956 թվականի ընթացքում շինարարության պլանները բազմիցս վերանայվել են։ Ամեն ամիս այդ պլանների մեջ նորանոր օբյեկտներ են մտցվել՝ հաճախ առանց ամրապնդելու նյութական բազայով և ըստ աշխատանքային ցուցանիշների առանց լրացուցիչ լիմիտներ առանձնացնելու։ Դրա հետևանքով մինիստրության պլանը տարվա ընթացքում մեծացել էր ավելի քան 40 տոկոսով։ Սրա հետևանքը եղել են պլանաչափ աշխատանքի խախտումները և նյութերի օգտագործումը ո՛չ ըստ իրենց նպատակի։ Հաճախ տարվա ընթացքում փոփոխվել են կապիտալ ներդրումներն ըստ առանձին կառույցների, որոշ դեպքերում ստիպելով օբյեկտների կոնսերվացում ֆինանսավորման բացա-

կայության հետևանքով, որն իր հերթին կառույցների կոնսերվացման հետ կապված ո՛չ արտադրական ծախսերի պատճառ է դարձել։ Կիրառվել է միջոցների ցրում՝ մեծ չափերով։

ՍՄԿԿ Կենտկոմի Դեկտեմբերյան և Փետրվարյան պլենումների որոշումները, որոնք սոցիալիստական Հայրենիքի, սովետական ժողովրդի բարօրության նկատմամբ մեր պարտիայի մեծ հոգատարությամբ են տոգորված, կառուցողներին պարտավորեցնում են շինարարությունը հասցնել նոր բարձրության, խնայել սովետական ռուբլին և այն գործադրել բացառապես մեր մեծ Հայրենիքի աշխատավորների շահերի համար։

Այդ որոշումները կառուցողներին պարտավորեցնում են լինել խելամիտ ու խնայող գործատեր, որը պետք է իմանա և հմտորեն օգտագործի ինժեներական գիտությունը, տեխնիկայի նորագույն նվաճումները, պետք է ձգտի, որ ամեն մի կառուցվածք լինի նպատակահարմար, գեղեցիկ ու հարմարավոր։

Նյութական ու ֆինանսական միջոցների ճիշտ օգտագործումը, նրանց խնայողաբար ծախսումը նախ և առաջ կախված է նախագծի որակից։ Ահա թե ինչու խոշոր խնդիրներ են դրված ռեսպուբլիկական նախագծային ինստիտուտի և Շինարարության մինիստրության ենթակա «Հայքաղգյուղշին» նախագծային ինստիտուտի առջև։

Նշելով, որ նախագծման գործում դեռևս խոշոր թերություններ կան, պլենումը կառուցողներին պարտավորեցրեց շինարարության պրակտիկայից վճռականորեն դուրս վանել գոյություն ունեցող ավելորդությունները, որոնք թանկացնում են շինարարության արժեքը և իջեցնում նրա զարգացման տեմպը։

Մեր ճարտարապետներից շատերն անտեսում էին խնայողության անհրաժեշտությունը, բնակելի ու հասարակական շենքերի օգտակարությունն ու հարմարությունները, շենքերի ճակատները զարդարելու գործում խիստ չարաշահում էին ավելորդությունները։ Հասարակական և բնակելի շատ շենքերի հոյակապությանն ավելորդ տեսք էր տրվում, որը թանկացնում էր շինարարությունը և ավելացնում կոնստրուկտիվ տարածությունները։

Որպես օրինակ կարելի է բերել Կարմիր Բանակի փողոցի վրա գտնվող այն շենքը, որի մեջ տեղավորված են թերթերի խմբագրությունները (հեղինակ՝ ճարտարապետ Բախշինյան), Շրջանային և Նալբանդյան փողոցների անկյունում գտնվող միլվարչության շենքը (հեղինակ՝ ճարտարապետ Հովհաննիսյան)։

Զգալի ավելորդություններ են առաջանում շենքերին անօգտագործելի ծավալներ տալուց, ինչպիսիք են, օրինակ, Օրջոնիկիձեի պողոտայի վրա գտնվող սննդարդյունաբերության աշխատողների բնակելի շենքի բազալտե վիթխարի սյունաշարը (հեղինակ՝ ճարտարապետ Մանուկյան), Պոլիտեխնիկական ինստիտուտի բնակելի շենքի սյունաշարը հյուսիսային կասկադում (ճարտարապետներ Բաբաջանյան և Հուսյան), Մահուդի ֆաբրիկայի բնակելի տան եռահարկ լոջերը Թամանցիների փողոցում (ճարտարապետ Իսրայելյան)։

Ճարտարապետ Գ. Թամանյանը Ջերմուկի կլինիկական սանատորիայի շենքը նախագծել է սրբատաշ բազալտից՝ շենքի շրջագծում զետեղելով ավելի քան հարյուր հիսուն սյունից բաղկացած մի սյունաշար։ Հարց է ծագում. անհրաժե՞շտ էր արդյոք այդպիսի նախագիծ 75 մահճակալանոց սանատորիայի՝ հինգ միլիոն ռուբլուց ավելի արժեքով։ Ավելի լավ չէ՞ր լինի փոքր-ինչ պարզեցնել շենքի ճակատը և հատուկ ուշադրություն դարձնել ներսի հարմարությունների վրա։



Այսպիսի օրինակներ շատ կարելի է բերել։

Հասկանալի է, որ մենք կողմնակից չենք շաբլոն, տգեղ ճակատներով շենքերին՝ մանավանդ գլխավոր փողոցներում, բայց հարկավոր է, որ շենքի գեղեցկությունն անպայմանորեն զուգորդվի պետական միջոցների խնայողաբար ծախսմանը։

ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի «Նախագծման և շինարարության բնագավառում շռայլումները վերացնելու մասին» պատմական որոշման մեջ որոշակիորեն ասված է. «Սովետական ճարտարապետությանը պետք է հատուկ լինի ձևերի պարզությունը, ճշգրտությունը և լուծումների խնայողականությունը, շենքերի ու կառուցվածքների գրավիչ տեսքը պետք է ստեղծվի ոչ թե հնարովի, թանկ նստող դեկորատիվ զարդարանքների կիրառման միջոցով, այլ շենքերի ու կառուցվածքների նպատակադրման հետ ճարտարապետական ձևերի օրգանական կապի, նրանց լավ համամասնությունների, ինչպես նաև շինանյութերի, կոնստրուկցիաների ու դետալների ճիշտ օգտագործման և աշխատանքների բարձր որակի հաշվին»։

Արդարությունը պահանջում է ասել, որ ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի որոշումից հետո վերոհիշյալ ճարտարապետներն իրենց հետագա նախագծային աշխատանքներում խիստ կրճատել են ավելորդությունները, սակայն դեռ հեռու են այն խնդիրների մակարդակից, որ առաջադրել են պարտիան ու կառավարությունը։

Նախագծային կազմակերպությունները դեռևս հարկ եղած պայքարը չեն մղում խնայողական նախագծերի համար։ Վերջին տարիներս նախագծված ու կառուցված բնակելի տները շատ թանկ են. Կանաչ գործարանի Բաղրամյան փողոցի բնակելի շենքի (ճարտարապետ Բախշինյան) մեկ քառակուսի մետրը 3000 ռուբլուց ավելի է նստել. կոմունալ տնտեսության մինիստրության բնակելի շենքում (ճարտարապետ Նավասարդյան) քառակուսի մետրը նստել է 2450 ռուբլի, Կիևյան փողոցում Երևանի Քաղսովետի կառուցած բնակելի շենքերի քառակուսի մետրը (կորպուս «Դ», հեղինակ՝ Թամանյան) նստել է 2040 ռուբլի։

Ըստ որում պետք է նշել, որ երբ ճարտարապետ Թամանյանի խումբը ցանկանում է խնայողաբար նախագծել, հաջողությամբ հասնում է դրան։ Օրինակ՝ նույն Կիևյան փողոցում Քաղսովետի բնակելի շենքի (կորպուս «Ժ») մեկ քառակուսի մետրը նախագծված է 1600 ռուբլի։

Որպես համաչափ ու խնայողաբար նախագծման օրինակ կարելի է բերել ճարտարապետ Բաբկեն Հակոբյանի աշխատանքը, որը նախագծել է երեք շենք՝ յուրաքանչյուրում 1 քառ. մետրը 1500—1600 ռուբլի արժողությամբ։

Մեր նախագծային կազմակերպությունների խնդիրն է՝ հասնել նրան, որ բնակելի տարածության 1 քառ. մետրի արժեքը Հայաստանի պայմաններում չանցնի 1500 ռուբլուց, որը, սակայն, նույնպես շինարարության հնարավոր էժանացման սահմանը չէ։

Ավելորդություններ են թույլ տրվում նաև արդյունաբերական օբյեկտների նախագծման ժամանակ։ Դրանք արտահայտվում են տերիտորիաների ու կոմունիկացիաների չափերի գերազանցումով, հիմնական ու օժանդակ շենքերի ու կառուցվածքների տարածությունների և ծավալի գերազանցումով։

Միանգամայն անթույլատրելի է օժանդակ ցեխերի ու ձեռնարկություն-

ների կարողության նոմենկլատուրայի ավելացումը, եթե դա չի բխում հիմնական արտադրության պահանջից։

Ավելորդություններ կան նախագծային կարողության հաշվումների մեջ, որ հասցնում է շինարարության ընդհանուր ծավալի մեծացման։ Նախագծային կազմակերպությունները համարյա հաշվի չեն առնում իրար կողքի կառուցվող ձեռնարկությունների կոոպերացման հնարավորությունները։ Մի՞թե չի կարելի կոոպերացնել այնպիսի օժանդակ տնտեսությունները, ինչպիսիք են կաթսայատունը, տրանսֆորմատորային կայանը, վերանորոգման-մեխանիկական արհեստանոցները, գործարանի վարչական շենքը և այլն։

Այս բոլոր թերությունները հետևանք են այն բանի, որ նախագծողները լրջորեն հաշվի չեն առնում արտադրության առանձնահատկությունները։ Այնինչ ճարտարապետը չի կարող միայն՝ նախագծող լինել։ Նա կառուցող ինժեների հետ հավասար պատասխանատվություն է կրում իր նախագծի իրականացման համար։

Հարկավոր է վերջ դնել այն դրությանը, երբ ճարտարապետի մասնակցությունն իր նախագծի իրականացմանը՝ լոկ նրա անձնական ցանկության գործն է համարվում։

Մեր կարծիքով լուրջ սխալ է նաև ֆելզիտային տուֆերի լայն կիրառումը, որոնք ենթակա են արագ քայքայման։ Իհարկե, ֆելզիտային քարերն արտաքուստ շատ գեղեցիկ են։ Բայց հարց է ծագում. ո՞րն է ավելի լավ, շենքի կարճատև գեղեցկությո՞ւնը, թե՞ հարատևությունը։ Հարկ կա՞ր արդյոք Պետական համալսարանի շենքը կառուցել ֆելզիտային տուֆով։ Ինչո՞ւ մենք հրաժարվել ենք օգտագործել մի ամբողջ շարք տեղական նյութեր, որոնք գործնականում լավ հատկություններ են ցույց տվել, այդ թվում նաև Երևանի սև տուֆը տարբեր երանգներով։ Ինչո՞վ է վատ համալսարանի հին շենքը Աբովյան փողոցի վրա։ Կարծում ենք, որ մի շարք վարչական շենքեր պետք է կառուցել սև տուֆից։

Կամ վերցնենք, օրինակ, Գոլովինոյի սանատորիայի շինարարությունը։ Չնայած կառուցողները խելամտորեն առաջարկում էին այդ սանատորիան կառուցել Արթիկի տուֆով, որը կանաչ շրջապատում շատ գեղեցիկ տեսք կունենար, նախագծի հեղինակի պնդումով ընդունվեց Ծաթերի ֆելզիտային քարը, որը երեք անգամ թանկ է նստում Արթիկի տուֆից և շինարարությունը ձգձգվում է տարիներով։ Քարի սխալ ընտրության հետևանքով որոշ շենքեր արդեն քանդվում են։ Որպես օրինակ կարելի է վերցնել Կապուտանի բազալտը, որով շարվել է մի շարք վարչական շենքերի ցոկոլը, Գետափի ֆելզիտային տուֆը, որով կառուցվել է Ջերմուկի ջուր խմելու գալերեան և այլն։

Շինարարության պարզեցման ու էժանացման կարևոր միջոցառում է տիպային նախագծերի ստեղծումը։ Տիպային նախագծերով շինարարության տեխնիկա-տնտեսական նպատակահարմարությունն անվիճելի է։ Անհատական նախագծերը ավելորդություններ ծնող գլխավոր պատճառներից մեկն են, ուստի հարկավոր է նրանցից հրաժարվել և շինարարությունն իրականացնել տիպային նախագծերով։

Հայտնի է, որ տիպային նախագծերը հնարավորություն են տալիս կառուցելու արագ, էժան, շինարարական հրապարակներում մոնտաժելով տները, որոնց մասերը պատրաստված են լինում գործարաններում։

Շինարարության մեջ գործարանների պատրաստած հավաքովի կոնս-



տրուկցիաների լայն կիրառումը, շինարարական հրապարակը գործարաններում պատրաստած կոնստրուկցիաների ու դետալների մոնտաժման հրապարակ դարձնելը առաջին հերթին պահանջվում են նվազագույն չափով տիպայնացնել և ունիֆիկացնել այն կոնստրուկտիվ տարրերն ու դետալները, որոնք կիրառվում են շինարարության մեջ։

Միանգամայն ակներև է դարձել տիպային նախագծման կարևորությունը, որ շինարարության ինդուստրացման, էկոնոմիկայի բարձրացման, շենքերի ռացիոնալ պլանավորման, տեխնիկական փաստաթղթերի պատրաստման ժամկետները կրճատելու հիմնական լծակն է հանդիսանում։

Սակայն ռեսպուբլիկայի նախագծային ինստիտուտները հարկ եղած ուշադրությունը չեն դարձնում այդ կարևոր հարցի վրա։

Նախագծողների մի կարևոր խնդիրն էլ այնպիսի տիպային նախագծերի ստեղծումն է, որոնք հնարավորություն կտան շինարարության մեջ արմատավորել նոր տեխնիկան և կառուցման ինդուստրիալ մեթոդները։

Եվ, վերջապես, նախագծային կազմակերպությունները տեխնիկական փաստաթղթերը տալիս անպայման պետք է կազմեն նաև աշխատանքների կազմակերպման նախագիծ։ Չնայած որ ավարտուն նախագծի կազմի մեջ է մտնում նաև աշխատանքի կազմակերպման բաժինը, այնուամենայնիվ սովորաբար նախագծային կազմակերպությունները աշխատանքի կազմակերպման նախագծեր չեն կազմում, որը նույնպես աշխատանքների կատարման ժամանակ ավելորդությունների տեղիք է տալիս։

Եթե մենք ուզում ենք շինարարությունը խելամտորեն կատարել, անհրաժեշտ է կառուցումն սկսելուց առաջ ունենալ աշխատանքների կազմակերպման խորապես մտածված նախագիծ, որը կընդգրկի առանձին աշխատանքային պրոցեսների հրապարակների կազմակերպման հարցերը, ինչպես և օժանդակ արտադրությունների աշխատանքները։ Աշխատանքի կազմակերպման նախագիծը կառուցողներին հնարավորություն է տալիս հաշվելու անհրաժեշտ նյութերը, բանվորական ուժը, մեխանիզմները ոչ թե ընդհանրապես, այլ ելնելով որոշակի սպեցիֆիկացիայից և չի տալիս ավելորդություններ, որոնք անպետքացնում են եղած ռեսուրսները։

Աշխատանքների կազմակերպման նախագծի բացակայությունը առանձնապես անդրադառնում է մեխանիզմների ճիշտ օգտագործման հնարավորության վրա։ Մեխանիզմները չի կարելի բանվորական ուժի պես արագ տեղափոխել մի ուրիշ արտադրական տեղամաս, որովհետև դա պահանջում է ապամոնտաժում և նոր տեղում մոնտաժում։ Աշխատանքների կազմակերպման նախագծի առկայության դեպքում դրանից կարելի է խուսափել։

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XX համագումարն ամբողջ ուժով ընդգծեց, որ շինարարական գործի արմատական բարելավումը հնարավոր է միայն շինարարության մշտական տեխնիկական պրոգրեսի և հետագա ինդուստրացման բազայի վրա։

Այս ցուցումի իրականացման համար Հայկական ՍՍՌ-ում որոշ աշխատանք կատարվել է, որը, իհարկե, հարկավոր է կատարելագործել ու ամրապնդել, որպեսզի կարելի լինի հասնել պարտիայի ու կառավարության կողմից կառուցողների առջև դրված խնդիրների մակարդակին։

Հավաքովի երկաթբետոնի գծով Շինարարության մինիստրության միջոցառումների կիրառումը հնարավորություն տվեց 1956 թվականին շինարարա-

կան-մոնտաժային աշխատանքների յուրաքանչյուր մեկ միլիոն ռուբլու դիմաց օգտագործել 75—80 խոր. մետր երկաթբետոնային կոնստրուկցիաներ՝ ի դիմաց 1955 թվականին օգտագործած 20 խոր. մետրի։

1957 թվականին նախատեսվում է շինարարական-մոնտաժային աշխատանքների ամեն մի միլիոն ռուբլու դիմաց կիրառել առնվազն 100—110 խոր. մետր երկաթբետոն։

Հավաքովի երկաթբետոնի լայն կիրառումը հնարավորություն է տալիս խիստ կրճատել մետաղի ծախսումը, այնինչ առաջ մետաղի բացակայության պատճառով հաճախ շինարարական օբյեկտներում աշխատանքը կանգ էր առնում։ Ըստ որում պետք է հիշատակել, որ, ինչպես կյանքը ցույց տվեց, հավաքովի երկաթբետոնը առավել ունիվերսալ, հրակայուն և հարատև շինանյութ է։ Հավաքովի երկաթբետոնի կիրառման դեպքում շինարարության աշխատատարությունը 3—4 անգամ պակաս է, քան միաձույլ երկաթբետոնի կիրառման դեպքում։

Հայաստանի շինարարական օբյեկտներում արդեն յուրացված և արտադրության մեջ արմատավորված են հետևյալ երկաթբետոնային դետալները՝ ծածկույթի երկար սնամեջ պանելներ, զանազան չափերի հեծաններ ու սալեր, սանդուղքի աստիճաններ ու հարթակներ, ինժեներ Սեդրակյանի սիստեմի հավաքովի կտուրի շատ էֆեկտիվ կառուցվածքներ, ինժեներ Գևորգյանի սիստեմի կտուրի կամարներ, ծածկույթի կրկնակի թեքությամբ պանելներ և այլն։

Այս բոլոր կոնստրուկցիաները հաջողությամբ օգտագործվում են ինչպես արդյունաբերական, այնպես էլ բնակարանային շինարարության մեջ։ Հաշիվները ցույց են տալիս, որ արդյունաբերական շինարարության մեջ հիշյալ կոնստրուկցիաների կիրառումը մանրաչափ մոնոլիտ կոնստրուկցիաների կիրառման համեմատությամբ տալիս է կշռի իջեցում՝ 25 տոկոսով, արժեքի իջեցում՝ 15 տոկոսով և մետաղի խնայողություն՝ ավելի քան 30 տոկոսով։

Երկար սնամեջ պանելները պակաս ձեռնտու չեն բնակարանային շինարարության մեջ միջհարկային ծածկույթներում գործադրելիս։ Դրանք լայն կիրառում են ստացել Երքաղսովետի և մի քանի գերատեսչությունների Կիևյան փողոցում կառուցվող շենքերի շինարարություններում։ Պանելների կիրառումը ծածկույթի յուրաքանչյուր քառ. մետրի համար բանվորական ուժի պահանջը կրճատել է 7—8 անգամ, կոնստրուկցիայի այդ տեսակների համար ինքնարժեքի իջեցումն ապահովել է 10—11 տոկոսով, մետաղի տնտեսում է տվել 19—20 տոկոսով, միանգամայն վերացրել է փայտեղենի գործածման անհրաժեշտությունը և, որ ամենագլխավորն է, մի քանի անգամ արագացրել է շինարարությունը։

Հավաքովի երկաթբետոնային կոնստրուկցիաների արտադրությունն ավելացնելու հետ միասին պետք է ջանք գործադրել ստեղծելու կոնստրուկցիաների ու դետալների այնպիսի կատարելագործված տիպեր, որոնք ապահովեն շենքի կշռի խիստ իջեցումը։

Կառուցողների մի լուրջ խնդիրն էլ, որ առաջադրել է ՍՄԿԿ Կենտկոմի Դեկտեմբերյան պլենումը, դեֆիցիտային նյութերի՝ ցեմենտի, փայտեղենի, մետաղի ծախսման խնայողությունն է և առավելագույն չափով տեղական նյութերի օգտագործմանն անցնելը։

Նպատակ ունենալով դեֆիցիտային փայտեղենը տնտեսել և հաշվի առնելով, որ հավաքովի երկաթբետոնի արտադրությունը չի գոհացնում շինարա-



րական օբյեկտների լրիվ պահանջները, նորակառույցներում լայն կիրառում է գտել այսպես կոչված բազմակողային (часторебристое) ծածկույթը պեմզաբլոկից։ Կիրառելով այդ ծածկույթն ու երկաթբետոնը՝ մինիստրության սիստեմի շինարարության տրեստները բոլորովին հրաժարվել են միջհարկային ծածկույթներում փայտեղեն կիրառելուց։ Հետագայում բազմակողային ծածկույթներում պեմզացեմենտային բլոկները փոխարինվել են պեմզակերամիկայինով, որով զգալի քանակությամբ ցեմենտ է տնտեսվել։

Նախատեսվել է Հայաստանում 1957 թվականի ընթացքում փայտե կոնստրուկտիվ տարրերն ավելի ևս դուրս մղել շինարարությունից՝ ի հաշիվ լուսամուտների մոզայիկ գոգեր, լուսամուտների ու դռների շրջանակներ, ծպեղներ, ցանկապատեր և այլն արմատավորելու։

Ցեմենտի տնտեսման նպատակով ներկայումս ռեսպուբլիկայում ստեղծվել է անցեմենտ բլոկների թողարկման պոլիգոն։ Այդ նպատակով մոնտաժվել է մի հարմարանք, որը տեղական շինանյութերից՝ պեմզայի ու կրի խառնուրդից տարեկան տալու է վեց հազար խոր. մետր խոշոր բլոկներ։ Նախատեսվում է հետագայում ձեռք բերած փորձի հիման վրա խիստ ավելացնել անցեմենտ բլոկների և առանձին կոնստրուկցիաների թողարկումը։

Շինարարության պրոգրեսիվ տեսակ է հանդիսանում այսպես կոչված՝ խոշոր բլոկային շինարարությունը, որն ապահովում է շենքերի արագ բարձրացումը, ինքնարժեքի խիստ իջեցումը, շինարարության որակի բարձրացումը։ Խոշոր բլոկային կառուցումը հնարավորություն է տալիս առավելագույն չափով ավելացնել կառուցվող օբյեկտների հավաքովիության տոկոսը, իրականացնել բոլոր շինարարական-մոնտաժային աշխատանքների կոմպլեքսային մեքենայացում, զգալիորեն կրճատել աշխատանքի պրոցեսների աշխատատարությունը, և, որ ամենագլխավորն է, հրաժարվել թաց պրոցեսներից։

Թե որքան մեծ է խոշոր բլոկային շինարարության առավելությունը սովորական քարի շարվածքի համեմատությամբ, ցույց է տալիս Երևան քաղաքի Միկոյանի շրջանի 44 բնակարանանոց շենքի կառուցման օրինակը։ Խոշոր բլոկներով կառուցվող այդ շենքի շինարարական հրապարակում սարքավորվեցին ամբարձիչ կռունկ և լուծույթածուծ, որոնց սպասարկում էին մեկ մոտորիստ և հինգ բանվոր։ Այս օղակը 7 օրվա ընթացքում շարեց բնակելի շենքի ամբողջ առաջին հարկը, այսինքն՝ կատարեց այնքան գործ, որքան սովորական կարգով 50—60 բանվորը կատարում են 20 օրում։

Ցավոք սրտի խոշոր բլոկային շինարարությունը անհրաժեշտ ծավալ չի ստանում, որովհետև անբավարար է կազմակերպված խոշոր տուֆային բլոկների մատակարարումը։

Պարտիայի XX համագումարը նշեց, որ տեխնիկական պրոգրեսի կարևորագույն ուղղություններից մեկը ծանր և աշխատատար պրոցեսների մեքենայացումն է, քանի որ շինարարության մեքենայացման մակարդակը մեզ մոտ գոհացուցիչ չէ։

Կառուցողների ջանքերը պետք է ուղղված լինեն շինարարական պրոցեսների լայն մեքենայացմանը, մանավանդ կոմպլեքսային մեքենայացման ուղղությամբ, որը շինարարության ցուցանիշների բարելավման վճռական պայմանն է։ Շինարարության մեջ իսկական հաջողության կարելի է հասնել միայն այն դեպքում, երբ մեքենայացումը կընդգրկի առանց բացառության աշխատանքի բոլոր պրոցեսները։

*Ռեսպուբլիկայի շինարարական օբյեկտներում մեծ արդյունք տվեց ամբարձիչ կռունկների կիրառումը։ Ամբարձիչ կռունկների գործողության մեծ շառավիղը, շարժունությունը նրանց շատ արդյունավետ է դարձնում շինարարության մեջ։ Մեր կառույցներում տեխնիկան ավելի ու ավելի է մեծանում։*

*Հաշիվները ցույց են տվել, որ շինարարության ինդուստրիալ մեթոդների դեպքում մեծ չափով նվազում է բանվորական ուժի պահանջը և այդ կապակցությամբ խիստ բարձրանում է աշխատանքի արտադրողականությունը։ Այսպես, միջհարկային ծածկույթների մեկ քառակուսի մետրի հաշվով բանվորական ուժ չորս անգամ պակաս է պահանջվում, քան սովորական ձևով ծածկելու դեպքում, միջնապատերի կառուցման համար բանվորական ուժ պակաս է պահանջվում վեց անգամ, բլոկային շարվածքի դեպքում՝ ութ անգամ։*

*Շինարարության ինդուստրացումն անհնարին է, առանց սեփական հաստատուն արտադրական բազայի ստեղծման ու զարգացման։ Ուստի ռեսպուբլիկայի շինարարական կազմակերպությունների կարևորագույն խնդիրն է՝ իրենց կից ստեղծել արտադրական խոշոր կոմբինատներ։*

*Աշխատանքի արտադրողականության բարձրացումն ապահովող կարևոր հանգամանք է ռացիոնալիզատորության ըստ ամենայնի զարգացումը արտադրության մեջ և ռացիոնալիզատորական առաջարկությունների իրականացումը։ Նախաձեռնությունը խիստ զարգանում է միայն այն ժամանակ, երբ ռացիոնալիզատորների առաջարկությունները ուշադրության են արժանանում։*

*Կարելի է շատ օրինակներ բերել, երբ ռացիոնալիզատորական առաջարկությունների կիրառման հետևանքով աշխատանքի արտադրողականությունը խիստ բարձրանում է և հսկայական միջոցներ են տնտեսվում։*

*«Լենքաղշին» № 6 տրեստի մեխանիկ ընկ. Էլբակյանը վերափոխել է բազալտի* БКС—*I քար տաշող դազգահը՝ մետաղյա խողովակներով փոխարինելով նրա ռետինե փողրակները, որոնք օդի մեծ ճնշումից հաճախ պայթում էին և դազգահի պարապուրդի պատճառ դառնում։ Այս վերափոխման հետևանքով դազգահի արտադրողականությունը բարձրացավ 30 տոկոսով. 8 ժամում 6 քառ. մետր քար տաշելու փոխարեն սկսեց տաշել 7,8 քառ. մետր քար։*

*Կիրովականի շինտրեստի քարտաշների բրիգադիր ընկ. Միրզախանյանը առաջարկել է մի հարմարանք, որը նպաստում է բազալտ և տուֆ քարերի մեքենայական մշակմանը սուր և բութ անկյուններով՝ քարաֆրեզերային դազգահների վրա։ Այդ առաջարկության արմատավորումը բարձրացրեց քար տաշելու աշխատանքի արտադրողականությունը և կրճատեց աշխատանքի ծախսումը 2 անգամով։*

*Մոնտաժային № 8 տրեստի երիտասարդ փականագործ ընկ. Աթանեսյանը առաջարկել է մինչև 50 մմ. տրամագծով մետաղյա խողովակներ ծռելու մի հարմարանք։ Խողովակների ծռումը ձեռքով՝ ծանր աշխատանք է, այնինչ նրա առաջարկության արմատավորումը այդ աշխատանքի արտադրողականությունը բարձրացել է 10 անգամ։*

*1956 թվականի ընթացքում ստացվել է 92 արժեքավոր ռացիոնալիզատորական առաջարկություն, որը ավելի քան մեկ միլիոն ռուբլու տնտեսում է տվել։ Այստեղից պարզ է, թե ռացիոնալիզատորական առաջարկությունները*



*ժամանակին կենսագործելով որքան կարելի է բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը։*

*Դժբախտաբար ո՛չ բոլոր արժեքավոր ռացիոնալիզատորական առաջարկություններն են արմատավորվում արտադրության մեջ։ Երբեմն առաջարկված դազգահների ու հարմարանքների նմուշների պատրաստումը շատ է ձգձգվում։ Սա հետևանք է այն բանի, որ շինարարական կազմակերպությունների որոշ ղեկավարներ հանդես գալով առաջավոր փորձի պաշտպանի դերում՝ սահմանափակվում են միայն այս կամ այն օգտակար նախաձեռնությանը հավանություն տալով, բայց իրենց նեղություն չեն տալիս դառնալու այդ գործի իսկական կազմակերպիչն ու արտադրության մեջ արմատավորողը։*

*Ամեն մի արժեքավոր նախաձեռնություն պետք է ամեն տեսակ աջակցություն գտնի շինարարական տրեստների տեխնիկական ղեկավարներից։*

*ՍՄԿԿ Կենտկոմի Դեկտեմբերյան պլենումն առանձնապես ընդգծեց, որ անհրաժեշտ է շինարարության մեջ առավելագույն չափերով օգտագործել տեղական շինանյութերը։ Մեր ռեսպուբլիկայի շինանյութերի արդյունաբերությունը, չնայած վերջին տարիներս նկատելիորեն բարելավել է իր աշխատանքը, այնուամենայնիվ մի շարք շինարարական կազմակերպությունների տեղական շինանյութերի պահանջները լրիվ չի բավարարում։ Կառույցների աշխատանքի հաջող ընթացքի վրա խիստ բացասական ազդեցություն է ունենում տեղական շինանյութերով ապահովված չլինելը։ Անթույլատրելի է, երբ շինարարական օբյեկտներում աշխատանքները կանգ են առնում տեղական շինանյութերի բացակայության պատճառով, երբ դրանց պաշարներն անսպառ են։ Դրա պատճառը այն է, որ ռեսպուբլիկայում քարհանքային սիստեմն անմխիթար վիճակում է գտնվում։ Շինարարության թափը պահանջում է արմատապես փոխել վերաբերմունքը այդ կարևոր հարցի նկատմամբ, որից մեծ չափով կախված է շինարարության հաջողությունը։ Անհրաժեշտ է ստեղծել խոշոր մեքենայացված քարհանքային տնտեսություն, որը կարողանա ապահովել տեղական շինանյութերի կազմակերպված մատակարարումը։*

*Տեղական շինանյութերի թողարկման ավելացման հետ միասին անպայման պետք է լավացվի նաև նրանց որակը։ Խիստ բարելավում է պահանջում ավազի որակը։ Մատակարարվող ավազը շատ խառնուրդներ է ունենում, որից խիստ իջնում է շաղախի ու բետոնի որակը և դա բետոնային ու երկաթբետոնային աշխատանքների խոտանի գլխավոր պատճառն է դառնում։*

*Անբավարար է մշակվում նաև տեղական տուֆը, և այդ այն ժամանակ, երբ Երևանը և ռեսպուբլիկայի մյուս քաղաքները տեղական տուֆի անսպառ պաշարներ ունեն։*

*Տեղական շինանյութերի մատակարարման գործի այսպիսի վիճակը շինարարական կազմակերպություններին հարկադրում է անխուսափելի կերպով օգտագործել տեղական բազմաթիվ մանր անարդյունավետ քարհանքերը, որ ամենևին նրանց խնդիրների մեջ չի մտնում և նրանց շեղում է իրենց հիմնական գործից։*

*Տեղական շինանյութերի արտադրության վարչության քարհանքերում քարի ստանդարտի խախտումները և թերաչափումները հսկայական վնաս են պատճառում շինարարական կազմակերպություններին։ Տեղական շինանյութերի մատակարարման գործի այս վիճակը պետք է բարելավել արմատապես։*

*Շինարարությունը հաջողությամբ առաջ տանելու գործում շատ մեծ դեր*

է խաղում տրանսպորտի աշխատանքը։ Կարելի է ուղղակի ասել, որ ժողովրդական տնտեսության ոչ մի բնագավառում տրանսպորտն այնպիսի վճռական դեր չի խաղում, ինչպես շինարարության մեջ։

Շինարարությունը բեռների մեծ տեղափոխություններ է պահանջում։ Ներկայումս շինարարության խիստ լիմիտացվող հանգամանք է հանդիսանում տրանսպորտային միջոցների պակասությունը և եղած տրանսպորտի ոչ ռացիոնալ օգտագործումը։ Ընդհանուր օգտագործման ավտոմոբիլային տրանսպորտը, երբ փոխադրությունները կենտրոնացված են, շատ ավելի արտադրողական աշխատանք է կատարվում։ Սակայն, ցավոք սրտի, Հայկական ՍՍՌ Ավտոմոբիլային տրանսպորտի մինիստրության տրանսպորտային տնտեսությունները դեռևս այդ աստիճանին չեն հասել գլխավորապես վարորդների մեջ անթույլատրելի չափերով թույլ կարգապահության առկայության պատճառով։ Մեքենաների ուշ աշխատանքի դուրս գալը, օրվա կեսին աշխատանքը թողնելը, վարորդների կողմից մեքենան իրենց անհատական շահերին ծառայեցնելը խիստ մեծ չափերի են հասել։ Հաճախ քարհանքերում կուտակված նյութեղենը շինարարական հրապարակները չեն հասնում ավտոմոբիլային տրանսպորտի վատ օգտագործման հետևանքով։ Քանի որ շինարարության հաջողությունը մեծ չափով լուծում է տրանսպորտի աշխատանքը, ապա անհրաժեշտ է բացի վարորդների մեջ կարգապահությունը խիստ բարձրացնելուց՝ կարգավորել նաև մյուս հարցերը։ Ամենից առաջ պետք է կարգի բերել քարհանքերի և շինհրապարակների մուտքի ուղիները, անհրաժեշտ է կարգավորել բեռնման հրապարակները և մեքենայացնել բազալտահանքերի բեռնման աշխատանքները։ Ավտոմեքենաների մեծ պարապուրդներ տեղի են ունենում շլամի բարձման ժամանակ, որի նորմալ շահագործման հարցը մինչև այժմ Երքաղսովետը չի կարգավորել։

Հաշվի առնելով ավտոմոբիլային տրանսպորտի պակասությունը՝ այն պետք է օգտագործել երկարացված բանվորական օրով, երկու հերթափոխությամբ։ Տրանսպորտի աշխատանքի կարգավորումը կարևոր խնդիր է, որը որոշում է շինարարության հաջողությունը։

Վերջերս հրապարակվեց ՍՄԿՊ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի որոշումը՝ «ՍՍՌՄ-ում բնակարանային շինարարության զարգացման մասին»։ Այդ որոշումը լավագույն վկայություն է այն բանի, որ Կոմունիստական պարտիան ու Սովետական կառավարությունը միշտ էլ անդուլ հոգատարություն են ցուցաբերում մեր երկրի աշխատավորության նկատմամբ։ Այն մեծ պատասխանատվություն է դնում կառուցողների առջև՝ հայտաբերելու և օգտագործելու բնակարանային շինարարության բոլոր ռեզերվները, որպեսզի պատվով կատարվեն պարտիայի ու կառավարության առաջադրանքները։

Արդյունաբերության և շինարարության կառավարման կազմակերպման ուղղությամբ մեր պարտիայի ու կառավարության կողմից ձեռնարկված միջոցառումների իրականացումը լայն հնարավորություններ են տալիս շինարարական կազմակերպություններին՝ էլ ավելի արագացնելու կառուցումների տեմպը։ Լիովին օգտագործելով այդ հնարավորությունները, շինարարական օբյեկտների պարտկազմակերպություններն ու տնտեսավարները պետք է բանվորներին ու ինժեներա-տեխնիկական աշխատողներին պայքարի հանեն ավելի արագ, ավելի էժան և որակով կառուցելու համար։

---

# ՆՈՐ ՏԵԽՆԻԿԱՅԻ ԱՐՄԱՏԱՎՈՐՈՒՄԸ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԹԵԹԵՎ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ՄԵՋ

Վ. ՊՈՂՈՍՈՎ

Վեցերորդ հնգամյակի երկրորդ տարին բնութագրվում է աշխատավորության ստեղծագործական նախաձեռնության բարձր վերելքով։ Այս տարի սովետական ժողովուրդը նշում է առաջին սոցիալիստական պետության պատմության մի նշանավոր տարեթիվ՝ Մեծ Հոկտեմբերի 40-րդ տարեդարձը։ Մեր անծայրածիր Հայրենիքում ավելի ու ավելի լայնորեն է ծավալվում սոցիալիստական մրցությունը այդ նշանավոր տարեդարձն արժանավայել դիմավորելու նպատակով։ Մրցության մասնակիցներն իրենց ջանքերը լարում են ՍՄԿՊ XX համագումարի առաջադրած խնդիրներն օրինակելիորեն կատարելու, աշխատանքի արտադրողականությունն ամեն կերպ բարձրացնելու համար։

Մրցող ձեռնարկությունների կոլեկտիվները պարտավորվել են աշխատավորների մեծ տոնը դիմավորել պլանը ժամկետից շուտ կատարելով, իրենց աշխատանքի արտադրողականության բոլոր ցուցանիշները բարելավելով։ Մրցության նախաձեռնողների թվում են՝ Լենինականի Տեքստիլ և Երևանի Մետաքսի կոմբինատները, Երևանի կարի առաջին, Կոշիկի առաջին և Ստալինի անվան տրիկոտաժի գործարանները։

Առաջադրված նպատակներին հասնելու կարևորագույն միջոցը մրցության մասնակիցները իրավացիորեն համարում են տեխնիկական լայն պրոգրեսի իրականացումը արտադրության բոլոր բնագավառներում։

Թեթև արդյունաբերության ձեռնարկությունները գլխավոր ուշադրությունը բևեռում են նոր տեխնիկայի ու տեխնոլոգիայի արմատավորման, արտադրության ավտոմատացման ու մեխանիզացիայի, գոյություն ունեցող սարքավորման մոդեռնացման ու լավագույն օգտագործման վրա։

Նոր տեխնիկայի արմատավորումը մեծ արդյունք է տալիս։ Դրա շնորհիվ է, որ բարձրանում է աշխատանքի արտադրողականությունը, իջնում արտադրանքի ինքնարժեքը, նվազում են կապիտալ ներդրումները, ավելանում է արտադրության ծավալը, ռացիոնալ կերպով է օգտագործվում հումքը, բարձրանում է արտադրանքի որակը, ինչպես և բարելավվում են բանվորների աշխատանքի պայմանները։ Նոր տեխնիկայի արմատավորման արդյունավետությունը հիմնականում որոշվում է աշխատանքի արտադրողականության բարձրացման մակարդակով և համապատասխանաբար ապրանքների արտադրության վրա հասարակական աշխատանքի ծախսումն իջեցնելու աստիճանով։ Արտադրության ճյուղերի մեծ մասի սարքավորման պարկը համալրվել է ավելի արտադրողական մեքենաներով ու ագրեգատներով, որոնք թեթևացնում, կամ բոլորովին դուրս են մղում ձեռքի աշխատանքը։

Մի քանի ճյուղերում շարունակվել է մի շարք պրոցեսների կոնվեյերացումը։ Տեղի է ունեցել տեխնոլոգիական մի շարք նորամուծությունների արմատավորում, ընդլայնվել է ավելի կատարյալ տեխնոլոգիայի կիրառումը։

Այդ աշխատանքում մեծ դեր խաղացին Լենինականի Տեքստիլ կոմբինատի, Կիրովականի Կորդի և Տրիկոտաժի գործարանների, Կոշիկի առաջին և երրորդ գործարանների, Մետաքսի կոմբինատի, Կարի առաջին և երրորդ գործարանների կոլեկտիվները, որոնք ակտիվորեն ու նպատակասլաց կերպով բարձրացնում էին իրենց արտադրության որակը։ Խոշոր նշանակություն ունեցավ նաև Պետբանկի կարճատև վարկերի օգտագործումը ձեռնարկություններում։

Միայն 1956 թվականի ընթացքում արդյունաբերությունն ստացավ տեխնոլոգիական նոր սարքավորման 570 միավոր, ավելի քան 7,5 միլիոն ռուբլու արժողությամբ։ Բացի դրանից, մոնտաժի մեջ էին 1955 թվականից անցած 49 միավոր՝ մինչև 2,5 միլիոն ռուբլու արժողությամբ։

Վեցերորդ հնգամյակի Դիրեկտիվներում նախատեսված է 1960 թվականին Սովետական Միության տեքստիլ արդյունաբերության մեջ ավտոմատիկ ջուլհակահաստոցների պարկը հասցնել այդ հաստոցների ընդհանուր թվի մոտ 60 տոկոսին։

Ռեսպուբլիկայի տեքստիլ արդյունաբերության մեջ ավտոմատիկ ջուլհակահաստոցների տեսակարար կշիռը արդեն 1956 թվականի վերջերին կազմում էր 72 տոկոս, իսկ բամբակեղենի արտադրության մեջ՝ 89,5 տոկոս, մինչդեռ ամբողջ Սովետական Միությունում ավտոմատիկ ջուլհակահաստոցների տեսակարար կշիռը բամբակեղենի մանածագործության մեջ կազմում էր միայն 38 տոկոս։

1956 թվականի դեկտեմբերին և 1957 թվականի հունվարի սկզբին Լենինականի Տեքստիլ կոմբինատն ստացավ «АТ—100—2» մարկայի 198 նոր ավտոմատիկ ջուլհակահաստոց, Մետաքսի կոմբինատը՝ «ЧГСП—50» մարկայի 28 հաստոց, Նուրբ մահուդի կոմբինատը՝ «АТ—175—III» մարկայի ավտոմատիկ ջուլհակահաստոց և Միկոյանի անվան մահուդի գործարանը՝ ներմուծման գծով «Տեքստիմա» մարկայի 15 բազմամաքոք ջուլհակահաստոց։ Այդ հաստոցները տեղադրված են ազատ տարածություններում և մասամբ փոխարինել են նվազ արտադրողական հին ջուլհակահաստոցներին։

Տեքստիլ արդյունաբերության բամբակեղենի ճյուղի մանվածքային արտադրությունների նախապատրաստական բոլոր բաժանմունքներում, բացառությամբ Միկոյանի անվան մանարանի, փափկացնող և քրքրող ամբողջ սարքավորումը ագրեգատացված է հոսանքային ավտոմատացված գծերում։

1956 թվականին շարունակվում էր ժապավենա-նախամանվածքային գծի և մանվածքային սարքավորման նորացումը։ Միկոյանի անվան մահուդի գործարանում պարբերական գործողության հին մանող մեքենաները (սելֆակտորները) փոխարինվում են անընդհատ գործողության նոր արագընթաց մեքենաներով։

Բամբակեղենի, բրդեղենի և մետաքսեղենի ձեռնարկությունների ներկման-վերամշակման արտադրությունները 1956 թվականի ընթացքում համալրվել են այնպիսի սարքավորմամբ, որը թույլ է տալիս ավելի լավ նորմալացնել ու կատարելագործել բոլոր տեսակի գործվածքների վերամշակման տեխնոլոգիան։

Ռեսպուբլիկայի ձեռնարկություններում 1956 թվականին դրված են սար-



քավորման նոր տեսակների 86 միավոր, այդ թվում՝ ներկելու տաշտեր, փաթաթիչ, լաստիկային, կետլյավորող, ասեղնագործական և այլ մեքենաներ։ 1956 թվականի դեկտեմբերի վերջին ստացվեցին 54 կարգի կետլյովկա չպահանջող գուլպայի կոտտոն 5 մեքենա, Լենինականի Գուլպա-տրիկոտաժի գործարանում տեղադրված ու յուրացված են «ЛРВ—ж» մարկայի նախշավոր գուլպաներ արտադրող ավտոմատներ։

Լրացուցիչ կերպով գործի են դրվել կարի 10 կոնվեյեր։ Ներկայումս արդյունաբերության տրիկոտաժային ճյուղում կարի վերամշակման, կետլյովկայի և տեսակավորման գործողությունների մինչև 75 տոկոսը կոնվեյերացված է։

Ռեսպուբլիկայի կարի ձեռնարկություններում 1956 թվականի վերջերին կարի բոլոր ցեխերում տեղադրված են հոսքային-կոնվեյերային գծեր։ Շարունակվում էր ձեռքի առանձին աշխատատար գործողությունները մեխանիզացիայի ենթարկող կարի նոր ու հատուկ մեքենաների լայն արմատավորումը։ Հարթուկման բոլոր գործողություններն այժմ կատարվում են հատուկ մամլակներով։

Ավարտված է Երևանի Կոշիկի առաջին ու երրորդ և Լենինականի Կոշիկի երկրորդ գործարանների հագեցումը հոսքային-կոնվեյերային գծերով։ Մեքենայացված են տեխնոլոգիական բոլոր հիմնական պրոցեսները։ Կոշիկի առաջին և երրորդ գործարաններում փափուկ կաշվեղենի ձևումը մեքենայացված է 90 տոկոսով։

Կաշեգործարանների սարքավորման պարկը համալրվել է նոր տեխնիկայով. ստացված և շահագործման են հանձնված մեքենաներ՝ ձևված կաշվեղենի երիզման համար, 34 կարգի մեքենաներ՝ ձևված կաշվեղենի եզրաշերտը կարելու և միաժամանակ ստառի ավելցուկները կտրելու համար, մեքենաներ՝ ներբանը սոսնձելու համար և այլն։

Թեթև արդյունաբերության բոլոր ճյուղերում աշխատանք է ծավալվում գործող տեխնոլոգիական սարքավորումը մոդեռնացնելու համար։ Նոր տեխնիկայի արմատավորումն ու սարքավորման մոդեռնացումը տվել են տեխնիկատնտեսական մեծ արդյունք, որը հիմնականում արտահայտվում է աշխատանքի արտադրողականության բարձրացմամբ և արտադրության վրա հասարակական աշխատանքի ծախսման իջեցումով։

Այսպես, օրինակ, Լենինականի Տեքստիլ կոմբինատում «Նարտրոպ» տիպի հին ավտոմատիկ ջուլհակահաստոցների փոխարինումը «АТ—100—2» մարկայի նոր ավտոմատիկ ջուլհակահաստոցներով (նույնիսկ չնայած նրանց կոնստրուկցիայի որոշ թերություններին ) թույլ տվեց մանածագործարանների աշխատանքի արտադրողականությունը բարձրացնել 20 տոկոսով։

Կիրովականի Կորդի գործարանում հին սարքավորմամբ կատարվող երկպրոցեսանի քրքրման փոխարինումը մեկ պրոցեսանի քրքրումով և ավտոմատիկորեն գործվող բարձր կարողությամբ օժտված փափկացնող նոր ագրեգատի տեղադրումը հնարավորություն տվեցին ավելի քան երկու անգամ ավելացնել կտավների թողարկումը՝ միաժամանակ բարելավելով նրանց որակը, և գրեթե երկու անգամ բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը։

«Դոբսոն-Բարլո» հին մեքենաների փոխարեն նախամանվածքի «РТП—192» մարկայի երեք նոր մեքենաների տեղադրման հետևանքով բանվորուհիների աշխատանքի արտադրողականությունը բարձրացավ 25 տոկոսով, և ազատվեցին 8 բանվորուհի։

«Գորսոն—Բարլո» հին մեքենաների փոխարեն հատուկ հարմարանք ունեցող «П—83—2» մարկայի 8 նոր մանող մեքենաների տեղադրման շնորհիվ 1956 թվականի 4-րդ եռամսյակում 1955 թվականի համեմատությամբ մանվածքային սարքավորման արտադրողականությունը ամբողջ գործարանի մասշտաբով բարձրացավ 9,2 տոկոսով (1000 իլիկ-ժամում հասավ 709 կիլոհամարի՝ 649 կիլոհամարի դիմաց)։ Նույն ժամանակամիջոցում մանող բանվորուհիների աշխատանքի արտադրողականությունը կիլոհամարներով հաշված բարձրացավ 21 տոկոսով։ Երևանի Մահուդի գործարանում տեղադրված «П—114—III» մարկայի նոր մեքենաների արտադրողականությունը հին մեքենաների արտադրողականությունից բարձր է 85—90 տոկոսով։

Նոր տեխնիկայի արմատավորման և նոր պրոցեսների մեքենայացման արդյունավետությունն առավել ակնառու երևում է հին գործարանները վերակառուցելիս։ Այսպես, օրինակ, Լենինականի մանարանում իրագործված տեխնիկական վերակառուցման հետևանքով 1950 թվականի համեմատությամբ, 1956 թվականին մանվածքի թողարկումը տոննա-համարներով աճից 87,6 տոկոսով, այդ թվում հին սարքավորումը նորով փոխարինելու, գործող մեքենաների մասնակի մոդեռնացման և տեխնոլոգիական պրոցեսների նորմալացման հաշվին՝ 48,4 տոկոսով։ Զգալիորեն բարելավվեց արտադրանքի որակը։ Աշխատուժի տեսակարար ծախսումն իջավ 40 տոկոսով։ Մանող բանվորուհիների աշխատանքի արտադրողականությունը նույն ժամանակամիջոցում բարձրացավ ավելի քան երկու անգամ, իսկ մանվածքի միջին համարը բարձրացավ 16 տոկոսով։ Միմիայն 1956 թվականի ընթացքում այդ գործարանում աշխատանքի արտադրողականությունը բարձրացավ 12,5 տոկոսով, իսկ մանվածքի համարը՝ 4,3 տոկոսով։

Զգալի արդյունք է ստացված Երևանի Կոշիկի երրորդ գործարանում իրագործված տեխնիկական վերակառուցման հետևանքով։ Այդ գործարանում սարքավորման մեծ մասը փոխարինված է նոր, կատարելագործված մեքենաներով, առաջ ձեռքով կատարվող շատ գործողություններ այժմ կատարվում են հատուկ մեքենաներով. հոսքային-կոնվեյերային գծեր են արմատավորված կարի և ձևի ցեխերում, գործարանը մասնագիտացման է ենթարկված։ Այդ բոլորի հետևանքով մեկ բանվորի աշխատանքի արտադրողականությունը (մոտավորապես միևնույն ասորտիմենտի կոշկի թողարկման գծով) 1950 թվականի համեմատությամբ 1956 թվականին աճել է 60 տոկոսով, իսկ 1955 թվականի համեմատությամբ՝ 15,9 տոկոսով։

Նույն գործարանի երեխաների կոշիկի ցեխում 1956 թվականին մեկ բանվորին ընկնող կոշիկի արտադրանքը 1955 թվականի համեմատությամբ աճել է 22,8 տոկոսով, ընդ որում կոշիկի որակը բարելավվել է։

Ձեռնարկությունները նոր տեխնիկայով հագեցնելու, ձեռքով կատարվող աշխատատար պրոցեսները մեքենայացնելու և կոնվեյերներում աշխատանքի հոսքային գործողության մեթոդին անցնելու հետևանքով 1956 թվականին մեկ բանվորի թողարկած արտադրանքը 1955 թվականի համեմատությամբ աճել է Կիրովականի Տրիկոտաժի գործարանում՝ 42,3 տոկոսով, Ստալինի անվան տրիկոտաժի գործարանում՝ 37,5 տոկոսով և Երևանի Կլարա Ցետկինի անվան կարի առաջին գործարանում՝ 38,2 տոկոսով։



Նշելով ռեսպուբլիկայի թեթև արդյունաբերության մեջ զգալի քանակությամբ նոր տեխնիկայի ստացման և դրա օգտագործման դրական փաստերի մասին, անհրաժեշտ է ամբողջ ուժով ընդգծել, որ մի շարք ձեռնարկություններում նոր տեխնիկայի գործադրումը ձգձգվում է, այն դանդաղ է յուրացվում, որի հետևանքով այդ տեխնիկայի արմատավորումից մենք պատշաճ արդյունք չենք ստանում։

Այսպես, Երևանի Միկոյանի անվան մահուդի գործարանում 1955 թվականի մայիսին ստացված գզող ապարատը շահագործման հանձնվեց 14 ամիս հետո։ Նույն գործարանի մանվածքի արտադրության մեջ տեղադրված են նոր արագընթաց մանող մեքենաներ, որոնց արտադրողականությունը պարբերական գործողության հին մեքենաների արտադրողականությունից բարձր է 85—90 տոկոսով։ Սակայն մանվածքային սարքավորման արտադրողականությունը ամբողջ գործարանում 1956 թվականի չորրորդ եռամսյակում նույն թվականի առաջին եռամսյակի համեմատությամբ իջել է 3,1 տոկոսով, իսկ մանող բանվորուհիների աշխատանքի արտադրողականությունը (կիլո-համարներով)՝ 0,5 տոկոսով։

1956 թվականին Քանաքեռի կոշիկի գործարանում կոշիկի քթամասի և կրնկամասի ձգման համար ստացված «АСГ—4» մարկայի երկու մեքենա, կոշիկի նույն մասերի տաք կաղապարման մեքենան և կոշկատակի դետալների մամլակները մինչև այժմ չեն յուրացված և անգործության են մատնված։

Անբավարար են օգտագործվում և պատշաճ տնտեսական արդյունք չեն տալիս բամբակի հումքը բարդանների մեջ լցնելու և այն հակերի վերածելու համար բամբակամթերման մի շարք կայաններում տեղադրված մեխանիզմները։ Պետք է ընդգծել նաև այն փաստը, որ մի շարք ձեռնարկությունների վերամշակող արտադրություններում ու ցեխերում մեքենաների վրա դրված տեխնոլոգիական պրոցեսների ավտոմատիկ կարգավորման գործիքները հաճախ անգործության են մատնվում, քանի որ նրանց նկատմամբ պատշաճ խնամք չի կազմակերպված։

Նոր տեխնիկայի և առաջավոր տեխնոլոգիայի արմատավորումը, նոր տեխնիկայի սարքավորման ու ապարատուրայի յուրացումը, որոնց նպատակն է ստանալ առավելագույն տնտեսական արդյունք, ստեղծագործական հսկայական ջանքեր, հաստատակամություն ու պրակտիկ գործողություններ են պահանջում մեր ինժեներա-տեխնիկական աշխատողներից, արտադրության նորարարներից ու ռացիոնալիզատորներից։

Հաճախ նոր տեխնիկայի արմատավորման ընթացքում քիչ դժվարություններ չեն առաջանում։ Հարկավոր է և պետք է հաստատակամորեն ու համարձակորեն հաղթահարել այդ դժվարությունները, ստեղծագործական ու ակտիվ գործունեության մեջ ներգրավելով ինժեներա-տեխնիկական աշխատողներին, արտադրության ռացիոնալիզատորներին ու նորարարներին, լայնորեն օգտագործելով Սովետական Միության առաջավոր ձեռնարկություններում նոր տեխնիկայի յուրացման փորձը։

1957 թվականին թեթև արդյունաբերության աշխատողների առջև մեծ և բարդ խնդիրներ են ծառացած նոր տեխնիկայի, առաջավոր տեխնոլոգիայի արմատավորման, արտադրական պրոցեսների ավտոմատացման ու մեքենայացման և գործող տեխնոլոգիական սարքավորման մոդեռնացման բնագավառում։

Անհրաժեշտ է խնամքով մշակել և հաստատակամությամբ միջոցառումներ իրագործել, որպեսզի մոնտաժի ենթարկենք ու գործի դնենք 1956 թվականից մնացած նոր սարքավորման 268 միավորը և 890 միավոր կազմող այն ամբողջ նոր տեխնիկան, որն ստացվելու է 1957 թվականին մեր հայտերի և նոր տեխնիկայի արմատավորման պլանների համաձայն։

Ընթացիկ տարում բամբակեղենի արդյունաբերությունն ստանալու է «РТП—192—2» մարկայի նախամանվածքային, «ЧМ—450—2» մարկայի գզող մեքենաներ, մանող մեքենաների փոշեփչիչներ, «ПБС—1» մարկայի սնող-խառնիչներ, մնացորդների սնողները, ուղղաձիգ փափկացուցիչներ, «МТ—150» մարկայի փաթաթող մեքենաներ։ Բրդեղենի արդյունաբերությունը հագեցվելու է նախամանվածքային մեքենաներով, «П—114» մարկայի մանող մեքենաներով, «Ч—31—III» մարկայի եռասանր մեքենաներով, լվացող կեմային մեքենաներ։ Մետաքսի արդյունաբերությունն ստանալու է բոժոժափաթաթիչ ավտոմատներ, «КЭ2—145—ШЛ» մարկայի ոլորող մեքենաներ, «ШТ—155—И» մարկայի օսլայող մեքենաներ։ Տրիկոտաժի արդյունաբերության համար ստացվելու են կոտտոն մեքենաներ, «КАС—30—2с» և КАС—14—2с» մարկայի գուլպայի ավտոմատներ, հենքա-գործվածքային մեքենաներ, ներկելու տաշտեր, փաթաթող, հենքի և ասեղնագործական մեքենաներ։ Կարի արդյունաբերությունն ստանալու է մոտ 100 հատուկ մեքենաներ կարի մի շարք պրոցեսներում կիրառելու համար։ Մեծ քանակությամբ նոր տեխնիկա է ստանալու կաշվի-կոշկեղենի արդյունաբերությունը, օրինակ՝ փափուկ կաշվեղենը ձևելու մամլիչներ, ծալող, կոշիկի քթամասը վրա քաշող, եզրերը ֆրեզող, ներբանը կարող մեքենաներ, շնեկի ապարատ, քամող լիսեռներ, հղկող, լիսեռային անջատող մեքենաներ, չորացնող և մի շարք այլ մեքենաներ։

Ռեսպուբլիկայի թեթև արդյունաբերության տեխնիկական պրոգրեսի գործում մեծ ավանդ են մտցրել գյուտարարները ու արտադրության ռացիոնալիզատորները։

1956 թվականին արդյունաբերության մեջ գյուտարարների և ռացիոնալիզատորների թիվը հասել է 752-ի, 1955 թվականի համեմատությամբ աճելով 33 տոկոսով։ Տրված է 1326 առաջարկություն (31 տոկոսով ավելի, քան 1955 թվականին) կամ յուրաքանչյուր հազար աշխատողին 46 առաջարկություն։

Օգտագործման համար ընդունված 1054 առաջարկությունից արդյունաբերության մեջ արմատավորված է 887-ը, որի տնտեսական արդյունքը կազմում է 7359 հազար ռուբլի։

1956 թվականին ռացիոնալիզատորական աշխատանքի զարգացման գործում դրական գործոն հանդիսացավ այն, որ ստացվող առաջարկություններն սկսեցին ավելի ժամանակին քննարկվել, իսկ օգտագործման համար ընդունված առաջարկությունները ավելի եռանդուն կերպով են արմատավորվում արդյունաբերության մեջ։

1957 թվականի հունվարի 1-ի դրությամբ քննարկման համար մնացել է ստացված բոլոր առաջարկությունների միայն 4,3 տոկոսը։ Արմատավորված առաջարկությունների քանակը 1955 թվականի համեմատությամբ աճել է 32,6 տոկոսով։ Այդ դրական արդյունքները հետևանք են կազմակերպական-մասսայական աշխատանքի բարելավման։ Այդ աշխատանքը առանձնապես ուժեղացել է 1956 թվականի մարտին թեթև արդյունաբերության բնագավառի գյուտարարների, արտադրության ռացիոնալիզատորների ու նորարարների ռեսպուբլիկական խորհրդակցություններ անցկացնելուց հետո, ինչպես նաև գյուտարարների ու ռացիոնալիզատորների 1956 թվականի օգոստոսին կայացած համամիութենական խորհրդակցությանը նախապատրաստվելու և այդ խորհրդակցության ընդունած դիմումը մասսայականացնելու ընթացքում։



Գյուտարարության ու ռացիոնալիզացիայի գծով կատարվող աշխատանքը ավելի լավ է կազմակերպված Լենինականի Տեքստիլ կոմբինատում (գլխավոր ինժեներ ընկ. Խաչանով, գյուտարարության գծով ինժեներ ընկ. Կարանյան)։

1956 թվականին ռացիոնալիզատորների թիվը կոմբինատում ավելացել է 87 տոկոսով։ Այստեղ առանձնապես արժեքավոր է այն, որ ստացվող առաջարկությունները ժամանակին քննարկվում, իսկ օգտագործման ընդունվածները արմատավորվում են արտադրության մեջ։ Առ 1-ը հունվարի 1957 թվականի կոմբինատում տրված 249 առաջարկություններից չքննարկված են մնացել միայն 2-ը, իսկ օգտագործման համար ընդունված 198 առաջարկությունից արմատավորված են 190-ը։

Գյուտարարության ու ռացիոնալիզացիայի գծով տարվող աշխատանքն զգալիորեն բարելավվել է Երևանի Լենինի անվան Մետաքսի կոմբինատում։

Նշելով այս դրական արդյունքները, մենք պետք չ ընդունենք, որ գյուտարարական ու ռացիոնալիզատորական շարժումը թեթև արդյունաբերության մեջ դեռևս չի դարձել իսկական մասսայական շարժում։ Բավական է նշել, որ ռեսպուբլիկայի թեթև արդյունաբերության մեջ 32 աշխատողին ընկնում է մեկ ռացիոնալիզատոր, մինչդեռ Սովետական Միության արդյունաբերության մի շարք ճյուղերում, ինչպես այդ մասին հաղորդվեց համամիութենական խորհրդակցությունում, յուրաքանչյուր չորրորդ-հինգերորդ աշխատողը գյուտարար է կամ ռացիոնալիզատոր։

Ռացիոնալիզատորական շարժումը ավելի թույլ է զարգացած Լենինականի մանարանում, Կիրովականի Տրիկոտաժի և Ստալինի անվան Տրիկոտաժի գործարաններում, Կարի առաջին և երկրորդ գործարաններում, Մարտի 8-ի անվան Մետաքսի գործարանում և Լենինականի Գուլպա-տրիկոտաժի գործարանում։

Ռացիոնալիզատորական աշխատանքի ամենաէական թերությունն այն է, որ օգտագործման համար ընդունված առաջարկությունների արմատավորումն արտադրության մեջ դեռևս ձգձգվում է։ Առ 1-ը հունվարի 1957 թվականի թեթև արդյունաբերության սիստեմում չարմատավորված էր մնացել ընդունված առաջարկությունների 16 տոկոսը։

Այդ տեսակետից գործն առանձնապես անբարեհաջող է Նուբր մահուդի կոմբինատում, որտեղ չի արմատավորվել օգտագործման համար ընդունված առաջարկությունների 43 տոկոսը, Երևանի Կարի առաջին և Խրոմպիկի գործարաններում, որտեղ չի արմատավորվել ընդունված առաջարկությունների մինչև 37 տոկոսը, Ստալինի անվան Տրիկոտաժի, Լենինականի Գուլպա-տրիկոտաժի գործարաններում, որտեղ չարմատավորված է մնացել օգտագործման համար ընդունված առաջարկությունների 23-ից մինչև 26 տոկոսը։

Մի շարք ձեռնարկություններում ձգձգվում է ստացվող առաջարկությունների քննարկումը և ստուգման համար ընդունված առաջարկությունների փորձարկումը։ Ընդունված առաջարկությունների փորձնական ստուգման և արմա-

տավորման համար անհրաժեշտ նյութա-տեխնիկական բազա չի ստեղծվում։

Այս ամենը նվազեցնում է արտադրության ռացիոնալիզատորների ստեղծագործական ջանքերի արդյունավետությունը, կասեցնում է ռացիոնալիզատորական գործի զարգացումը ձեռնարկություններում։

Ձեռնարկությունների և Հայկական ՍՍՌ Ժողովրդական Տնտեսության Խորհրդի թեթև արդյունաբերության վարչության ապարատի տնտեսական ու տեխնիկական ղեկավարները ձեռնարկություններում պետք է ստեղծեն բոլոր անհրաժեշտ պայմանները և բազմակողմանի օգնություն կազմակերպեն արտադրության ռացիոնալիզատորներին ու նորարարներին նրանց ստեղծագործական գործունեության մեջ, ժամանակին արդյունաբերության մեջ արմատավորեն օգտագործման համար ընդունված առաջարկությունները։

1956 թվականին ռեսպուբլիկայի թեթև արդյունաբերության մեջ տեխնիկական պրոպագանդայի և արտադրական-տեխնիկական առաջավոր փորձի փոխանակման ուղղությամբ ավելի պլանաչափ աշխատանք ծավալվեց։ Սիստեմատիկաբար ձեռնարկություններն էր ուղարկվում ճյուղային գիտա-հետազոտական ինստիտուտների ժողովածուները, բրոշյուրներ ու ժողովածուներ արտադրական-տեխնիկական առաջավոր փորձի փոխանակման շուրջը, ռեֆերատներ ու էքսպրես-ինֆորմացիաներ հայրենական և արտասահմանյան տեխնիկայի ու տեխնոլոգիայի նորությունների մասին։

Ձեռնարկությունների ինժեներա-տեխնիկական աշխատողներն ու արտադրության նորարարները մասնակցել են Սովետական Միության թեթև արդյունաբերության զանազան ճյուղերի արտադրական-տեխնիկական առաջավոր փորձի փոխանակման շուրջը հրավիրված խորհրդակցություններին։

Խորհրդակցությունների և էքսկուրսիաների արդյունքները, որպես կանոն, քննարկվել են ինժեներա-տեխնիկական աշխատողների և արտադրության առաջավորների ընդլայնված խորհրդակցություններում, մշակվել են առաջարկություններ՝ ընդօրինակված արտադրական-տեխնիկական առաջավոր փորձը ձեռնարկություններում արմատավորելու վերաբերյալ։ Եվ այն ձեռնարկություններում, որտեղ մշակված միջոցառումները գործարար կերպով կիրառվել են, ձեռք է բերվել զգալի տնտեսական արդյունք։

Մոսկվայի և Իվանովոյի ձեռնարկությունների փորձի հիման վրա Լենինականի Տեքստիլ կոմբինատը նախապատրաստվում է գործվածքեղենի ճերմակացման հիպոքլորային եղանակի փոխարեն արմատավորել ճերմակացման պերօքսիդային առաջավոր եղանակը, որը հնարավորություն կտա տեխնոլոգիական պրոցեսի տևողությունը կրճատել մոտավորապես 30—35 տոկոսով, իջեցնել անավարտ արտադրության նորմատիվները, շոգու ծախսումը կրճատել մոտ երկու անգամ և էլեկտրաէներգիայի ծախսումը՝ 20—30 տոկոսով, պակասեցնել ջրի ծախսումը, գրեթե երկու անգամ բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը։ Բացի դրանից, նոր եղանակի կիրառման դեպքում կավելանա գործվածքեղենի ամրությունն ու դիմացկունությունը։

Այդ նույն ձեռնարկությունների փորձի հիման վրա տպող լիսեռների փորագրման ֆոտոմեխանիկական եղանակի արմատավորումն ընդլայնեց Տեքստիլ կոմբինատի հնարավորությունները գործվածքեղենի գեղարվեստական ձևավորումը բարելավելու ուղղությամբ։

Կոմբինատի մանածագործարանում ջուլհակահաստոցներով եղրաթելի



հանգուցման նոր եղանակը սովորել են 615 մանածագործուհիներ, և այդ նպաստեց նրանց աշխատանքի արտադրողականության բարձրացմանը։

Կոճերի փաթաթված մանվածքի երկարությունն ավելացնելու և մանող-փաթաթող բանվորուհիների աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու համար Մոսկվայի «Կրասնոյե զնամյա» գործարանի փորձի հիման վրա վերափոխված է 104 մանող մեքենաների փաթաթման հանգույցը, որի հետևանքով ստացված տնտեսական արդյունքն արտահայտվում է 122.348 ռուբլի գումարով։

Կոմբինատի ձուլման-մեխանիկական արտադրության մեջ Երևանի մեքենաշինական գործարանի փորձի հիման վրա արմատավորված է դետալների մեխանիկական կաղապարման եղանակը

Լենինի անվան Մետաքսի կոմբինատում առաջավոր մետաքսագործարանների փորձի հիման վրա ոլորիչ մեքենաները՝ «УГСП—50» մարկայի ջուլհակահաստոցներն աշխատում են ավելի բարձր արագությամբ, որն այդ սարքավորման արտադրողականությունը բարձրացրել է մինչև 10 տոկոսով։

Կոմբինատում մի շարք միջոցառումներ են մշակված մետաքսի գործվածքեղենի մշակման տեխնոլոգիական և գեղարվեստական ձևավորումը բարելավելու համար, որոնց մի մասի իրականացումն արդեն զգալի արդյունք է տվել։

Արմատավորված է մետաքսի հումքը թրջոց դնելու նոր ռեժիմ, որը հնարավորություն է տվել բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը փաթաթման բաժանմունքում և այլն։

Լենինականի Գուլպա-տրիկոտաժի գործարանում կոտտոն գուլպաների արտադրության առաջավոր փորձի փոխանակման ու ներդնման նպատակով, Մոսկվայի կոնֆեդերացիայի հանձնարարականների հիման վրա սկսված է կոտտոն մեքենաների վերափոխումը՝ առանց կետլյովկայի գուլպաներ արտադրելու համար, որն իջեցնում է մեկ միավորի վրա կատարված աշխատանքի ծախսումը և բարձրացնում է գուլպաների որակը։

Երևանի Կլարա Ցետկինի անվան կարի գործարանը Մոսկվայի առաջավոր՝ ձեռնարկությունների փորձի հիման վրա անցել է հերթափոխության ժամանակ աշխատանքի չընդհատվող (нес’емный) պրոցեսի, արմատավորելով մարշրուտային սիստեմը։ Գործարանում արմատավորված են ձևելու և պլանավորման քարտերը։ Այս ամենը հնարավորություն է տվել անավարտ արտադրության մեջ եղած հումքի պաշարները և ձևելու ժամանակ գործվածքների ոչ ռացիոնալ մնացորդները պակասեցնել 5-ից մինչև 1,5 տոկոսով։

Նման աշխատանքներ են կատարվում նաև մի շարք այլ ձեռնարկություններում։ Միայն 7 գործարաններում արմատավորված են արտադրական-տեխնիկական առաջավոր փորձի փոխանակման կարգով փոխառված 80 տարբեր, միջոցառումներ։

Արտադրական-տեխնիկական առաջավոր փորձի ուսումնասիրման և արդյունավետ օգտագործման այսպիսի պրակտիկան պետք է ըստ ամենայնի ընդլայնել և խորացնել։ Որպես այդ գործի զարգացման դրական գործոն պետք է նշել այն, որ 1956 թվականին ձեռնարկություններում ուժեղացել են ռացիոնալիզատորական փորձի փոխանակման աշխատանքները։

Մի շարք ձեռնարկություններում՝ Լենինականի Տեքստիլ կոմբինատում, Լենինականի Գուլպա-տրիկոտաժի գործարանում, Մետաքսի, Նուրբ մահուդի կոմբինատներում, Ստալինի անվան Տրիկոտաժի, Միկոյանի անվան Մահուդի

գործարանում և այլ ձեռնարկություններում կազմված և միութենական Տեխնիկական ինֆորմացիայի բյուրոյին են ուղարկված 32 առավել արժեքավոր ռացիոնալիզատորական առաջարկություններ՝ տեխնիկական փորձի փոխանակման նյութերի ժողովածուներում հրապարակելու համար։

Ռեսպուբլիկայի թեթև արդյունաբերության ձեռնարկություններն իրենց հերթին տեխնիկական փորձի փոխանակման ժողովածուներից ընդօրինակել և արմատավորել են մինչև 50 ռացիոնալիզատորական առաջարկություն ու տեխնիկական կատարելագործում։

1956 թվականին հայերեն հրատարակվել և արդյունաբերության մեջ տարածվել են մի շարք բրոշյուրներ, որոնք լուսաբանում են Ստալինի անվան Տրիկոտաժի գործարանի փաթաթող բանվորուհի Ժ. Տերտերյանի, ձևող բանվորուհի Ա. Ռազաբովայի, կարող բանվորուհիներ Ռ. Կրիգրինյանի ու Վ. Փանոսյանի, Կիրովականի Տրիկոտաժի գործարանի կարող բանվորուհի Փաշինյանի, օվերլյոկ մեքենայի վրա աշխատող բանվորուհիներ Ռ. Մարգարյանի ու Ս. Հովսեփյանի և կարի ցեխի վարպետի օգնական, ռացիոնալիզատոր Քոչարյանի աշխատանքի առաջավոր փորձը։ Լույս է տեսել մի ինֆորմացիոն թերթիկ, որը լուսաբանում է Լենինականի մանարանի ժապավենագործ բանվորուհի ընկ. Զուբչենկոյի առաջավոր փորձը։

Արտադրության առաջավորների փորձը լուսաբանվել է նաև Լենինականի Տեքստիլ կոմբինատի հրատարակած պլակատներում ու թերթիկներում։

Այս կարճ թվարկումն ինքնին վկայում է, որ դեռևս անբավարար ուշադրություն է հատկացվում արտադրության առաջավորների ու նորարարների առաջավոր փորձի պրոպագանդային։ Մեր աշխատանքի այդ էական թերությունը պետք է անհապաղ վերացվի։

Ինչպես ձեռնարկությունների ղեկավարների, այնպես էլ թեթև արդյունաբերության վարչության ապարատի աշխատողների ամենակենսական խնդիրներից մեկն է՝ ավելի հմտորեն ու լրիվ օգտագործել նոր տեխնիկայի բոլոր հնարավորությունները, գյուտարարների ու արտադրության ռացիոնալիզատորների ստեղծագործական նախաձեռնությունը ռեսպուբլիկայի թեթև արդյունաբերության հետագա վերելքի և նրա աշխատանքի որակական ցուցանիշների բարձրացման համար։

Արդյունաբերության տեխնիկական պրոգրեսի գործում մեծ դեր ունեն կատարելու ձեռնարկությունների արտադրական-տեխնիկական խորհուրդները։

Մեծ Հոկտեմբերի պանծալի 40-ամյակի կապակցությամբ սովետական մարդկանց ստեղծագործական ակտիվությունը հարաճուն կերպով զարգանում է։ Պետք է հմտորեն գլխավորել մասսաների աշխատանքային աճող ակտիվությունը և է՛լ ավելի լայն ծավալել սոցիալիստական մրցությունը՝ ՍՄԿՊ XX համագումարի առաջադրած խնդիրները լուծելու համար։ Իրենց ջանքերն ուղղելով տեխնիկական պրոգրեսի հարաճուն զարգացման և արտադրության արմատական բարելավման նպատակին՝ թեթև արդյունաբերության աշխատողները արժանավայել կերպով կդիմավորեն համաժողովրդական տոնը՝ Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 40-րդ տարեդարձը։

---

# ԼԱՅՆ ԹԱՓ ՌԱՑԻՈՆԱԼԻԶԱՏՈՐՆԵՐԻ ԵՎ ԱՌԱՋԱՎՈՐՆԵՐԻ ՇԱՐԺՄԱՆԸ

Գ. ԵԳԱՆՈՎ

Նոր, խոշոր արդյունաբերական ձեռնարկությունների ծավալվող շինարարության և նոր վայրերում հզոր ինդուստրիալ հանգույցների ստեղծման հետ միասին տարեց-տարի աճում է մեր երկրի բանվորների ստեղծագործական միտքը։ Այդ միտքը ձգտում է առավելագույնի հասցնել աշխատանքի արտադրողականությունը գործող ձեռնարկություններում։ Դա մեր սոցիալիստական իրականության մեջ Վ. Ի. Լենինի այն իմաստուն խոսքերի փայլուն արտահայտությունն է, որ կոմունիզմը կամավոր, գիտակից, միավորված, առաջավոր տեխնիկա օգտագործող բանվորների աշխատանքի բարձրագույն արտադրողականությունն է, կապիտալիստականի համեմատությամբ։

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի հաղթանակի օրից ի վեր մեր երկրի աշխատավորության ջանքերն ուղղվեցին ոչ միայն նոր արդյունաբերական ձեռնարկությունների շինարարության, այլև աշխատանքի արտադրողականության բարձրացման նպատակին։ Եթե թերթենք մեր պարտիայի համագումարների ու պլենումների բանաձևերը, որոնք վերաբերում են արդյունաբերության զարգացմանը, ապա դժվար չի լինի տեսնել, որ այդ բանաձևերից յուրաքանչյուրում կարմիր թելի պես անցնում է արտադրության ռացիոնալիզատորների ու առաջավորների շարժումը խրախուսելու միտքը։

Այսպես, ՍՄԿՊ Կենտկոմի Հուլիսյան պլենումի բանաձևում նշվում է, որ պարտիական կազմակերպությունների ուշադրության կենտրոնում պետք է լինի աշխատանքի արտադրողականության բարձրացման, արդյունաբերության մեջ գիտության ու տեխնիկայի նորագույն նվաճումների արմատավորման, արտադրության նորարարների ու առաջավոր ձեռնարկությունների փորձի տարածման ուղղությամբ տարվող կազմակերպական աշխատանքը։ Եվ պատահական չէ, որ այդ որոշման մեջ տեխնիկական պրոգրեսի հարցերը սերտորեն կապվում են ռացիոնալիզատորների շարժումն ամեն կերպ խրախուսելու և արտադրության նորարարների ու առաջավոր ձեռնարկությունների փորձը լայնորեն տարածելու հարցի հետ։ Բազմաթիվ օրինակներով կարելի է ցույց տալ, թե ինչպես ռացիոնալիզատորների ստեղծագործական միտքը հաղթահարել ու վերափոխել է հնացած տեխնոլոգիական պրոցեսները, նպաստել է տեխնիկայի պրոգրեսին և աշխատանքի արտադրողականության բարձրացման գործին։ Այսպես, օրինակ, Երևանի Մեխանիկական գործարանի ձուլող Պետրոս Վարդանյանի ռացիոնալիզատորական առաջարկությունների արմատավորումը տնտեսական քիչ էֆեկտ չի տվել։ Պ. Վարդանյանի ամենաարժեքավոր առաջարկություններից պետք է համարել նրա այն առաջարկությունները, որոնք

վերաբերում են շատ դետալների կաղապարման փոխարինմանը կոկիլային ձուլումով։ Ճիշտ է, կոկիլային ձուլումը ներկայումս ամենևին էլ ձուլվածքային գործի վերջին խոսքը չէ, բայց նրա արմատավորման պրակտիկ նշանակությունը դեռ շատ մեծ է և ձուլման այդ մեթոդի արժեքն ըստ երևույթին դեռ երկար տարիներ կմնա։ Սակայն, դժբախտաբար, պետք է խոստովանել, որ մեր ռեսպուբլիկայի մեքենաշինական ձեռնարկությունների ձուլման ցեխերի մեծ մասում շատ դժվարությամբ է արմատավորվում ձուլման այդ մեթոդը։

Նոր մեքենաների շահագործման հանձնելը, ավելի պրոգրեսիվ տեխնոլոգիական պրոցեսների անցնելն է՛լ ավելի է մոբիլիզացնում ինչպես ինժեներատեխնիկական անձնակազմի, այնպես էլ բանվորների ստեղծագործական միտքը։ Այդ կապակցությամբ ցանկալի է նշել ռացիոնալիզատորների շարժմանը պլանաչափ աջակցություն ցույց տալու նպատակահարմարությունը։ Նորմուծությունների համար անհրաժեշտ բարեբար մթնոլորտ ստեղծելը նպաստում է ռացիոնալիզատորական առաջարկությունների աճմանը, բարձրացնում է նրանց պրակտիկ նշանակությունը։

Արտադրության շարքային աշխատողների ստեղծագործական ուժերի նկատմամբ արդյունաբերական ձեռնարկությունների ղեկավարների իսկական, մեծ հավատը բացառիկ արդյունքների է հասցնում։ Եվ այնտեղ, որտեղ ուշադրությամբ ունկնդրում են շարքային աշխատողների առաջարկությունները, անընդհատ բարձրանում է աշխատանքի արտադրողականությունը և մշտապես իջնում է թողարկվող արտադրանքի ինքնարժեքը։ Սոցիալիստական հասարակության-մեջ յուրաքանչյուր բանվորի հարցասեր միտքը անընդհատ փնտրում է արտադրության նորանոր չօգտագործված ռեզերվներ, իր ուշադրությունը սևեռում է առավել դժվարին տեղամասի վրա։ Հոգատար և զգայուն վերաբերմունքը ռացիոնալիզատորական առաջարկություններին և շարքային արտադրողների փորձին՝ ձեռնարկությունների ղեկավարների և սկզբնական պարտիական կազմակերպությունների ամենաառաջնահերթ պարտքն է։

Մեծ Լենինը մատնանշում էր, որ «օրինակի ուժը, որը չկարողացավ ցուցադրել իրեն կապիտալիստական հասարակության մեջ, վիթխարի նշանակություն կստանա հողի և գործարանների մասնավոր սեփականությունը վերացրած հասարակության մեջ ո՛չ միայն այն պատճառով, որ այստեղ, թերևս, հետևելու են լավ օրինակին, այլև այն պատճառով, որ արտադրության կազմակերպման լավագույն օրինակը զուգորդվելու է աշխատանքի անխուսափելի թեթևացման և սպառման գումարի մեծացման հետ նրանց համար, ովքեր կիրառել են այդ լավագույն կազմակերպումը» (Երկեր, հատ. 27, էջ 241)։

Այդ կապակցությամբ կարևոր նշանակություն է ստանում արտադրության առաջավորների և ռացիոնալիզատորների առաջարկություններով արտադրության մեջ արմատացած պրոգրեսիվ տեխնոլոգիական պրոցեսների փորձի լայն պրոպագանդայի ծավալումը։ Զանազան արտադրական նորմուծությունների տարածումը աշխատանքի, հումքի և նյութերի զգալի խնայողություն է տալիս։ Ուստի անհրաժեշտ է, որ արտադրության առաջավորների նվաճումները դառնան արդյունաբերության շատ ձեռնարկությունների սեփականությունը։

Հանրահայտ է, որ ռացիոնալիզատորական առաջարկությունների հաջող արմատավորումը և արտադրության առաջավորների խրախուսումը զգալի տնտեսական էֆեկտ է տալիս։ Կարելի է մեր երկրի արդյունաբերական ձեռնարկությունների ճնշող մեծամասնությունից անհամար օրինակներ բերել այն մա-



սին, թե շարքային բանվորներն իրենց ստեղծագործական գործունեությամբ ինչպես են նպաստում աշխատանքի արտադրողականության բարձրացմանը։ Այդպիսի շատ օրինակներ կարելի է բերել նաև մեր ռեսպուբլիկայից։ Եվ բնորոշ է, որ ռացիոնալիզատորների ու արտադրության առաջավորների շարժումը առանձնակի թափ է ստանում հենց այն ձեռնարկություններում, որտեղ դիրեկցիան և սկզբնական պարտիական կազմակերպությունը գործարար կերպով են նպաստում այդ շարժման զարգացմանը։

Այդ տեսակետից կարելի է բերել Երևանի Ավտոդողերի գործարանի օրինակը։ Այստեղ աշխատանքի առաջավոր մեթոդների տարածումը բարենպաստ վիճակի մեջ է։ Այդ գործում կարևոր դեր է խաղում այն, որ արտադրության առանձին առաջավորների ու բրիգադաների աշխատանքի մեթոդների բանավոր և գրավոր պրոպագանդան լավ է դրված։ Հենց այդ գործարանում է աճել արտադրության այնպիսի առաջավոր, որպիսին ավտոդողեր հավաքող Մանուկ Կարամանուկյանն է, որը շուրջ երեք տարի է, ինչ աշխատում է առանց խոտանի, իսկ նորման կատարում է 150 տոկոսով։ Նրա հավաքած բոլոր ավտոդողերն առաջին տեսակի են։ Նրա աշխատանքի առաջավոր մեթոդը ոչ միայն ուսումնասիրության առարկա է դարձել գործարանի ավտոդողեր հավաքողների մոտ, այլև հետաքրքրություն է առաջացրել Յարոսլավլի Ավտոդողերի գործարանի ավտոդողագործների մեջ, որի տեխնիկական բաժինը Մ. Կարամանուկյանի աշխատանքի մեթոդներին նվիրված հատուկ գրքույկ է հրատարակել։

Երևանի Ավտոդողերի գործարանում պարբերաբար թերթիկներ են լույս ընծայվում, որոնց մեջ հակիրճ կերպով տրվում է արտադրության այս կամ այն աշխատողի առաջավոր մեթոդի էությունը։ Այսպես, օրինակ, լույս է ընծայվել մի հակիրճ, բայց բովանդակալից թերթիկ, որը պատմում է հորիզոնական կտրիչ մեքենայի մեքենավար-բրիգադիր Վլադիմիր Պոբեդինսկու և նրա բրիգադայի աշխատանքի մեթոդների մասին։ Նրա աշխատանքն աչքի է ընկնում տեխնոլոգիական հրահանգների ճշտապահ կատարմամբ, տեքստիլի փոքր մնացորդներով, աշխատանքի բարձր արտադրողականությամբ։ Նա հանդիսացավ այն մրցության նախաձեռնողը, որ ծավալվել է հանուն արտադրողականության բարձրացման և մնացորդների նվազեցման։ Գործարանի տեխնիկական բաժնի կողմից լույս ընծայվող թերթիկները պատմում են ավտոդողերի հավաքող Ռայիսա Սիչևայի, խառատող Վարդան Գրիգորյանի, բրասլետող Ֆենյա Ներսիսյանի, գլանող Վարդան Համբարձումյանի, մեքենաների ավտոկամերային շպրիցների բրիգադիր Վազգեն Թադևոսյանի, վուլկանիզատոր Անաստասիա Գլազովայի առաջավոր փորձի, Աբգար Պողոսյանի բրիգադայի և ուրիշների աշխատանքի մասին։

Անհրաժեշտ է ուշադրություն դարձնել առաջավոր մեթոդների և արտադրության մեջ արմատավորված ռացիոնալիզատորական առաջարկությունների տարածման հարցի վրա։ Կարելի՞ է արդյոք խոսել առաջավոր ռեկորդսմենի աշխատանքի արդյունքների ինչ-որ հասարակական օգտակարության մասին, եթե նրա փորձն ուրիշները չեն վերցնում, եթե նրա կողքին բանվորները կատարում են միայն սահմանված արտադրական նորման։ Այստեղ, հետևապես, առաջին պլանն է քաշվում աշխատանքի առաջավոր մեթոդների, արտադրական նորմուծությունների, պրոգրեսիվ տեխնոլոգիական պրոցեսների տարածումը լավագույն ձևով կազմակերպելու հարցը։

Այդ ուղղությամբ զգալի բան է արված։ Այսպես, օրինակ, ՍՍՌՄ Գիտու-

թյունների Ակադեմիային կից գործում է Տեխնիկա-տնտեսական ինֆորմացիայի ինստիտուտը, որը կոչված է իրագործելու առաջավոր փորձի փոխանակությունը և պրոպագանդելու երկրի այս կամ այն ձեռնարկության մեջ ներդըրված տեխնոլոգիական պրոցեսների նորությունները։ Ինստիտուտի այդ աշխատանքը նպաստում է ո՛չ միայն մեծ խնայողության տեխնիկական պրոգրեսում։ Այդ ինստիտուտի ծառայություններից օգտվում են երկրի ավելի քան 10 հազար ձեռնարկություններ ու կազմակերպություններ։ Բայց, ցավոք սրտի, պետք է նշել, որ ինստիտուտը իր գործունեությունը սահմանափակում է միայն մեքենաշինության, ներգործարանային տրանսպորտի, էներգետիկայի և շինարարության բնագավառներով։ Ինստիտուտը, մի կողմից այս կամ այն չափով համապատասխան ձեռնարկություններին տեղեկացնում է տեխնոլոգիական պրոցեսներում տեղի ունեցած նորմուծությունների մասին, սակայն, մյուս կողմից չի կարողանում ընդգրկել մեր արդյունաբերության բոլոր ճյուղերը։

Խարկովի Մեխանիկական գործարանում արդեն մի քանի տարի է, ինչ չըրմուղ-կոյուղու տնտեսության համար որոշ դետալներ ձուլվում են կոկիլային եղանակով։ Ճիշտ նույնպիսի դետալներ Երևանի Մեխանիկական գործարանում ընդհուպ մինչև անցյալ տարվա գարնանը կաղապարում էին հողի մեջ։ Եթե գոյություն ունենար կանոնավոր ինֆորմացիա և ավելի սերտ կապեր պահպանվեին համասեռ ձեռնարկությունների միջև, ապա այդպիսի թերացում չէր լինի նոր տեխնոլոգիական պրոցեսների արմատավորման ժամկետներում։

Հարկ ենք համարում կանգ առնել նաև առաջավորների և ռացիոնալիզատորների մասին բրոշյուրների հրատարակության գործի վիճակի վրա։ Հայտնի է, որ մեր ռեսպուբլիկայում, ինչպես և ամբողջ երկրում նման բրոշյուրների հրատարակությունը տարեց տարի ավելանում է, որը քիչ օգուտ չի բերում։ Բայց որպես կանոն այդ բրոշյուրներում առաջավոր փորձի էությունը բացատրելու հետ միասին գրում են չափից ավելի շատ մանրամասնություններ, ընթերցողի ուշադրությունը շեղում են հիմնականից, բուն նյութից։ Ուստի լավ չի՞ լինի արդյոք, եթե բրոշյուրներ լույս ընծայվեն ավելի փոքր ծավալով, միայն առաջավոր փորձի էության շարադրմամբ։ Դա, մեր կարծիքով, կարագացնի բրոշյուրների լույս ընծայումը։ Ներկայումս հաճախակի են այնպիսի դեպքերը, երբ տեխնոլոգիական պրոցեսներում կատարված այս կամ այն նորմուծությունը նկարագրող բրոշյուրն այնպիսի ուշացումով է լույս ընծայվում, որ տվյալ նորմուծությունն արդեն նորություն չի լինում։ Այդ իմաստով միանգամայն արժանի է ընդօրինակման արտադրության առաջավորների մասին մեր կողմից վերը նկարագրված թերթիկների լույս ընծայումը, որ կատարվում է Երևանի Ավտոդողերի գործարանում։ Իհարկե, դա չպետք է բացառի նաև այնպիսի բրոշյուրների լույս ընծայումը, որոնք մանրամասնորեն պատմում են այս կամ այն առաջավոր բանվորի անցած աշխատանքային ուղու մասին, որը բազմամյա աշխատանքի հետևանքով ձեռք է բերել արտադրական հարուստ փորձ։ Այսպես, օրինակ, եթե պատմելու լինենք Երևանի Ձերժինսկու անվան հաստոցաշինական գործարանի գործիքային ցեխի ավագագույն բանվոր Ասլանյանի մասին, որը պարգևատրվել է «Պատվո նշան» շքանշանով, ապա այստեղ, իհարկե, անհնարին է ասել, թե որն է գլխավորը նրա աշխատանքում։ Նրա մոտ գլխավորը, թերևս, նրա աշխատանքի այն ամբողջ պրոցեսն է, որի ընթացքում նա կիրառում է շատ տասնամյակներ շարունակ կուտակված հարուստ փորձը։ Իսկ նրա այդ աշխատանքի արդյունքը՝ ժամանակի զգալի խնա-



յողությունն է և, դրա հետ միասին, գերազանց որակի ամենաբարդ արտադրանքի թողարկումը։ Նույն բանը կարելի է ասել նաև նույն գործարանի արտադրության ավագագույն առաջավոր Սեդրակ Մելքոնյանի և մյուսների մասին։ Այսպիսով, արտադրության առաջավորների մասին բրոշյուրներ լույս ընծայելիս պետք է խիստ հետևել, որ հանգամանորեն նկարագրվի առաջավոր մեթոդի բուն էությունը։

Ռացիոնալիզատորական շարժումը և աշխատանքի առաջավոր մեթոդներն ամենալայն կերպով տարածելու գործում բացառիկ մեծ նշանակություն ունի լավագույն կերպով կազմակերպված սոցիալիստական մրցությունը։ Այդ տեսակետից շատ հետաքրքրական է այն աշխատանքը, որ կատարվել է Երևանի Պոլիվինիլացետատ գործարանում։ Կատարելով սոցիալիստական մրցությունում ստանձնած պարտավորությունները, գործարանում լայնորեն տարածվեց Չիրչիկի գործարանի ապարատավարուհի Աննա Մասլովայի առաջավոր փորձը։ Պոլիվինիլացետատ գործարանի ապարատավարներ Լ. Բաբայանը, Ս. Սիմոնյանը, Ս. Ավետիսյանը և ուրիշ շատերը, կիրառելով Մասլովայի մեթոդը, հասան այն բանին, որ տեխնոլոգիական ցիկլերը կրճատեցին 5—10 ժամով, իսկ արտադրանքի թողարկումը բարձրացրին 3—4 տոկոսով։ Սոցիալիստական մրցությունը, կազմակերպական-տեխնիկական ձեռնարկումների իրականացումը և նոր տեխնիկայի արմատավորումը լավ կազմակերպելու շնորհիվ 1955 թվականի պլանը կատարվեց 115 տոկոսով։ Ռացիոնալիզատորական առաջարկությունների արմատավորման տնտեսական էֆեկտը կազմեց 7,2 միլիոն ռուբլի։

Գործարանի կոլեկտիվը մրցում է Թբիլիսիի Պլաստմասսաների գործարանի և Կուսկովոյի Քիմիական գործարանի հետ և պետք է ասել, որ դա շատ բարեբար է անդրադառնում ռացիոնալիզատորական շարժման զարգացման վրա։

Ինչպես վերը նշվեց, Պոլիվինիլացետատ գործարանի հիմնական տեխնոլոգիական ցեխերում արմատավորվել է Չիրչիկի գործարանի ապարատավարուհի Աննա Մասլովայի աշխատանքի առաջավոր մեթոդը։ Գործարանի բանվորները իրար հետ սոցիալիստական մրցության մեջ մտան՝ արտադրության մեջ այդ մեթոդն արմատավորելու համար։ Այդ մեթոդով կատարվող աշխատանքի արդյունքների ակնառու ցուցադրման նպատակով ամեն օր նշվում էին մրցող բոլոր ապարատավարների աշխատանքի հանրագումարները։ Գործարանում մրցում էին ընդամենը 150 մարդ։ Այդ մեթոդի արմատավորման հետևանքով վինիլացետատ (02) ցեխում սինթեզի կաբինների արտադրողականությունը բարձրացավ 10 տոկոսով։ Նույն այդ ցեխում ուսումնասիրվեցին վինիլացետատի կրկնազտման բաժանմունքի չորս ավագ ապարատավարների կողմից տեխնոլոգիական պրոցեսը տանելու մեթոդը։ Այդ մեթոդի արմատավորման հետևանքով ցիկլի տևականությունը կրճատվեց՝ 50 ժամից իջնելով մինչև 44 ժամի, իսկ վինիլացետատի թողարկումը 68 տոկոսից բարձրացավ մինչև 72 տոկոսի։ Քացախաթթվի ցեխում ուսումնասիրվեց ալդեհիդային ջրի ստացման վրա աշխատող երեք ապարատավարների փորձը։ Ուսումնասիրման հետևանքով հայտաբերվեց, որ ապարատավար Ռ. Հովսեփյանը տեխնոլոգիական պրոցեսը տանում է ռեգլամենտի որոշակի սահմաններում, որով նա ացետալդեհիդի արտադրությունն ավելացնում է 10—15 տոկոսով։ Նույն այդ ցեխում ուսումնասիրվեց ալդեհիդային ջրի կրկնազտման ապարատավար ընկ. Ս. Ավետիսյանի աշխատանքի առաջավոր մեթոդը։ Այդ մեթոդը թույլ տվեց հիմնա-

կան հումքի ծախսի գործակիցն իջեցնել 3—4 տոկոսով, որը գումարային արտահայտությամբ կազմում է 50—60 հազար ռուբլի։

Պոլիվինիլացետատ գործարանի պարտիական կազմակերպությունն ու դիրեկցիան մեծ ուշադրություն են դարձնում արտադրության առաջավորների փորձի կիրառմանն ու տարածմանը։ Օրինակ, դիրեկտորի հրամանով ժամանակ առ ժամանակ գործարանում կազմակերպվում են շաբաթական դպրոցներ արտադրության այս կամ այն աշխատողի առաջավոր մեթոդի հետ ծանոթանալու նպատակով։ Այդ դպրոցներում պարապմունքը տանում է հենց ինքը՝ առաջավորը, իսկ կոնսուլտանտ նշանակվում է որևէ ձեռնահաս ինժեներ։ Նման պարապմունքների հետևանքով ունկնդիրները, խառատ Օ. Արմանչյանի առաջավոր մեթոդի ուսումնասիրման հիման վրա բարելավելով իրենց աշխատանքը, 07 ցեխի արտադրանքի թողարկումն ավելացրել են 6,7 տոկոսով։

Արտադրության առաջավորների փորձի տարածմանն օգնություն ցույց տալու նպատակով պարտիական բյուրոն պարբերաբար քննարկում է տեխնիկական խորհրդի աշխատանքի հարցերը և գործարանային կոմիտեի հետ միասին արտադրության առաջավորների տեխնիկական կոնֆերենցիաներ է անցկացնում։ Դա նպաստում է փորձի փոխանակմանը։ Կատարված աշխատանքի հետևանքով գործարանը բարելավել է տեխնիկա-տնտեսական ցուցանիշները։ Բոլոր բանվորները կատարում են արտադրանքի նորմաները, իսկ բանվորների մոտ 30 տոկոսը արտադրության առաջավորներ են։ 02 ցեխում 73 բանվորներից 51-ը առաջավորներ են։ Արտադրության առաջավորների փորձի լայնորեն տարածման ուղղությամբ կատարվող այս միջոցառումները հասցրին այն բանին, որ գործարանը 1955 թվականին տվեց 2407 հազար ռուբլու, իսկ 1956 թ. առաջին եռամսյակում՝ 651 հազար ռուբլու արտապլանային խնայողություն։

Եվ, վերջապես, որպես դրական գործոն պետք է նշել գործարանի աշխատողների գործուղումների կազմակերպումը ՍՍՌՄ Քիմիական արդյունաբերության համանման գործարանները։ Այդ գործարաններից փոխ են առնվել աշխատանքի մի շարք այնպիսի առաջավոր մեթոդներ, որոնք քիչ տնտեսական օգուտ չեն բերում։

ՍՄԿՊ Կենտկոմի Հուլիսյան պլենումը նշեց, որ առաջավոր փորձի տարածման և ռացիոնալիզատորական առաջարկությունների արմատավորման գործում դրական մոմենտների հետ մեկտեղ դեռևս շատ ձևական բան կա։

Ակնհայտ է, որ առաջավոր փորձի զուտ ձևական տարածումից ոչ մի էական օգուտ չի ստացվի։ Հարկավոր է ամենուրեք գործը կազմակերպել այնպես, որ արտադրության առաջավորները կարողանան իրենց փորձը հաղորդել մյուս բանվորներին անմիջականորեն աշխատանքային տեղում։

Շարքային աշխատողը որքան ավելի խորանա իր արտադրության նրբությունների մեջ, հայտաբերի թերություններն ու վերացնի դրանք, այնքան ավելի քիչ դժվարություններ կլինեն դեպի երջանիկ ապագան տանող մեր ճանապարհին։

---



# ՀԱՅԱՍՏԱՆԻ ԳՅՈՒՂԱՑԻՈՒԹՅԱՆ ՊԱՅՔԱՐԸ ՍՈՎԵՏԱԿԱՆ ԻՇԽԱՆՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ

## (1918—1920 թ. թ.)

Վ. ՄԻՔԱՅԵԼՅԱՆ

Հոկտեմբերյան ռևոլյուցիան պատմության այն վիթխարի լոկոմոտիվն էր, որը աշխարհի մեկ վեցերորդ մասում տապալեց շահագործողների տիրապետությունը և իշխանությունը հանձնեց ամենառևոլյուցիոն դասակարգին՝ պրոլետարիատին։ Մեծ Հոկտեմբերը ազդարարեց մարդկային հասարակության պատմության նոր դարաշրջանի սկիզբը՝ կապիտալիզմի կործանման և կոմունիզմի հաղթանակի սկիզբը։

Հաղթելով կենտրոնում՝ ռևոլյուցիան միաժամանակ վճռական բեկում առաջացրեց ռուսական կայսրության ծայրամասերի ճնշված ու կեղեքված աշխատավոր մասսաների ազատագրական շարժման մեջ. շահագործողների դեմ ռուսական պրոլետարիատի հաղթանակը ռեալ պայմաններ ստեղծեց ծայրամասերի աշխատավորների ազատագրության համար։

Հոկտեմբերյան ռևոլյուցիայի բարերար ազդեցության ներքո մասսաների ռևոլյուցիոն պայքարը աննախընթաց վերելք ապրեց նաև Անդրկովկասում։ Երկրամասի աշխատավորներն իրենց բազմամարդ միտինգներում, ցույցերում և ժողովներում ողջունելով մեծ ռևոլյուցիայի հաղթանակը՝ պահանջում էին տեղերում իրականացնել նրա նվաճումները։ Բայց, հակառակ դրան, անդրկովկասյան հակառևոլյուցիոներները արևմտյան իմպերիալիստների թելադրանքով ու մասնակցությամբ համախմբեցին իրենց ուժերը՝ ընդդեմ Սովետական Ռուսաստանի և երկրամասի բանվորների ու գյուղացիների։ 1917 թվականի նոյեմբերին վրաց մենշևիկների, դաշնակների և մուսավաթականների ներկայացուցիչներից Թիֆլիսում ստեղծվեց հակասովետական բլոկի կառավարությունը՝ Անդրկովկասի Կոմիսարիատը, որը, ինչպես և հետագայում կազմակերպված Սեյմը, Անդրկովկասի ունևոր դասակարգերի դիկտատուրան էր։

Անդրկովկասն անջատելով Սովետական Ռուսաստանից՝ Կոմիսարիատն ու Սեյմը երկրամասի բանվորների և գյուղացիների շահերն ուղղակի վաճառեցին օտարերկրյա իմպերիալիստներին։ Ջնջած Սովետական Ռուսաստանի կառավարության վճռական բողոքներին, նրանք իրենց ավանտյուրիստական հակաժողովրդական արտաքին քաղաքականությամբ թուրք իմպերիալիստներին հնարավորություն տվին Անդրկովկասի «անկախության» առիթն օգտագործել առաջ շարժվելու և հայ խաղաղ բնակչությանը կոտորելու համար։

Անդրկովկասյան Սեյմը, որի դաշնակ, մուսավաթ ու մենշևիկ անդամները ավելի շատ զբաղված էին ազգայնական գզվռտոցով, 1918 թ. մայիսի

26-ին քայքայվեց։ «Անկախ և միասնական» Անդրկովկասն իր տեղը զիջեց նույնքան «անկախ» մարիոնետային երեք ռեսպուբլիկաներին. կազմակերպվեցին Հայաստանում՝ դաշնակցական, Վրաստանում՝ մենշևիկյան և Ադրբեջանում՝ մուսավաթական կառավարությունները։

Հայ «Ազգային խորհրդի» պատվիրակությունը Բաթումում 1918 թվականի հունիսի 4-ին Թուրքիայի հետ կնքեց սարկացուցիչ պայմանագիր, որով Հայաստանին մնաց ոչ ավել, քան 9 հազ. քառ. կմ. տարածություն՝ 330 հազար բնակչությամբ։

1918 թվականի հունիսի 17-ին դաշնակցական կառավարությունը թուրքական սպաների ուղեկցությամբ Թիֆլիսից ժամանեց Երևան։



Օտարերկրյա սվիններով հաստատված դաշնակների կառավարությունն իր գոյության տարիներին ամբողջությամբ պահպանեց ցարիզմի և ժամանակավոր կառավարության բուրժուա-կալվածատիրական օրենքներն ու որոշումները։ «Հայաստանի հանրապետության համար պարտադիր են բոլոր այն օրենքները, որոնք հրապարակված են Ռուսաստանի կառավարության, Անդրկովկասյան Կոմիսարիատի և Անդրկովկասյան Սեյմի կողմից»— ասված էր 1918 թ. դեկտեմբերին դաշնակցական խորհրդարանի ընդունած որոշումներից մեկում [1]։

Պաշտպանելով շահագործողների քսակը, դաշնակները ծայր աստիճան վատթարացրին քաղաքի ու գյուղի աշխատավոր մասսաների դրությունը։ Նրանց տիրապետության շրջանում անտանելի ծանր էր Հայաստանի գյուղացիության վիճակը. մի կողմից թուրքական զավթիչների ավերածությունները, մյուս կողմից դաշնակների բախտախնդիր քաղաքականությունը քայքայել էին Հայաստանի աշխատավորության ապրուստի հիմնական միջոցը՝ գյուղատնտեսությունը։

Շարունակելով ցարիզմի ագրարային քաղաքականությունը՝ դաշնակները լրիվ չափով պահպանեցին խոշոր հողատիրությունը։ Հսկայական հողային տարածություններ նրանց օրոք շարունակեցին մնալ մի բուռն կալվածատերերի ու կուլակների ձեռքում։ Լոռիում՝ Խանազովները, Արամյանցը, Արղությանը, Կոտայքում՝ Մելիք-Աղամալյանները, Աշտարակում՝ Եղիազարյանները, Ջալալովները, Խան-Մակինսկին, Ախտայում՝ Մատուրովները, Նոր Բայազետում՝ Աֆրիկյանները և ուրիշներ իրենց ձեռքումն էին պահում խոշոր չափերով վարելահողեր, արոտավայրեր, այգիներ։ Սրանց կողքին դաշնակցությունը ստեղծեց նոր, յուրատեսակ դաշնակցական հողատերեր, որոնք առաջացան գլխավորապես Հայաստանը ադրբեջանցի աշխատավորներից «մաքրելու» և նրանց հողերն ու ունեցվածքը հափշտակելու, ինչպես նաև նախկին պետական հողերի վրա ապրող հայ գյուղացիական համայնքների հողերը կրճատելու և բռնագրավելու հաշվին։ Դրանք դաշնակցական նախարարներն էին, պառլամենտի և բյուրոյի անդամները, խմբապետները, զինվորական և վարչական աստիճանավորները, նրանց բարեկամներն ու ազգականները։

Գյուղում իրենց դիրքերն ամրապնդելու համար դաշնակները գյուղացիներից խլում էին ռևոլյուցիոն ճանապարհով գրավված հողերը և դրանք վերադարձնում իրենց «օրինական» տերերին՝ կալվածատերերին ու կուլակներին։ 1919 թ. աշնանը դաշնակցական կառավարության կարգադրությամբ Լոռվա Վարդաբլուր և Կուրթան գյուղերի սակավահող գյուղացիներից վերցրին նրանց գրաված հողերը և վերադարձրին կալվածատեր Խանազովին։ Դաշնակները վերականգնեցին հողատերերի նույնիսկ ցարի օրոք կորցրած իրավունքները։ Այդպես վերականգնվեց, օրինակ, Իջևանի անտառապետի դեռևս 1912 թ. կորցրած սեփականատիրական իրավունքը «Դանաղռան» կոչվող հողամասի վրա, որի հետևանքով 200 ծխից բաղկացած գյուղական համայնքը հողազրկվեց։

1 «Զանգ», № 81, 1918 թ.։



Սովի ու համաճարակի դատապարտված գյուղացին իր ընտանիքը սովամահությունից փրկելու համար հաճախ ամենաչնչին գներով գյուղական հարուստներին էր վաճառում իր գույքն ու անասունը, անգամ նորածիլ արտերը։ Ահա բազմաթիվ փաստերից մի քանիսը։ 1919 թ. փետրվարի 2-ին Ճաթղռան գյուղից բողոքում էին, որ «ամբողջ գյուղը հեծում է մի բուռն կուլակների ձեռքի տակ», որ «հիվանդությունների հետ գյուղում ավերներ է գործում սովը, որից ազատվելու համար գյուղացին շատ չնչին գներով ծախում է տունը, կահկարասին, ապրանքը, հողերը և նույնիսկ նորածիլ արտերը։ Ինչ խոսք, որ անխիղճ կուլակները օգտվում են և ծծում ժողովրդի ամբողջ հարստությունը» [1]։ Նույն թվականի հունիսին Մոլլա-Բայազետ գյուղից հայտնում էին, թե գյուղում եղած 60 խալվար ցորենի ցանքերից 45 խալվարի երեսը ծախված է, որը գնել են տեղացի կուլակները։ Իսկ Սարդարաբադից բողոքում էին, որ ընդամենը 150 խալվար ցորենի ցանքերից 100-ը ծախված է կուլակներին [2]։

Խոշոր հողատիրությունն ամրապնդելուն և լավագույն հողերը գյուղական հարուստների ձեռքում կենտրոնացնելուն զգալիորեն նպաստեց 1920 թ. մի քանի շրջաններում դաշնակների անցկացրած այսպես կոչված՝ «հողաբաժանությունը»։ Դրանով կառավարությունը նպատակադրել էր մի գնդակով երկու նապաստակ խփել. մի կողմից նա փորձում էր խաբել աշխատավոր գյուղացիներին և խափանել հողը ռևոլյուցիոն ճանապարհով գրավելու նրանց ձգտումը, մյուս կողմից՝ «հողաբաժանության» անվան տակ հնարավորություն տալ գյուղական հարուստներին և կուլակներին իրենց ձեռքը կենտրոնացնելու լավագույն հողերն ու այգիները։ «Հողաբաժանության» խնդիրներից մեկն էլ խոշոր մասնատիրական հողերի պահպանումն էր. դրա համար էլ կալվածատիրական և եկեղեցապատկան հողերը բաժանման ենթակա չէին. բաժանվելու էին միայն համայնական հողերը։

Անցկացվող «հողաբաժանությունը» ավելի վատթարացրեց գյուղի չքավորության դրությունը և ընդարձակեց գյուղական տզրուկների հողերը։ Հողաբաժան վեքիլները, որոնք որպես կանոն նշանակվում էին գյուղի հարուստներից, բացահայտորեն կտրում էին աղքատների լավագույն հողերը և դրանք վերցնում իրենց կամ տալիս իրենց բարեկամներին։ 1920 թ. մայիսին Ապարանի շրջանի Ղազնաֆար գյուղից հայտնում էին, որ «հողաբաժնությունից» հետո վարելահողերը կրկին մնացել են ամբողջ գյուղի կուլակներին, իսկ գյուղի մի մասը զրկվել է, կամ չնչին հողամասեր է ստացել, այն էլ հա-

1 «Զանգ», № 21, 1919 թ.։
2 «Արարատյան աշխատավոր», № 9, 1919 թ.։

րուստների թողած վատ հողերից [1]։ Աշտարակի շրջանի Կարբի գյուղից բողոքում էին, թե գյուղական հարուստներն ու պաշտոնյաները յուրացրել են ամենաբերրի հողերը, իսկ աշխատավորները զրկվել են պետական հողերից [2]։

Բոլոր փաստերը ակնառու վկայում են այն եզրակացության խսկությունը, որ այսպես կոչված՝ «հողաբաժնությունը» եղել է դաշնակների հակագյուղացիական ագրարային քաղաքականության բաղկացուցիչ մասը և նպատակ է ունեցել գյուղում ավելի ամրապնդել կալվածատերերի և կուլակների դիրքերը։

Միանգամայն կեղծիք և լկտի խաբեություն պետք է համարել դաշնակ լիդերների ու նախարարների «հողերի հավասարեցման», կալվածատիրական ու եկեղեցապատկան հողերի «բռնագրավման», «հողային հարցի շուտափույթ լուծման» մասին տված բոլոր խոստումները։

1919 թ. կեսերին հողային հարցը «լուծելու» համար դաշնակցական կառավարությունը կազմակերպեց այսպես կոչված՝ հողային կոմիտեներ։ Բացարձակապես դաշնակ պաշտոնյաներից ու գյուղական հարուստներից կազմված այդ կոմիտեները իրականում ոչինչ չարին, բացի զանազան չարաշահություններից։ Ահա այդ կոմիտեների գործունեության մասին դաշնակցական կառավարության պարագլուխ Հ. Օհանջանյանը պառլամենտի 1920 թ. հունիսի 4-ի նիստում իր արած հայտարարությամբ խոստովանում էր հետևյալը. «Ընդհանուր դժգոհության (այսինքն Մայիսյան ապստամբության— Վ. Մ.) պատճառներից մեկը կարելի է համարել նաև հողազրկությունը։ Թեպետ մենք ունենք հողային կոմիտեներ, բայց նրանց գործունեությունը որևէ արդյունք չի տվել» [3]։

Եվ հենց նույն օրը դաշնակցական կառավարությունը օրենք է ընդունում «Հողային հատուկ մարմինների մասին», որոնք կոչված էին փոխարինելու նախկին հողային կոմիտեներին։ Այս օրենքը ևս մնաց իբրև դատարկ թղթի կտոր, իսկ իր բուրժուա-կալվածատիրական դեմքը թաքցնելու համար դաշնակցական կառավարությունը շտապեց հայտարարել, թե քանի Հայաստանի սահմանները վերջնականապես չեն որոշված, հողային հարցը անհնարին է լուծել [4]։

Տեղին է այստեղ նշել նաև հողը դաշնակցական լիդերների ու պաշտոնյաների ձեռքում կենտրոնացնելու մի այլ եղանակ. դա դաշնակների կողմից հողային կեղծ ընկերությունների կազմակերպումն էր, ընկերություններ, որոնք, իբրև կանոն, կազմված էին պառլամենտի անդամներից ու բարձրաստիճան պաշտոնյաներից։ Նստած Երևանում՝ այդ ընկերությունների անդամները տիրացել էին խոշոր ցանքատարածությունների ու այգիների և ձրիաբար շահագործում էին գյուղացիներին։ Դրանցից էին «Մուրճ»-ը, «Մաճկալ»-ը, «Կուլտուրական կալոնիան», «Տնտեսությունը» և այլն։ Միայն վերջինը իր դաշնակցական ութ անդամներով 1920 թ. գարնանը յուրացրել էր ադրբեջանական Արաբկըլու գյուղի 640 դեսյատին հողատարածությունը։

Բայց դաշնակների տիրապետության օրոք հայ գյուղն ավելի ուժեղ չափով ավերվում ու քայքայվում էր բռնագրավումների, ալան-թալանի և կողո-

[1] ՀՍՍՌ ԿՊԱ, ֆ. 214, գ. 5 բ, թ. 15—16։
[2] Նույն տեղը, թ. 539։
[3] «Ժողովուրդ», № 92, 1920 թ.։
[4] «Առաջին մասսայական ռևոլյուցիոն շարժումները Հայաստանում (Նյութեր և փաստաթղթեր)», էջ 108, 1932 թ., Երևան։



պուտի հետևանքով։ Գյուղացիությանը կողոպտում էին բոլորը՝ դաշնակ պաշտոնյաներն ու օտարերկրյա ինտերվենտները, խմբապետներն ու ավազակները։ Դաշնակների տիրապետության օրոք իսպառ բացակայում էր անձի ու գույքի անձեռնմխելիությունը, ամենուրեք չարիք էին դարձել ավազակային բանդաները։ 1918 թ. նոյեմբերին Եղվարդից բողոքում էին, որ հացահատիկի ստիպողական գրավման համար իրենց գյուղն է ժամանել գնդացիրներով զինված մի զորախումբ, որը լիազոր Կարապետ Այվազյանի գլխավորությամբ ապօրինի խուզարկում է գյուղացիների տները, գրավում նրանց ունեցվածքը։ Իսկ Ճաթղռան գյուղից գրում էին, որ պարենավորման լիազորի կարգադրությամբ պատժիչ խմբի միջոցով գյուղացիներից խլվել է մոտ 60 խալվար ցորեն, և 200 ծխից բաղկացած գյուղը մատնվել է սովի։

Թուրք ջարդարարների թալանի և ավերածությունների, դաշնակների հակաժողովրդական քաղաքականության հետևանքով քայքայվեց Հայաստանի գյուղատնտեսությունը՝ իր բոլոր ճյուղերով հանդերձ։ Բավական է նշել, որ 1913 թ. համեմատությամբ, 1919 թ. $^{3}/_{4}$-ով կրճատվեցին բոլոր կուլտուրաների ընդհանուր ցանքատարածությունները, 44,6 տոկոսով ոչնչացվեցին այգիները, 68,4 տոկոսով պակասեց բոլոր տեսակի անասունների գլխաքանակը։

Երկրի տնտեսական կյանքի, մասնավորապես գյուղատնտեսության քայքայմանը զուգընթաց օրավուր աննկարագրելի չափերով պակասում էին պարենային ու արդյունաբերական լայն սպառման ապրանքները, բարձրանում էին նրանց գները։ 1920 թ. աշնանը գարու փութը արժեր 15 հազար ռուբլի, ցորենինը՝ 25 հազար, քարաղինը՝ 120 հազար, ոչխարի մսի ֆունտը՝ 1 200 ռուբլի, յուղինը՝ 7000, օճառինը՝ 1200 և այլն։

Մթերքների և բժշկա-սանիտարական ամենատարրական օգնության բացակայության հետևանքով ամբողջ Հայաստանով մեկ բռնկվեցին սովն ու համաճարակը, որոնց զոհերը դարձան տասնյակ հազարավոր աշխատավորներ։ Հայ ժողովուրդը կոտորվում էր բառի ամենալայն իմաստով։ Համատարած սովը շատ շրջաններում հնձել էր բնակչության մեծամասնությունը։ «Շրջանի բնակչության 65 տոկոսը մեռել է,— գրում էին 1919 թ. փետրվարի 19-ին Սարդարաբադից,—իսկ մնացած չնչին տոկոսը դժվար թե մի քանի օրվա կյանք ունենա, կմախք են դարձած բառիս բուն իմաստով...» [1]։ Քայքայման և սովամահության ենթարկվեցին Թալինի շրջանի բոլոր 8 գյուղերը։ 1919 թ. սկզբներին այդ գյուղերում եղած 11 հազար 247 բնակչից 1919 թ. կեսերին մնացել էր ընդամենը 5307 մարդ։

Ծանր էր թուրքական յաթաղանից մազապուրծ եղած արևմտահայ գաղթականների դրությունը։ Սովի ու մերկության ճիրաններում տանջվող արևմտահայ գաղթականներին դաշնակների կառավարությունը չտվեց ո՛չ հաց և ո՛չ էլ օթևան։ Նրանք հանձնվել էին բախտի քմահաճույքին։

Այսպիսով, Հայաստանը անջատելով Սովետական Ռուսաստանից և գործիք դառնալով արևմտյան իմպերիալիզմի ձեռքում, դաշնակները երկիրը կատարյալ քայքայման ենթարկեցին՝ հայ ժողովրդին կանգնեցնելով ֆիզիկական ոչնչացման վտանգի առջև։

***

Արևմտյան իմպերիալիզմին վաճառված դաշնակների հակաժողովրդական կառավարությունն առաջ էր բերել Հայաստանի աշխատավորության համընդ-

[1] ՀՍՍՌ ԿՊԱ, ֆ. 205, գ. 338, թ. 264։

հանուր դժգոհությունն ու ատելությունը։ «Մեր հասարակությունը կառավարության նկատմամբ թշնամական այնպիսի դիրք է բռնել, որ դժվարանում ենք որակել,— խոստովանում էր դաշնակների շչափող «Հառաջը»,— ամեն մի հայ կարծեք իր քաղաքական պարտքն է համարում ամեն կերպ խոչընդոտ հանդիսանալ մեր կառավարության»[1]։

Հայաստանի բանվորներն ու գյուղացիները վճռական պայքար հայտարարեցին դաշնակների իշխանությանը։ Բանվորական գործադուլներն ու ցույցերը, գյուղացիական ելույթները, զինվորական խռովություններն ու բանակից մասսայական դասալքումները ընդհանուր երևույթներ էին 1918—1919 թթ. Հայաստանի համար։

Մասսաների պայքարը կազմակերպում և ղեկավարում էին կոմունիստական կազմակերպությունները, որոնք այդ ժամանակ գործում էին Հայաստանի շատ շրջաններում։ Անհրաժեշտ է, սակայն, նշել, որ մինչև 1919 թվականի կեսերը այդ կազմակերպությունները գործում էին անջատ-անջատ, չկար պարտիական միասնական կենտրոն, որը համախմբեր նրանց աշխատանքները, ուժեղացներ կապը նրանց միջև։ 1919 թվականի կեսերին, մասսաների վերելք ապրող ռևոլյուցիոն պայքարը պարտիական միասնական կենտրոն ստեղծելու հարցը դարձնում է ավելի հրատապ։ ՌԿ(բ)Պ Կովկասյան Երկրային Կոմիտեն այդ նպատակով Հայաստան է ուղարկում իր անդամ Ասքանազ Մռավյանին, որը գալով Հայաստան, մեկ ամիս շրջում է զանազան գավառներ և կապ հաստատում տեղական կազմակերպությունների ու բջիջների միջև։ Դրան անմիջապես հաջորդում է Երևանում կայացած սեպտեմբերյան խորհրդակցությունը, որն ընտրում է Հայաստանի կոմունիստական կազմակերպությունների ղեկավար կենտրոն՝ Արմենկոմ։

Ռևոլյուցիոն պայքարի առաջին շարքերում ընթանում էին բանվորները։ Գործադուլներին մասնավորապես ակտիվորեն մասնակցում էին Երևանի, Ալեքսանդրոպոլի, Կարսի և Ալավերդու բանվորները։ Պայքարն առավել կազմակերպված բնույթ էր կրում երկաթուղայինների մոտ։

Հայաստանում սովետական իշխանության համար մղած պայքարի պատմության մեջ աչքի ընկնող տեղ են գրավում գյուղացիական ելույթները։ Աշխատավոր գյուղացիության պայքարը ծավալվում էր ոչ միայն լայնությամբ՝ ընդգրկելով նորանոր շրջաններ, այլև խորությամբ՝ առաջ քաշելով սովետական կարգերի հաստատման, հողը գյուղացիներին հանձնելու և ռևոլյուցիոն այլ պահանջներ։

1919—1920 թվականներին ագրարային գյուղացիական ելույթներն ընդգրկել էին Հայաստանի շատ շրջաններ։ Գյուղացիության պայքարը արտահայտվում էր դաշնակցական իշխանություններին դիմադրելու, հարկերը վճարելուց և դաշնակցական բանակում ծառայելուց մասսայաբար հրաժարվելու, կալվածատերերի հողերը բռնագրավելու, դասալիքներին թաքցնելու և զանազան այլ ձևերով։ Այդ են վկայում արխիվային հարուստ նյութերը։

1918—1919 թթ. կալվածատեր Ծատուրովների դեմ պայքարի են բարձրանում Ախտայի շրջանի Արզաքյանդ գյուղի բնակիչները։ Ծատուրովները՝ նստած Բաքվում, իրենց ձեռքումն էին պահում 4896 դեսյատին տարածությամբ կալվածք։ Դեռևս 1917 թ. գյուղացիները մի քանի անգամ բռնագրավում են

[1] «Հառաջ», № 27, 1919 թ.։



Ծատուրովների կալվածքը, սակայն Անդրկովկասյան Կոմիսարիատը զինված ուժերով ճնշում է գյուղացիների ելույթը և պաշտպանում կալվածատիրոջ իրավունքները։

Գյուղացիները մասսայաբար հրաժարվում էին վճարել հարկերը, կատարել պարհակները։ 1918 թ. աշնանը Նոր Բայազետի և Բասարգեչարի շատ գյուղեր հրաժարվում են հացահատիկ տալ դաշնակցական հարկահավաքներին։ Ըմբոստ գյուղացիները միաբերան հայտարարում են, որ իրենք չեն «հպատակվում այդ կառավարությանը» ու չեն կատարի նրա պահանջներից և ոչ մեկը։ Հայկական գյուղերի օրինակով Բասարգեչարի ադրբեջանական գյուղերը նույնպես հրաժարվում են հարկեր տալ։ Դաշնակները անհնազանդ գյուղերն են ուղարկում գեներալ Բաղդասարովի պատժիչ ջոկատը, որը հրով ու սրով «հնազանդեցնում» է գյուղերը և թալանում նրանց բնակիչներին։

Նույն թվականի հոկտեմբերին դաշնակների դեմ ելույթ են ունենում Դարալագյազի մի շարք գյուղերի բնակիչները։ Նրանք հրաժարվում են պարհակի դուրս գալ, հարկերը վճարել և դաշնակցական բանակում ծառայել։

Գյուղացիական ելույթները ավելի լայն ծավալ են ընդունում 1919 թվականին։ 1919 թ. գարնանը Դիլիջանի շրջանի Պողոսքիլիսա գյուղի բնակիչները, հակառակ դաշնակների սպառնալիքներին, վարում ու ցանում են կալվածատեր Ճալճալաձեի ավելի քան 232 դեսյատին վարելահողերը։ Դաշնակցական կառավարությունը կարգադրում է գյուղացիներից ետ վերցնել հողերը, իսկ «մեղավորներին պատժել»։ Բայց դա չի հաջողվում։ Հաջորդ գարնանը գյուղացիները գրավում են վանքապատկան հողերը, վճռական դիմադրություն են ցույց տալիս դաշնակցական իշխանություններին՝ գրավված հողերը պահելով իրենց ձեռքում։

1919 թվականի աշնանը Էջմիածնի շրջանի Քյուրաքյան գյուղի չքավորները գրավում են կուլակ կապալառուների հողերը և բաժանում իրենց միջև։ Դաշնակցական կառավարությունը կարգադրում է հողերը վերադարձնել տերերին, իսկ «բռնագրավումներին վերջ տալու համար... մեղավորներին կանչել օրինական պատասխանատվության»[1]։

1919 թ. գարնանն ու ամռանը դաշնակների դեմ զինված պայքարի են բարձրանում Նոր Բայազետի գավառի հայկական և ադրբեջանական գյուղերը։ «Ժողովրդի մեջ դժգոհությունն անսահման է և օրեցօր աճում է ատելությունը կառավարության ներկայացուցիչների հանդեպ»[2]։ Մի շարք գյուղերի աշխատավորներ գյուղերից դուրս են վռնդում դաշնակ չինովնիկներին, հրաժարվում են տուրքերը վճարել և զենքը ձեռքներին արգելում են դաշնակցական իշխանության ներկայացուցիչների մուտքը իրենց գյուղերը, հայտարարելով, որ չեն ճանաչում դաշնակցական կառավարությունը։ Այդ գյուղերը մի քանի ամիս փաստորեն ինքնուրույն կյանք են վարում։

1919 թ. աշնանը դաշնակները սահմանում են այսպես կոչված բամբակի մոնոպոլիա, փորձելով գյուղացիներից վերցնել բամբակի եղած պաշարները։ Սարդարաբադի գավառամասի գյուղերը, ի պատասխան դրան, բամբակը թաքցնում և հրաժարվում են հանձնել դաշնակներին։ Կանգնելով ձախողման առաջ, հաջորդ տարվա գարնանը դաշնակները ստիպված վերացնում են բամբակի մոնոպոլիան։

[1] ՀՍՍՌ ԿՊԱ, ֆ. 203, գ. 313, թ. 74։
[2] Տես նույն տեղում, ֆ. 201, գ. 1587, թ. 53։

Գյուղացիական ելույթները զգալիորեն ծավալվել էին նաև Ալեքսանդրապոլի գավառում, Լոռու չեզոք գոտում, ինչպես նաև Զանգեզուրի գյուղերում: 1919 թ. գյուղացիական ելույթները մասնավորապես սուր բնույթ են ընդունում Ծամշադինի շրջանում: Ապրիլ ամսին շրջանի Մոլլաս, Դրղի, Վերին Կարմիրաղբյուր, Նորաշեն և այլ գյուղերի աշխատավորները հեռացնում են դաշնակ պաշտոնյաներին և ընտրում իշխանության իրենց օրգանը՝ գյուղացիական ռևոլյուցիոն կոմիտեները: Գավառամասի մասշտաբով ընտրվում է գավառամասային ռևոլյուցիոն կոմիտե: Ծամշադինի գյուղացիական ապստամբությունը տևում է ավելի քան երեք ամիս. միայն հունիսի վերջին Բաղդասարովի հրոսակներին հաջողվում է գրավել ու թալանել գյուղերը, պատժել նրանց բնակիչներին:

Դաշնակների դեմ վճռական պայքարի էր բարձրացել զինվորի շինել հագած հայ գյուղացին, որը օրավուր ավելի էր գիտակցում դաշնակների քաղաքականության կործանարար լինելը և լքում էր դաշնակցական բանակի շարքերը: Զինվորները բազմաթիվ դեպքերում հրաժարվում էին կատարել հրամանատարների կարգադրություններն ու հրամանները: Նրանք դասալքում էին դաշնակցական բանակը, որը գնալով քայքայվում էր: Ոչ սպառնալիքները և ոչ էլ 1919 թ. հունիսի 5-ին դասալիքներին ու նրանց թաքցնողներին մահապատժի ենթարկելու մասին դաշնակների կողմից ընդունված օրենքը չկարողացան կանգնեցնել դասալքությունը: Բավական է նշել, որ հենց իրենց՝ դաշնակների պաշտոնական, բոլորովին ոչ լրիվ տվյալներով, 1919 թվականին, մոտավորապես 10—11 ամիսների ընթացքում Հայաստանի 9 գավառներում դասալիքների ընդհանուր թիվը հասնում էր 17.576 մարդու:



Զնայած գյուղացիական ելույթների մասսայական բնույթին, ինչպես 1918—1919 թթ., այնպես էլ 1920 թ. Հայաստանում աշխատավոր գյուղացիության պայքարը իր վրա դեռևս կրում էր անկազմակերպվածության կնիքը: Տակավին թույլ էր կապը տարբեր շրջաններում ու գյուղերում տեղի ունեցող անջատ-անջատ ելույթների միջև:

Գյուղացիական ելույթների մասնատվածությունն ու անկազմակերպվածությունը ունեին մի շարք օբյեկտիվ պատճառներ: Նախ պետք է նշել, որ գյուղացիությունը հասարակական-տնտեսական կյանքի մի շարք ուրույն պայմանների բերումով ավելի դժվար է ենթարկվում կազմակերպվածության: Դա առավելապես զգալի էր մի այնպիսի հետամնաց երկրում, ինչպիսին Հայաստանն էր: Մյուս կողմից, գյուղացիական, ինչպես և բանվորական ելույթներին խիստ խոչընդոտ էին հանդիսանում այն ծայրահեղ ծանր պայմանները, որ ստեղծել էին Հայաստանում դաշնակները և նրանց օտարերկրյա տերերը: Դաշնակցական դեսպոտիզմը, որ խեղդում էր ռևոլյուցիոն ամեն մի միտք, արգելակում էր ռևոլյուցիոն աշխատանքների ծավալմանը, աշխատանքներ, որոնք անշուշտ մեծ չափով կնպաստեին բանվորա-գյուղացիական շարժումների կազմակերպվածությանը:

Գյուղացիական ելույթների անկազմակերպվածությունը հետևանք էր նաև Հայաստանում կոմունիստական կազմակերպությունների միասնական կենտրոնի բացակայության, ինչպես նաև կազմակերպական անջատվածության,



որը խանգարում էր տարբեր շրջաններում գործող կոմունիստական կազմակերպություններին՝ միասնական կապ ստեղծել զանազան վայրերում տեղի ունեցող ելույթների միջև:

1920 թ. սկզբներից կոմունիստական կազմակերպությունների աշխատանքները գյուղում զգալիորեն աշխուժացան: Դրան մասնավորապես նպաստեց Հայաստանի կոմունիստական կազմակերպությունների առաջին կոնֆերանսը, որը տեղի ունեցավ 1920 թ. հունվարին Երևանում:

Կոնֆերանսը, որին մասնակցում էին Երևանի, Կարսի, Սարիղամիշի, Դիլիջանի, Լոռու և այլ շրջանների ներկայացուցիչները, որոշեց ակտիվորեն նախապատրաստվել զինված ապստամբության, որ պետք է սկսվեր Կարմիր Բանակի՝ Հայաստանի սահմաններին մոտենալիս:

Կոնֆերանսից հետո գյուղացիության շրջանում եռանդուն աշխատանք ծավալեցին մասնավորապես Ալեքսանդրապոլի, Ղազախ-Ծամշադինի, Նոր Բայազետի, Լոռվա կոմունիստական կազմակերպությունները:

Մասսաների համընդհանուր դժգոհությունը 1920 թվականի մայիսմեկյան տոնակատարությունից հետո, որը ռևոլյուցիոն ուժերի մի իսկական ստուգատես էր, վերածվեց զինված ապստամբության՝ ընդդեմ դաշնակների իշխանության, հանուն սովետական կարգերի հաղթանակի:

Հայաստանի գյուղացիությունը այդ ապստամբության ակտիվ մասնակիցն էր:

1920 թ. մայիսի 10-ին Ալեքսանդրապոլի հետ միաժամանակ, ուր գտնվում էր Հայաստանի Ռազմա-ռևոլյուցիոն Կոմիտեն, ապստամբությունը ծավալվեց նաև գավառի երկրորդ գավառամասի (այժմ Արթիկի շրջանի) գյուղերում: Մայիսմեկյան տոնակատարությունից հետո, որն անցավ բոլշևիկյան լոզունգների ներքո, գավառամասի կոմունիստները սերտ կապ հաստատեցին Ալեքսանդրապոլի հետ և պատրաստվեցին զինված ելույթի: Մի շարք գյուղերում ստեղծվեցին զինված ջոկատներ, բաժանվեց զենք, որ ստացվել էր Ալեքսանդրապոլից: Մայիսի 7-ին Քավթառլու գյուղում (այժմ Փանիկ) տեղի ունեցավ կոմունիստական բջիջների խորհրդակցություն, որն ընտրեց շրջանի Ռազմա-ռևոլյուցիոն կոմիտե՝ բոլշևիկ Ս. Փանյանի ղեկավարությամբ: Մայիսի 9-ին Ալեքսանդրապոլից ստանալով ապստամբելու ազդանշան, Ռևկոմը գյուղացիական զինված ջոկատների գլուխն անցած՝ ձերբակալեց Նորաշեն գյուղում գտնվող դաշնակցական կոմիսարին ու պրիստավին, զինաթափեց դաշնակցական միլիցիան և գրավեց զինամթերքի ու հացի պահեստները: Մայիսի 10-ին գավառամասի գյուղերում ապստամբությունը հաղթանակեց: Ռևկոմը ձեռնամուխ եղավ զինված նոր ջոկատների կազմակերպմանը:

Ապստամբությանը ակտիվ մասնակցություն ցուցաբերեցին Նոր Բայազետի և Ղարանլուղի շրջանների գյուղերը: Ապստամբությունը ղեկավարելու համար Արմենկոմը մայիսի 8-ին Նոր Բայազետ է ուղարկում աննկուն բոլշևիկ Հ. Սարուխանյանին, որը մեծ եռանդով ձեռնամուխ է լինում ապստամբության նախապատրաստմանը: Մայիսի 13-ին Ներքին Ղարանլուղում (այժմ Մարտունի) սկսվում է ապստամբությունը: Ապստամբ գյուղացիներին են միանում Բասարգեչարում գտնվող զինվորները, որոնք հրաժարվում են դաշնակցական սպաների հրամանները կատարել: Ղարանլուղում կազմակերպվում է Նոր Բայազետի Ռազմա-ռևոլյուցիոն կոմիտե՝ Հ. Սարուխանյանի գլխավորությամբ: Մայիսի 15-ին ապստամբները շարժվում են դեպի Նոր Բայազետ:

ճանապարհին նրանց միանում են շրջակա գյուղերի աշխատավորները։ Երկու օր հետո ապստամբներն ազատագրում են Նոր Բայազետը և ամբողջ շրջանում հռչակում սովետական իշխանություն։

Մայիսի 19-ին ապստամբում են Քարվանսարայի գյուղացիները։

Մայիսի երկրորդ կեսին դաշնակների դեմ պայքարի են բարձրանում Զանգեզուրի գյուղացիները։ Մայիսի 15-ից 20-ը ապստամբում են Սիսիանի շրջանի Բռնակոթ, Ղարաքիլիսա, Ախլաթյան և մյուս գյուղերը։ Մի քանի օր հետո Բռնակոթում տեղի է ունենում շրջակա գյուղերի ներկայացուցիչների ժողով, որն ընտրում է շրջանային ռևոլյուցիոն խորհուրդ։ Գյուղերում զինված ջոկատներ կազմակերպելու և նրանց միջև կապ հաստատելու համար յուրաքանչյուր գյուղում նշանակվում է զինվորական վարիչ-առաջնորդ։

Մայիսի 27-ին Զանգեզուրի կոմունիստական կազմակերպությունների ղեկավարությամբ ապստամբում են երկրորդ գավառամասի գյուղերը։ Գավառային կոմիտեն դիմում է շրջանի գյուղերի կոմբջիջներին, պահանջելով դիմադրել Ղարաբաղից նահանջող Դրոյի և Նժդեհի խմբապետական ուժերին։

Այսպիսով, 1920 թ. մայիսին հանուն սովետական կարգերի հաստատման կոմունիստական կազմակերպությունների ղեկավարությամբ բանվորների հետ միասին դաշնակների դեմ ապստամբության դրոշ են պարզում Հայաստանի աշխատավոր գյուղացիները։

Դաշնակները համախմբելով իրենց սև ուժերը և օգտվելով ապստամբների թույլ տված սխալներից, արյան մեջ խեղդեցին Հայաստանի բանվորների ու գյուղացիների հերոսական ապստամբությունը և վայրագ դատաստան տեսան նրա մասնակիցների ու ղեկավարների նկատմամբ։ Դաշնակցական ապանդի զոհ դարձան հայ ժողովրդի փառապանծ զավակներ, ապստամբության ղեկավարներ Ս. Ալավերդյանը, Ս. Մուսայելյանը, Ղ. Ղուկասյանը, Բ. Ղարիբջանյանը, Հ. Սարուխանյանը, Ա. Փանյանը, Ե. Մկրտումյանը, Ե. Սևյանը, Բ. Հարությունյանը և ուրիշներ։ Հարյուրավոր բանվորներ ու գյուղացիներ նետվեցին բանտերը և դաժան հալածանքների ենթարկվեցին։

Չնայած պարտությանը, մայիսյան ապստամբությունը ցույց տվեց, որ դաշնակների տիրապետության տապալումն ու սովետական իշխանության հաղթանակը Հայաստանում դարձել է ամենամոտիկ ապագայի հարց։

Մի քանի ամիս անց, 1920 թ. նոյեմբերին Հայաստանի աշխատավորները, կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ և Կարմիր Բանակի եղբայրական օգնությամբ թոթափեցին դաշնակների լուծը և Հայաստանում հաստատեցին սովետական իշխանություն։

---

# ՌԵՎՈԼՅՈՒՑԻՈՆ ՊԱՅՔԱՐԻ ԷՋԵՐԻՑ

## Ս. ՃԱՂԱՐՅԱՆ

Այս տարի լրանում է Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 40-րդ տարեդարձը։ Սովետական Միության բազմազգ և բազմամիլիոն ժողովուրդը, ամբողջ աշխարհի պրոգրեսիվ մարդկությունը, այդ թվում երախտապարտ հայ ժողովուրդը ցնծությամբ և խոր գոհունակությամբ են նշում համայն աշխարհի նոր դարագլուխ հանդիսացող Մեծ Հոկտեմբերի փառապանծ 40-րդ տարին։

Հայ ժողովուրդը սովետական իշխանության համար մղել է կենաց ու մահու ծանր պայքար և այդ պայքարի ճանապարհին քիչ զոհեր չի տվել։ Հայաստանում սովետական իշխանության համար մղած հերոսական պայքարում իր պատվավոր տեղն ունի նաև Ղազախ-Շամշադինի պարտիական կազմակերպությունը, որը հանդիսացել և հանդիսանում է Հայաստանի Կոմունիստական պարտիայի մարտական ջոկատներից մեկը։ Նրա առաջավոր շարքերում էին մարտնչում Կոմունիստական պարտիայի և հայ ժողովրդի պանծալի զավակներ՝ Շավարշ Ամիրխանյանը, Ենոք Մկրտումյանը, Եղիշե Շամախյանը, Սեդրակ Հակոբջանյանը, Անանիա Բերբերյանը, Վաղինակ Հովսեփյանը, Գալուստ Հարությունյանը, Վասիլի Ալեքսեևը և ուրիշներ։ Անձնվեր ու աննկուն ռևոլյուցիոների իրենց ամբողջ կրքոտությամբ նրանք մարտնչում էին բանվոր դասակարգի ու աշխատավոր գյուղացիության ազատագրության համար, սոցիալիզմի հաղթանակի համար։



Ղազախ-Շամշադինի շրջանները (նախկինում Դիլիջանի գավառ) գտնվում են Հայաստանի հյուսիսային մասում։ Թշվառ և տանջալի կյանք է վարել այստեղ ընչազուրկ հայ գյուղացին։ Գավառի արգավանդ հողերի և այգիների մեծ մասը գտնվում էր խոշոր հողատերերի և կուլակների ձեռքում։ Այսպես օրինակ՝ ցարական գեներալ-լեյտենանտ Վարշամովը խոշոր կալվածքներ ուներ հայրենի Սևքար գյուղում, իսկ Աչաջուր գյուղի հողերի զգալի մասը պատկանում էր աղա Ալիխանովին։ Մեծ կալվածքներ ունեին նաև Սամսոն Հարությունյանը (Վ. Աղդանում և Դիլիջանում), Աղաջանյանները (Ջարխեչ), Քալանթարովը (Շամշադինի շրջան՝ Զորաթան), Լևոն Մելիքյանը (Բերդ) և ուրիշները։ Հողազուրկ գյուղացիների մեծ մասը հարկադրված թողնում էր հայրենի տունը և ընտանիքի գոյությունը մի կերպ պահպանելու համար դիմում էր դեպի Բաքու, իսկ մնացածները իրենց ընտանիքի անդամներով, որպես բատրակներ, աշխատում էին տեղի աղաների ու հոգևորականների համար։ Բաքվի նավթահանքերում, Թիֆլիսում և արդյունաբերական այլ քաղաքներում աշխատող Ղազախ-շամշադինցի բանվորների թիվը 1000-ից

ավելի մարդ էր կազմում։ Նրանցից շատերը անմիջական մասնակցություն էին ունենում բանվորական ելույթներին և ընդհատակյա պարտիական կազմակերպության աշխատանքներին։ Հին բանվորներից Ալիբեկ Մկրտումյանը, Գրիգոր Խառատյանը, Ներսես Օսիպովը, Մովսես Հովսեփյանը, Առուստամ Առուստամյանը, Սահակ Միրզոյանը, Մուքել Ճաղարյանը բանվորական շարժումներին մասնակցելու համար ցարական կառավարության կողմից մի շարք անգամ բանտարկվել, կամ շղթայակապ Սիբիր էին աքսորվել։ Շատ բանվորներ անմիջական շփման մեջ էին գտնվում հայրենի գյուղի բնակչության հետ, կոոպերատիվ կազմակերպություններ էին հիմնում գյուղում, հանդես էին գալիս որպես գյուղացիների շահերի պաշտպան։

Բացի ռևոլյուցիոն բանվորներից, գյուղացիների վրա մեծ ազդեցություն ունեցան նաև առաջին համաշխարհային պատերազմի բովով անցած, ռևոլյուցիոն հայացքների տեր, նախկին շատ զինվորներ։ Նրանցից Սարգիս Մկրտումյանը, Գրիգոր Փաշինյանը, Մելիք Օքմինյանը, Հարություն Բալաբեկյանը և ուրիշներ 1917 թվականի փետրվարյան բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիայից հետո ընտրվել էին բանվորների ու զինվորների դեպուտատների Սովետների անդամ։ Տուն վերադառնալով, նրանք ակտիվ աշխատանք էին կատարում գյուղացիների մեջ։

Աշխատավորների դասակարգային ինքնագիտակցության, նրանց մղած հետագա փառավոր պայքարի կազմակերպման վրա մեծ ազդեցություն են ունեցել նաև գավառի ինտելիգենցիայի ակտիվ գործիչներ Շավարշ Ամիրխանյանը, Եղիշե Շամախյանը, Վաղինակ Հովսեփյանը և ուրիշները, որոնք բավականաչափ ծանոթ լինելով մարքսիստական-լենինյան տեսությանը, աշխատավոր մասսաների մեջ ծավալում էին ագիտացիոն, պրոպագանդիստական ակտիվ աշխատանք։ Նրանցից էր նաև բոցաշունչ ռևոլյուցիոներ Ենոք Ալավերդու Մկրտումյանը։

Ե. Մկրտումյանը ծնվել է 1896 թվականի մայիսի 26-ին Ղազախի շրջանի Քրդեան (այժմ Ենոքավան) գյուղում։ Երկու տարեկան հասակում նա կորցրել է մորը։ Հայրը, որ բավական բանիմաց մարդ էր, 7 տարեկան Ենոքին տալիս է Վ. Աղդանի ծխական դպրոցը։ Ապա նա սովորում է Քարվանսարայի (այժմ Իջևան) դասական դպրոցում, իսկ 1915 թվականին ավարտում է Էջմիածնի Գևորգյան ճեմարանի դասարանական բաժինը։ 1916 թվականին Ենոքն ընդունվում է ճեմարանի լսարանական (մասնագիտական) բաժինը։ Դեռևս ճեմարանում սովորելու ժամանակ նա ուսումնասիրում է մարքսիստական գրականությունը, մոտիկից ականատես է լինում բազմաչարչար հայ գյուղացու կյանքին։ 1916—1917 թթ. Ե. Մկրտումյանը Քարվանսարայի դպրոցում աշխատանքի է նշանակվում որպես դպրոցական տեսուչ։

Դիլիջանի գավառի նոր կազմակերպվող բոլշևիկյան բջիջները ագիտացիոն, պրոպագանդիստական աշխատանք էին ծավալում մասսաների մեջ, պարզաբանելով սոցիալիստական ռևոլյուցիայի նշանակությունը և Անդրկովկասում սովետական իշխանություն հաստատելու անհրաժեշտությունը։ Այդ բջիջների կողմից ակտիվ աշխատանքի է ներգրավվում նաև Ե. Մկրտումյանը։ Նա շատով ագիտացիոն, պրոպագանդիստական աշխատանք է կատարում Ղազախ-Շամշադինի հայ և ադրբեջանցի աշխատավորների մեջ, հետևողականորեն մերկացնում է դաշնակցական և մուսավաթական պարտիաների նա-



ցիոնալիստական սուտ քաղաքականությունը։ Ե. Մկրտումյանը 1917 թվականին ընդունվում է ՌՍԴԲ(բ)Պ անդամ։ Նա ընդհատակյա կազմակերպության հանձնարարությամբ լայն աշխատանք է կատարում գավառի չքավոր գյուղացիների, ցարական բանակից, Բաքվից, Թիֆլիսից հայրենիք վերադարձած ռևոլյուցիոն տրամադրություններ ունեցող բազմաթիվ մարդկանց հետ։ Մկրտումյանը աշխատակցում է նաև Թիֆլիսում հրատարակվող «Պայքար» թերթին, որտեղ ոչնչացնող քննադատության է ենթարկում տեղի բեկերին և աղալարներին։ Նա «Ժանդարմ ցարիզմի մնացորդները Ղազախում» հոդվածում ցույց է տալիս, թե ինչպես Ղազախում դաշնակների հովանավորությամբ գավառի կոմիսար է «ընտրվել» Մամոյ բեկ Շխլինսկին, որը խեղճ ժողովրդի արյուն-քրտինքով հավաքած փողերը իր բեկական գրպանն էր լցնում («Պայքար», 1917 թ., № 67)։

Ե. Մկրտումյանը համոզիչ կերպով ցույց է տալիս, որ հայ և ադրբեջանական աշխատավորները տարբեր շահեր ունենալ չեն կարող։ Միայն թշնամիներն են արհեստականորեն հրահրում ազգամիջյան գժտություններ, իսկ այդ կացությունից դուրս գալու միակ ելքը հանդիսանում է սոցիալիստական ռևոլյուցիան։

Ուշագրավ է Մկրտումյանի «Հողային հարցը և գյուղացիությունը» հոդվածը, որը տպագրվել է «Պայքար»-ի 71-րդ համարում։ Այդ հոդվածը ամբողջովին ուղղված է դաշնակցության հակաժողովրդական քաղաքականության դեմ։ Հավատարիմ լինելով լենինյան գաղափարներին՝ Մկրտումյանն առաջ է քաշում բանվոր-դասակարգի և գյուղացիության դաշինքի հարցը, գյուղացիական մասսաների մեջ սոցիալիստական գիտակցություն մտցնելու անհրաժեշտությունը՝ աշխատավոր մասսաների ազատագրության համար մղվող պայքարում, որը պիտի իրականացվի շահագործման աղբյուր հանդիսացող արտադրության միջոցների մասնավոր սեփականության պետականացմամբ։ «...Սոցիալ դեմոկրատիան, որը կանգնած է աշխատավոր դասակարգի շահերի տեսակետի վրա, հեռու բուրժուական հակումներից և ալրումներից... գտնում է, որ այդ դժոխքից դուրս գալու միակ ելքը արտադրության միջոցների մասնավոր սեփականության պետականացումն է»։

Այս հոդվածները ցույց են տալիս, որ Մկրտումյանը պրոլետարական ռևոլյուցիայի տեսական հարցերին բավական գիտակ անձնավորություն էր։ «Ժողովրդի սոցիալական, տնտեսական դրությունն է որոշում նրա գիտակցությունը և ոչ թե դաշնակների ծիծաղելի ծրագիրը պիտի ուղղություն տա և որոշի ժողովուրդների քաղաքականությունը և տնտեսական ստրուկտուրային»— գրել է նա։

Ե. Մկրտումյանի հոդվածների ռևոլյուցիոն դրույթները և աշխատավորների շրջանում նրա կատարած ագիտացիոն, կազմակերպական աշխատանքը խիստ թշնամաբար էին ընդունում դաշնակները և կոնտրռևոլյուցիոն պարտիաների մյուս ներկայացուցիչները։ Դաշնակները սկսեցին հետապնդել Ենոքին՝ տեռորի ենթարկելու համար։ Գավառի աշխատավորները ամեն կերպ աջակցում ու թաքցնում էին նրան, որպես իրենց շահերի լավագույն պաշտպանի։ 1917 թվականի աշնանը Ե. Մկրտումյանին հաջողվում է անցնել Թիֆլիս, ապա Հյուսիսային Կովկաս, ուր ծանոթանում է Անդրկովկասի բոլշևիկյան կազմակերպության ղեկավարների հետ, նրանցից կոնկրետ ցուցումներ է ստանում գավառում ռևոլյուցիոն աշխատանքն ուժեղացնելու համար։

Թշնամիները Ենոքին հանգիստ չէին տալիս։ 1917 թվականի վերջերին վերադարձի ժամանակ նա ձերբակալվում է Թիֆլիսում, մեկ ամիս հետո ազատվելով, վերադառնում է Քարվանսարա և անցնում ընդհատակյա աշխատանքի։ Նա իր հետ բերում է բոլշևիկյան գրականություն, խմորատիպ մեքենա և անհրաժեշտ նյութեր՝ տեղում ռևոլյուցիոն թերթ և կոչեր հրատարակելու համար։

1918—1919 թ. թ. ռևոլյուցիոն հսկայական աշխատանք է ծավալվում Ղազախ-Շամշադինի գյուղերում։ ՌՍԴԲ(բ)Պ Կովկասյան Երկրային կոմիտեի անմիջական ղեկավարությամբ բոլշևիկյան բջիջները կազմակերպչորեն ավելի են ամրապնդվում և լուրջ հեղինակություն են ձեռք բերում Քրդևան, Սևքար, Աչաջուր, Ուզունթալա, Քարվանսարա, Ջարխեչ, Շամշադինի շրջանի Ղրղի, Մովսես, Վ. Կարմիր Աղբյուր, Նորաշեն, Ղուլալի, Չինարի, Ն. Կարմիր Աղբյուր, Պառավաքար գյուղերում։

Առանձնապես աչքի էին ընկնում Սևքարի, Աչաջրի և Ջարխեչի բոլշևիկյան բջիջները, որոնց անդամներից շատերը Բաքվի կամ Թիֆլիսի նախկին բանվորներ էին և անձնապես ծանոթ էին Ստ. Շահումյանին, Կիրովին և Օրջոնիկիձեին։ Նրանք կարևոր դեր խաղացին բոլշևիկյան այդ բջիջների ամրապնդման ու ռևոլյուցիոն հետագա աշխատանքի կազմակերպման գործում։ Ընդհատակյա կազմակերպության ակտիվ անդամներ էին՝ Գալուստ Հարությունյանը, Հակոբ Եգանյանը, Գերասիմ Ճաղարյանը, Գրիգոր Խառատյանը, Մելիք Օքմիմյանը, Լևոն Խառատյանը, Մովսես Հովսեփյանը, Գրիգոր Փաշինյանը, Մինաս Ղալումյանը, Աղասի Վարդանյանը, Արշակ Բաբլումյանը, Խաչատուր Մարգարյանը, Սահակ Միրզոյանը, Տիգրան Ղալթաղչյանը և ուրիշներ։

1919 թվականի մայիսին տեղի է ունենում Շամշադինի շրջանային առաջին պարտիական կոնֆերենցիան, որին մասնակցում էին 8 կոմունիստական բջիջների պատվիրակներ և Թիֆլիսից, Բաքվից ու Ռուսաստանից եկած այլ ընկերներ։ Կոնֆերենցիան քննարկում է պարտիական բջիջների ամրապնդման, հարևան կոմունիստական կազմակերպությունների ու պարտիական կենտրոնական օրգանների հետ կապեր հաստատելու խնդիրները։ Ընտրվում է շրջանային կոմիտե՝ Նիկոլայ Զարգարյանի ղեկավարությամբ, կազմակերպվում է շրջանային ռևոլյուցիոն կոմիտե, որի նախագահ է ընտրվում Հովհաննես Գրիգորյանը։ Նույն թվականի ամռանը գյուղացիական հուզումներ են տեղի ունենում Շամշադինի շրջանի գյուղերում։ Պարտիական բջիջների ղեկավարությամբ գյուղացիները վառում են կալվածատերերի տները, Զորաթան գյուղի բեկերից խլում են նախկինում Ղրղի գյուղի բնակիչներին պատկանող 400 հեկտար հողը և բաժանում գյուղացիների միջև։

1920 թվականի ապրիլի 25-ին Քրդևան գյուղում հրավիրվում է Դիլիջանի գավառի ընդհատակյա կոմունիստական կազմակերպության առաջին կոնֆերենցիան, որը միավորում էր 350 կոմունիստ։ Կոնֆերենցիային ներկա էին 20 պատվիրակ. օրակարգում դրված էին մասսաների մեջ կազմակերպչական ռևոլյուցիոն աշխատանքն ուժեղացնելու, հետագա աշխատանքի մեթոդների, պրոֆեսիոնալ ռևոլյուցիոներների թվի ավելացման, գավառային կոմիտեի ընտրության և այլ ընթացիկ հարցեր։ Կոնֆերենցիան կատարված ռևոլյուցիոն աշխատանքը գնահատում է բավարար և ճիշտ, որոշում է ավելացնել պրոֆեսիոնալ ռևոլյուցիոներների թիվը, ուժեղացնել ագիտացիան աշխատավորների



մեջ, բոլշևիկյան լոզունգներով մասնակցել մայիսմեկյան տոնակատարությանը, խնդրել Հայաստանի Կոմիտեից թույլ տալու սկսել մարտական կազմակերպական աշխատանք։ Կոնֆերենցիան ընտրեց գավառային կոմիտե, որի մեջ մտան Շավարշ Ամիրխանյանը, Ենոք Մկրտումյանը, Անանիա Բերբերյանը, Գալուստ Հարությունյանը, Կոստյա Այվազյանը և Հայկ Յաղուբյանը։ Որոշում է ընդունվում նաև Շամշադինի շրջանի գյուղացիության մեջ աշխատանքը ուժեղացնելու մասին։

Գավառային կոմիտեն հատուկ ուշադրություն է դարձնում զորքի մեջ տարվող աշխատանքին։ Այդ ժամանակ Դիլիջանում գտնվող հրաձգային 6-րդ գնդում պարտիական ընդհատակյա կազմակերպությունը ակտիվ աշխատանք էր կատարում տոկուն բոլշևիկներ Սեդրակ Հակոբջանյանի (Ամի), Վասիլի Ալեքսեևի, Վաղինակ Հովսեփյանի (Լևոն), Ապոստոլովի ղեկավարությամբ։ Պարտիական բջիջները լայն գործունեություն էին ծավալել նաև միլիցիոն գնդի վաշտերում։

1920 թվականի ապրիլի 28-ին Ադրբեջանում սովետական կարգերի հաստատումը Հայաստանի աշխատավորներն ընդունեցին բուռն ցնծությամբ։ Այն մեծ արձագանք գտավ հատկապես Դիլիջանի գավառում, որը սահմանակից է Ղազախին, որի վրայով պարտիական կազմակերպությունները սերտ կապեր էին հաստատում Անդրկովկասի պրոլետարիատի միջնաբերդ Բաքվի հետ։

1920 թվականի Մայիսյան զինված ապստամբության նախօրեին՝ Դիլիջանի գավառային կոմիտեի անդամներ Շ. Ամիրխանյանը, Ե. Մկրտումյանը, Ա. Բերբերյանը, Գ. Հարությունյանը և մյուսները լայն նախապատրաստական աշխատանք էին տանում Քարվանսարայի, Դիլիջանի, Շամշադինի շրջանների գյուղացիների մեջ և զորամասերում։ Գավառային կոմիտեն կապեր է հաստատում Ալեքսանդրոպոլի, Նոր Բայազետի բոլշևիկյան կազմակերպությունների հետ։ Դաշնակցական տեղական իշխանության ղեկավարները իմանալով այդ բոլորի մասին, շատ միջոցներ են ձեռնարկում գլխատելու նախապատրաստվող ապստամբությունը։ Ալեքսանդրոպոլի Մայիսյան ապստամբությունից սարսափած՝ նրանք Դիլիջանում արտակարգ միջոցների են դիմում. մի շարք կոմունիստների ձերբակալում և աքսորում են Սևանա կղզին։ Հետապնդում ու դաժան հալածանք է սկսվում նաև Քարվանսարայի և Շամշադինի բոլշևիկների դեմ։ Դաշնակները մայիսի 10-ին ձերբակալում են Ե. Մկրտումյանին և ուղարկում Դիլիջանի բանտը։ Սակայն Ջարխեչում (այժմ Կույբիշև) ուղեկցող միլիցիոներների և Գ. Հարությունյանի օգնությամբ Ենոքը փախուստի է դիմում և մայիսի 14-ին Շ. Ամիրխանյանի հետ միասին անցնում նախապատրաստվող ապստամբության գլուխը։ Նրանց անմիջական ղեկավարությամբ մայիսի 18-ին Սևքարում գումարվում է պարտիական ակտիվի ժողով, որը որոշում է ընդունում ապստամբել դաշնակցական կարգերի դեմ։

Մայիսի 19-ին ապստամբեց միլիցիոն գնդի Սևքարում գտնվող 4-րդ վաշտը։ Նույն օրը Սևքարում տեղի ունեցած բազմամարդ միտինգում, ուր հավաքվել էին հարևան Սոփ, Մելիք, Ջողազ, Կունեն և Աչաջուր գյուղերի գյուղացիները, կրակոտ ճառով հանդես եկավ Ե. Մկրտումյանը։ Ապստամբները շարժվեցին դեպի Քարվանսարա։ Ճանապարհին նրանց ցնծությամբ ընդունեցին Ն. Աղդանի, Խավարաձորի (այժմ Լուսաձոր), Խաշթառակի գյուղացիները։

Գավառային կոմիտեի կատարած անհրաժեշտ նախապատրաստական աշ-

խատանքի շնորհիվ, առանց լուրջ զինված ընդհարումների, մայիսի 20-ին ապստամբները ազատագրեցին Քարվանսարան (այժմ Իջևան)։ Այստեղ անմիջապես նրանց միացավ հետևակային վաշտը Ս. Հակոբջանյանի ղեկավարությամբ։ Գավառային կոմիտեի խնդրանքով ապստամբներին շուտով օգնության եկան նաև 11-րդ Կարմիր Բանակի 500 հեծյալներ։ Ապստամբները այդ օրը կալանավորեցին գեներալ Բաղդասարովին, Ներքին գործերի մինիստրի տեղակալ Մանասյանին, բոլշևիկների դեմ պայքարելու համար պառլամենտի կողմից գործուղված արտակարգ կոմիսար Տեր-Ղուկասովին և Մեսրոպ-բեկին։ Քարվանսարայում գումարվեց մեծ միտինգ։ Նույն օրը կազմվեց ռևոլյուցիոն կոմիտե Շ. Ամիրխանյանի ղեկավարությամբ։ Քարվանսարայում հայտարարվեց սովետական իշխանություն։

Ապստամբները Ն. Մկրտումյանի ղեկավարությամբ Կարմիր Բանակի զորամասերի հետ շարժվեցին դեպի Դիլիջան, որոնց ճանապարհին գրկաբաց ընդունեցին Ջարխեչի գյուղացիները։ Այն ժամանակ, երբ ապստամբների հետևից Կարմիր Բանակի հեծյալ զորամասը մայիսի 21-ի առավոտյան նոր էր մտնում Ջարխեչ, խճուղու երկարությամբ հավաքված՝ աղ ու հացը ձեռքներին բազմության միջից դուրս եկավ ուսուցչուհի Սիրանուշ Բարսեղյանը։ Նա բարևեց կարմիր աստղակիր էսկադրոնի հրամանատարին, ապա իբրև հայ ժողովրդի երախտագիտություն՝ համբուրեց նրա ճակատը։ Մայիսի 21-ի երեկոյան Դիլիջանը ազատագրվեց։ Այստեղ ապստամբության կողմն անցավ 6-րդ գնդի զինվորների զգալի մասը։ Դիլիջանում կազմվեց ռևոլյուցիոն կոմիտե Վ. Հովսեփյանի ղեկավարությամբ։ Դաշնակները իրենց զինված ուժերով փախուստի դիմեցին դեպի շրջակա անտառները։ Մայիսի 22-ին Դիլիջանում գումարվեց մեծ միտինգ, որը վերածվեց հսկայական ցույցի։

Ղազախ-Շամշադինի Մայիսյան ապստամբության այդ օրերին Ադրբեջանում՝ Գյանջայում (այժմ Կիրովաբադ) մուսավաթ աղալարների ու բեկերի կողմից բարձրացրած խռովության պատճառով, ապստամբներին օգնության եկած զորամասը ստիպված ետ վերադարձավ։ Ռևկոմը սկսեց շտապ միջոցներ ձեռք առնել՝ կապեր հաստատելու Ղարաքիլիսայի (այժմ Կիրովական) և Երևանի կոմունիստական կազմակերպությունների հետ։ Բայց խմբապետներ Սեպուհի և Մուրադի դաշնակցական զորքերն արդեն օղակել էին Դիլիջանը և պահանջում էին անհապաղ հանձնել քաղաքը։

Մայիսի 23-ին ռևկոմը իր դռնփակ նիստում որոշում է ընդունում ստեղծված կացությունից դուրս գալու համար ետ նահանջել, ուժերը պահպանել և վերադասավորել Հայաստանի վերջնական ազատագրության համար։ Մայիսի 24-ի գիշերը Դիլիջանում Ոսկի աղբյուրի մոտ դաշնակները սպանեցին Ս. Հակոբջանյանին։ Դա մեծ կորուստ էր գավառային կոմիտեի և տեղի կոմունիստական կազմակերպության համար։

Ապստամբները ստիպված էին ետ նահանջել։ Դաշնակցական գազազած բանդաները հետապնդելով նահանջող ապստամբներին, Ջարխեչում 4 տեղից ծանր վիրավորեցին Ենոք Մկրտումյանին, կալանավորեցին Հակոբ Եգանյանին, Բախշի Ներսիսյանին, Սիրանուշ Բարսեղյանին և նրանց նետեցին Դիլիջանի բանտը։ Դաշնակ ճիվաղները ծեծի և անլուր տանջանքների ենթարկեցին Ենոքին և նրա ընկերներին։ Ականատեսները պատմում են, որ արյունը լերդացել էր նրա երկարաճիտ կոշիկներում և նա բոլորովին արյունաքամ էր եղել,



բայց դաշնակներին ոչ մի կերպ չէր հաջողվում ընկճել խիզախ ռևոլյուցիոների ոգին։

«Այս 11 օր է, որ րոպե-րոպե սպասում եմ գնդակահարման,— գրել է Ն. Մկրտումյանը իր մերձավոր ընկերուհուն՝ Շուշիկին,— պատկերանում է իմ ամբողջ կյանքը ու վերջին գործունեությունը իմ առաջ, բայց և ոչ մի վայրկյան մինչև այժմ զղջումը կամ սարսափը մտքովս չի անցել, հանգիստ եմ միանգամայն, հանգիստ հոգով էլ սպասում եմ դատավճռի» (տես ՀԿՊ Կենտկոմի Պարտիական արխիվ, Ն. Մկրտումյանի գործը)։

Ն. Մկրտումյանը երբ նոր էր բոլորել իր կյանքի 24 տարին, դաշնակցական «դատարանի» որոշմամբ գնդակահարվեց արյունարբու Սեպուհի ձեռքով։ Այդ օրերին հերոսի մահով զոհվեցին նաև Վ. Ալեքսեևը, Վ. Հովսեփյանը, Ապոստոլովը և մի շարք այլ կոմունիստ ընկերներ։

Մայիսյան ապստամբության օրերին և հետագա շրջանում երիտասարդական կոմունիստական բջիջներ են ստեղծվում Քարվանսարայում, Աչաջրում, Սևքարում, Սոփ, Ջողազ, Ուզունթալա գյուղերում։ Շամշադինի շրջանում կազմակերպվում է երիտասարդական դիմադրության ջոկատ, որը հանդես է գալիս դաշնակցության պառլամենտական ընտրությունների դեմ։ Երիտասարդական կոմունիստական կազմակերպության անդամներ Հրանտ Գևորգյանը, Գերասիմ Բլբուլյանը, Արտաշ Մայիլյանը, Գուրգեն Մկրտումյանը, Գարեգին Գևորգյանը, Արամայիս Դավթյանը և ուրիշներ ակտիվ մասնակցություն են ունենում տեղի ռևոլյուցիոն աշխատանքների կազմակերպմանը։

Ընդհատակյա կոմունիստական կազմակերպությունները նրանց միջոցով շարունակում էին բնակչության մեջ տարածել բոլշևիկյան պրոկլամացիաներ, կոչեր, ռևոլյուցիոն գրականություն, ավելի են ամրապնդում իրենց կապերը տեղի աշխատավորության և Սովետական Ադրբեջանի հետ։

Գավառային Կոմիտեի ցուցումով պարտիական կազմակերպությունները աշխատավորության մեջ ավելի են ուժեղացնում քաղաքական մասսայական աշխատանքը։ Տասնյակ բոլշևիկ ագիտատորներ պարզաբանում են մասսաներին, որ դաշնակցության հանցավոր ու խայտառակ քաղաքականության հետևանքով ստեղծված մղձավանջային դրությունից դուրս գալու միակ ելքը՝ սովետական իշխանության գաղափարի կենսագործումն է։

Մայիսյան ապստամբության մասնակից մոտ 1570 գյուղացիներ ու բանվորներ, որոնք նրա պարտությունից հետո 1920 թ. ամռանը հաստատվել էին Գյանջայում, ռազմառևոլյուցիոն կոմիտեի առաջարկությամբ տեղափոխվում են Բաքու և մտնում 11-րդ բանակի շարքերը։ 1920 թվականի հուլիսի 27-ին կազմվում է 3-րդ հայկական գումարտակը, իսկ նոյեմբերին բոլոր հայ կարմիր բանակայիններից կազմվում է 11-րդ բանակին կից 1-ին հայկական գունդը, որը ակտիվ դեր խաղաց հայ ժողովրդի ազատագրության, Հայաստանում սովետական կարգերի հաստատման գործում։

ՌԿ(բ)Պ Կենտկոմի Կովկասյան բյուրոյի անմիջական օգնությամբ Հայաստանի Կոմունիստական պարտիան տեղերում ավելի է ուժեղացնում ռևոլյուցիոն աշխատանքը։ Ռուսաստանից, Բաքվից, Թիֆլիսից պարտիական բազմաթիվ փորձված կադրեր են փոխադրվում Հայաստան, իրենց հետ բերելով ռևոլյուցիոն գրականություն և նյութական միջոցներ։ Այդ ընկերների թվում էր նաև Սարատովի համալսարանի նախկին ուսանողուհի ընկ. Սերիկ Դավթյանը, որը Հայաստանի ԿՊ Կենտկոմի արտասահմանյան բյուրոյի (Զանգ-

բյուրո) հանձնարարությամբ փոխադրվում է Դիլիջան և ակտիվ մասնակցություն ունենում նախապատրաստվող զինված ապստամբությանը։

1920 թվականի սեպտեմբերին Բաքվում գումարվում է Հայաստանի Կոմունիստական պարտիայի կոնֆերենցիան, որը հիմնականում քննարկում է Հայաստանում սովետական կարգեր հաստատելու հարցը։ Այդ կոնֆերենցիայում վճռական ձայնի իրավունքով Ղազախ-Շամշադինի Կոմունիստական պարտիական կազմակերպության կողմից որպես դելեգատ մասնակցում էր Սահակ Միրզոյանը։

ՌԿ(բ)Պ Կովկասյան բյուրոն հայ ժողովրդի մեծ բարեկամներ Գ. Կ. Օրջոնիկիձեի, Ս. Մ. Կիրովի և Ա. Ի. Միկոյանի գլխավորությամբ և ՀԿ(բ)Պ Կենտկոմի անդամների մասնակցությամբ հանգամանորեն քննարկում է Հայաստանում զինված ապստամբության նախապատրաստման հարցը։ Նախատեսվում է ապստամբությունը սկսել Շամշադինի և Քարվանսարայի շրջաններում, որոնք ավելի մոտ էին Սովետական Ադրբեջանին և 11-րդ Կարմիր Բանակի զորամասերին։ Ապստամբությունը ղեկավարելու համար ՀԿ(բ)Պ Կենտկոմի անդամներին տրվում են կոնկրետ հանձնարարություններ։

1920 թվականի նոյեմբերի 29-ին Քարվանսարայի, Դիլիջանի և Շամշադինի շրջանների աշխատավորները Հայաստանի Կոմունիստական պարտիայի անմիջական ղեկավարությամբ զինված ապստամբություն բարձրացրին։ Ապստամբների դեմ ուղարկված դաշնակցական զորքերը հրաժարվեցին կռվել և միացան նրանց։ Այդ օրը Քարվանսարայում կազմվեց Ռազմա-ռևոլյուցիոն կոմիտե Ս. Կասյանի ղեկավարությամբ, որը Հայաստանը հայտարարեց Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկա։

Հայաստանի Ռևկոմի ընդունած դեկլարացիայում ասված էր. «Հայաստանի ապստամբ աշխատավոր ժողովրդի կամքով ու ցանկությամբ՝ Հայաստանի Կոմունիստական (բոլշևիկյան) Պարտիան այսօրվանից Հայաստանը հայտարարում է Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկա։ Այսօրվանից Սովետական Հայաստանի Կարմիր դրոշակը պաշտպանելու է նրա աշխատավոր ժողովրդին ճնշողների դարավոր լծից...»։

Նոյեմբերի 30-ին ազատագրվում է Դիլիջանը։ Ռազմա-ռևոլյուցիոն կոմիտեն Հայաստանի բանվորների և գյուղացիների անունից հեռագրով դիմում է ռևոլյուցիայի հանճար Վ. Ի. Լենինին, խնդրելով Կարմիր Բանակի օգնությունը։

Ռուսաստանի Սովետական կառավարության ցուցումով, հերոսական 11-րդ Կարմիր Բանակի զորամասերը եղբայրական օգնության ձեռք մեկնեցին Հայաստանի ապստամբ բանվորներին ու գյուղացիներին։ Նրանց օգնությամբ դեկտեմբերի 2-ին դաշնակների լծից ազատագրվեց նաև Երևանը։

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի փրկարար դրոշը ծածանվեց ողջ Հայաստանի վրա։ Հաղթանակով պսակվեց հայ ժողովրդի դարավոր պայքարը իր անկախության և ազատագրության համար։ Նոր, սոցիալիստական դարաշրջան սկսվեց հայ ժողովրդի պատմության մեջ։

---

# ԱԶԳԱՅԻՆ ԱԶԱՏԱԳՐՈՒԹՅԱՆ ԱՐՇԱԼՈՒՅՍԻՆ

(1857 թվականի Հնդկական ազգային ապստամբության 100-ամյակի առթիվ)

Տ. ՀԱԿՈԲՅԱՆ

Այս տարի հնդիկ ժողովուրդը նշում է անգլիական տիրապետության դեմ ուղղված իր առաջին ազգային ապստամբության հարյուրամյակը։

Կապիտալիստական տերությունների գաղութային քաղաքականությունն ունի դարերի արյունոտ պատմություն։ «Ոսկու և արծաթի հանքավայրերի հայտնագործումն Ամերիկայում, բնիկների բնաջնջումը, ստրկացումն ու ողջ-ողջ թաղումը հանքերում, Արևելյան Հնդկաստանը նվաճելու ու կողոպտելու առաջին քայլերը, Աֆրիկան սևամորթների որսալու արգելադաշտ դարձնելը— ահա արտադրության կապիտալիստական դարագլխի արշալույսը»— գրել է Մարքսը («Կապիտալ», հ. 1., 1954, Երևան, Հայպետհրատ, էջ 783—784)։

18-րդ դարում կապիտալիստական գիշատիչների մրցակցությունը լայնորեն ծավալվել էր Հնդկական օվկիանոսի ավազանում, որտեղ առևտուր անելու և տիրապետություն հաստատելու համար պայքարում էին Հոլանդիան, Անգլիան և Ֆրանսիան։ Մրցության գլխավոր օբյեկտ էր հանդիսանում մարդկության քաղաքակրթության օրրաններից մեկը՝ հնագույն կուլտուրայի երկիր, լայնածավալ և հարուստ Հնդկաստանը։ Հնդկաստանում ծավալված անգլո-ֆրանսիական մրցակցությունն ու զինված պայքարը վերջացավ 1757 թ. Անգլիայի հաղթանակով, որի հետևանքով և հաստատվեց Անգլիայի մենաշնորհ տիրապետությունն այդ երկրում։

Հաստատելով իր տիրապետությունը՝ Անգլիան Հնդկաստանը ենթարկում էր զարգացող կապիտալիզմի պահանջներին՝ դարձնելով այն անգլիական ապրանքների վաճառահանման ընդարձակ շուկա և հումքի բազա։ Այդ նպատակն էին հետապնդում Անգլիայի մի շարք միջոցառումները, որոնցից գլխավորն էր ագրարային-վարչական ռեֆորմը։ Դրա հետևանքով ֆեոդալ-կալվածատերերի՝ զեմինդարների փոխարեն, որոնց ձեռքում էր գտնվում հողի տնօրինության և հարկերի գանձման իրավունքը, առաջ էին քաշվում անգլիական գաղութային իշխանության հետ կապված առևտրականներն ու Արևելա-Հնդկական ընկերության չինովնիկները։ Դրանք, ինչպես նաև վաշխառուներն ու կապալառուները, արդեն ներգրավված էին կապիտալիստական հարաբերությունների ոլորտը և անգլիական տիրապետության ավելի վստահելի հենարանն էին Հնդկաստանում։

Հնդկաստանը շահագործելու մեթոդները բազմապիսի էին։ Սկզբնական շրջանում գերակշռում էին բացարձակ կողոպուտը և անհամարժեք առևտուրը։ Վերջինս ոչնչով չէր տարբերվում կողոպուտից, քանի որ մի շարք կենսա-

մթերքների առևտրի վրա մենաշնորհ հաստատելով՝ անգլիական առևտրականներն առասպելական շահույթներ էին կորզում։ Դրա հետ միասին Անգլիան հնդիկ ժողովրդի արյունը ծծում էր անհելի հարկային ապարատի միջոցով, հարկեր, որոնք բռնությամբ և ծեծի միջոցով գանձվում էին նույնիսկ անբերրիության և սովի տարիներին։

Հնդկաստանը հարմարեցնելով զարգացող կապիտալիզմի պահանջներին՝ Անգլիան 19-րդ դարում սկսեց այդ հսկա երկիրը ողողել իր արդյունաբերական ապրանքներով, որի հետևանքը եղավ հնդկական արհեստի քայքայումը։ Բազմահազար հնդիկ աշխատասեր ջուլհակներ, որոնք իրենց հրաշալի գործվածքներով մի ժամանակ հիացմունք էին պատճառում ողջ աշխարհին, չդիմանալով մրցության, աղքատանում և տասնյակ հազարներով սովամահ էին լինում։

«Հնդկաստանի դաշտերը սպիտակին էին տալիս մահացած ջուլհակների ոսկորներից»,— խոստովանել են հենց իրենք՝ Հնդկաստանի անգլիական գաղութարար կառավարողները։

Միաժամանակ, անգլիական գաղութարարները հնդիկ գյուղացիներին հարկադրում էին մշակել այն կուլտուրաները, հատկապես բամբակը, ջութը, ինդիգոն և այլն, որոնք խիստ անհրաժեշտ էին բարգավաճող Լանկաշիրին, Մանչեստերին, Բիրմինհամին և Եվրոպայի արդյունաբերական այլ կենտրոններին։ Ֆեոդալական շահագործմանն ավելանում էր ավելի դաժան կապիտալիստական շահագործումը։ Իրենց հողային տիրապետությունն ընդարձակելու նպատակով անգլիացիները բռնագրավում էին նույնիսկ հնդիկ ֆեոդալների և ռաջաների մի մասի հողերը, առաջացնելով նաև այդ խավերի դժգոհությունը։

Հնդիկ ժողովրդի համար ծանր էր ոչ միայն տնտեսական շահագործման լուծը, այլև իրավական, կրոնական, ռասայական խտրականության այն քաղաքականությունը, որը հետևողականորեն վարում էին անգլիական գաղութարարները Հնդկաստանում։ Հնդիկները դիտվում էին որպես «ցածր» ռասա, «ոչ-լիարժեք» ժողովուրդ, որն իբր թե կարիք ունի անգլիական տիրապետության։ Գաղութարարները ջատագովում էին Անգլիայի քաղաքակրթիչ դերը, նրա «հատուկ միսիան» Հնդկաստանում, միաժամանակ արհամարհանքով էին վերաբերվում Հնդկաստանի պատմական անցյալին, նրա կուլտուրային, գրական և փիլիսոփայական արժեքներին։ «Անգլերեն գրքերի մի դարակը ավելին արժե, քան Հնդկաստանի և Արաբիայի տեղական ողջ գրականությունը միասին վերցրած»— մեծամտորեն ասել է անգլիական պատմաբան և Հնդկաստանի լուսավորության նախկին մինիստր Մաքոլեյը։

Իրավական և ռասայական խտրականությունը խիստ վիրավորում էր բոլոր հնդիկների, այդ թվում նաև ունևոր խավերի ազգային արժանապատվությունը։ «Որպես հնդիկի, ինձ համար ամոթ է գրել այդ մասին, քանի որ նման հիշողությունները մեծ ցավ են պատճառում ինձ, սակայն է՛լ ավելի մեծ ցավ է պատճառում այն, որ մենք այսքան երկար ժամանակ հաշտվել ենք այդ ստորացման հետ»— գրում է Ջավահարլալ Ներուն (Дж. Неру, «Открытие Индии», М., 1955, стр. 349)։

Անգլիան Հնդկաստանը հպատակության մեջ էր պահում հենց հնդիկների միջոցով։ Նա պահում էր վարձու բանակ, որի զինվորները կոչվում էին սիփայներ և որոնց գլխին կանգնած էին անգլիական հրամանատարներ։ Այս



բանակի օգնությամբ նա կողոպտիչ պատերազմներ էր մղում թե՛ Հնդկաստանի ներսում և թե՛ նրանից դուրս, հատկապես Աֆղանստանի դեմ, որի ազատասեր ժողովուրդները քանիցս լուրջ հարվածներ են հասցրել անգլիական գաղութարարներին։

Ուղիղ մեկ դար անվրդով շահագործելով Հնդկաստանը՝ անգլիացիները վստահ էին իրենց տիրապետության ամրության վրա։ Սակայն նրանք չարաչար սխալվում էին. հնդիկ ժողովուրդը ի վերջո ոտքի կանգնեց և ապստամբության դրոշ բարձրացրեց անգլիական նվաճողների դեմ։



Հնդկական առաջին ազգային ապստամբությունը (1857—1859 թթ.) հայտնի է նաև որպես սիփայների ապստամբություն, քանի որ այն սկսողները եղան սիփայ-զինվորները, որոնք վերջին շրջանում դժգոհ լինելով անգլիացիների վարած քաղաքականությունից՝ արտահայտում էին ժողովրդի ընդհանուր հակաանգլիական տրամադրությունները։

Սկսած դեռևս 18-րդ դարից, հնդիկ գյուղացիության համեմատաբար ապահովված խավերից անգլիացիները զինվորներ էին հավաքագրում և պահում էին վարձու բանակ։ Հնդիկ զինվորները՝ սիփայները, ստանալով բավարար ռոճիկ, օգտվում էին որոշ արտոնություններից, իսկ արշավանքների և պատերազմների ժամանակ որոշ հավելյալ վարձատրություն էին ստանում։ Սակայն, երբ 19-րդ դարի կեսին Անգլիան արդեն ավարտեց ողջ Հնդկաստանի նվաճումը (վերջին պատերազմը Փենջաբի համար ավարտվեց 1849 թվականին), զգալիորեն փոխվեց նաև անգլիական գաղութարարների վերաբերմունքը դեպի սիփայները։ Սրանք այժմ դիտվում էին որպես անգլիացիների վրա թանկ նստող մի բեռ, ուստի և գաղութարարները սահմանափակեցին նրանց արտոնությունները։ Միաժամանակ, սիփայների քաղաքական տրամադրությունների վրա խոր ազդեցություն ունեցան մինչ ապստամբությունը անգլիացիների կատարած անեքսիաները՝ օրինակ հարուստ և ընդարձակ Աուդի անեքսիան, որի հետևանքով ապօրինի ճանաչվեցին մի շարք կալվածատերերի ժառանգական իրավունքներն իրենց հողերի վրա և դրանք բռնագրավվեցին անգլիական դատարանի միջոցով։ Հակաանգլիական տրամադրությունները օրըստօրե ուժեղանում էին։ Ապստամբությունից դեռ շատ առաջ հակաանգլիական գաղտնի խմբերն ապստամբական գործունեություն էին ծավալել բնակչության և սիփայների առանձին ջոկատների շրջաններում։

Ապստամբության առաջին ակտը տեղի ունեցավ Բենգալիայի բանակում, Կալկաթայի մոտ։ Դաժանորեն ճնշելով այդ ելույթը՝ գաղութարարները մեծամիտ ինքնավստահությամբ բոլորովին չէին կասկածում, թե այն կարող է կրկնվել մի այլ վայրում։ Շատ չանցած, մայիսի 10-ին, ապստամբեց Դելիի մոտ գտնվող Միրութ քաղաքի կայազորը, որի ապստամբ սիփայները կոտորեցին անգլիացի հրամանատարներին, այրեցին զորանոցները և շարժվեցին դեպի Դելի։

Անմիջապես ապստամբություն սկսվեց նաև Դելիում, քաղաքն անցավ ապստամբների ձեռքը։ Դա մեծ հարված էր անգլիացիների հեղինակությանը և մեծ կորուստ թե՛ քաղաքական և թե՛ ռազմական տեսակետից։ Ապստամբության օջախներ ստեղծվեցին նաև երկրի մի շարք այլ վայրերում. Կանպու-

րում, Լաքնաուում, Ջանսիում և այլուր։ Այսպիսով, ողջ հյուսիսային Հնդկաստանը՝ Փենջաբից մինչև Կալկաթա բռնված էր ապստամբությամբ։

Ապստամբության մեջ ներգրավվել էին բնակչության տարբեր խավեր։ Թեև ղեկավարությունը գտնվում էր անգլիական քաղաքականությունից դժգոհ, հողազրկված ֆեոդալների և հոգևորականների ձեռքում, բայց ապստամբության հիմնական շարժիչ ուժը գյուղացիությունը և արհեստավորներն էին, որոնք իրենց վրա էին կրում գաղութային տիրապետության և ֆեոդալական շահագործման ողջ ծանրությունը։ Չնայած որ գյուղացիներն ու արհեստավորները գնում էին ֆեոդալների հետևից, որոշ վայրերում նրանք առաջ քաշեցին իրենց տաղանդավոր կազմակերպիչներին ու պարտիզանական կռվի հմուտ ղեկավարներին (Մաուլևի Ահմեդ, Տանտիա-Տոպի և ուրիշները)։

Սիփայների ապստամբության բնույթի, հատկապես գյուղացիության դերի հարցը ուշադրության արժանի հիմնական խնդիրներից մեկն է։ Անգլիական պաշտոնական օրգաններում և բուրժուական պատմաբանների մեծ մասի գործերում այդ ապստամբությունը դիտվում է սոսկ որպես սիփայ-զինվորների մի խռովություն։ Սակայն, մինչև իսկ անգլիական գաղութային ագրեսիվ քաղաքականության այնպիսի կարկառուն ներկայացուցիչ, ինչպիսին Դիզրաելին է, ստիպված էր 1857 թ. համայնքների պալատում հայտարարել, որ «ներկայիս անկարգությունները Հնդկաստանում ոչ թե հասարակ զինվորական խռովություն են, այլ ազգային ապստամբություն, որի մեջ սիփայները միայն գործիք են»։ Փաստերը և ուսումնասիրություններն անվիճելիորեն ցույց են տալիս ապստամբության մեջ բնակչության լայն խավերի, և առաջին հերթին գյուղացիության ու արհեստավորության մասնակցությունը։ Հենց իրենք՝ սիփայները, ինչպես կտեսնենք, կապված էին գյուղացիության հետ, ուստի, այս կամ այն ձևով արտահայտում էին գյուղացիության հակաանգլիական տրամադրությունները։

Հայտնի է, որ հնդկական հասարակության հիմքը անհիշելի ժամանակներից ի վեր եղել է գյուղական համայնքը, որտեղ արհեստը դեռևս չանջատված չէր երկրագործությունից։ Սակայն համայնքի մեջ արդեն գոյություն ունեին տոհմային-ընտանեկան կապերով իրար հետ կապված կաստայական միավորումներ, ինչպիսիք էին ռաջպուտները, ջաթերը, գուջարները և այլն, որոնց գլուխ կանգնած էին տոհմային առաջնորդները։ Ֆեոդալական իրավակարգում սրանք արդեն համայնական հողերի մի մասի ֆեոդալ-սեփականատերերն էին, իսկ մնացած հողերի նկատմամբ հանդիսանում էին թալուքդարներ, այսինքն՝ ռենտա-հարկ գանձողներ։ Անգլիական տիրապետության շրջանում, հատկապես 19-րդ դարի կեսերին, շերտավորումը համայնքներում ավելի էր խորացել։ Առանձնացել էր մի վերնախավ, որի ձեռքին էր գտնվում մշակելի հողի մեծ մասը։ Այդ հողաբաժինները, որոնք կոչվում էին պատտի, կազմում էին նրանց տերերի՝ պատտիդարների ժառանգական սեփականությունը։ Համայնական մնացած հողերը նույնպես սրանք էին տնօրինում։ Պատտիդարները կոլեկտիվ կերպով պատասխանատու էին պետությանը վճարվող ֆեոդալական հարկի համար։ Նրանց հիմնական մասը պատկանում էր ռաջպուտների զինվորական կաստային։ Ռաջպուտները ֆեոդալական առաջնորդների հենարանն էին, որոնցից և հավաքագրվում էր ֆեոդալական աշխարհազորը։ Զինվորական ծառայությունը ռաջպուտների այդ ընտանիքների



համար միակ միջոցն էր՝ պահպանելու իրենց հողատիրական իրավունքներն ու կաստայական արտոնությունները։

Անգլիական տիրապետության հաստատումից հետո ռաջպուտները ստիպված էին ծառայության մեջ մտնել նրանց մոտ և կազմում էին Բենգալիայի կանոնավոր բանակի զգալի մասը։ Ինչպես վերը նշվեց, սկզբնական շրջանում որոշ արտոնություններ վայելող այդ ռաջպուտ սիփայները անգլիական գաղութարարների վարած քաղաքականության հետևանքով այժմ զրկվում էին այդ արտոնություններից։ Իրենց եկամուտներն ավելացնելու և հողային տարածությունները ընդարձակելու նպատակով, ինչպես տեսանք, անգլիական նվաճողները նույնիսկ կանգ չառան հյուսիսային շրջանների բազմաթիվ ֆեոդալների կալվածների բռնագրավման առաջ։ 1856 թ. անգլիացիների կողմից Աուդը անեքսիայի ենթարկելու հետևանքով վերոհիշյալ պատտիդար-ռաջպուտները վերածվեցին հողի հասարակ վարձակալների և պարտավոր էին իրենց ուժից վեր հողային հարկ վճարել։ Ավելի ծանր հարված հասցվեց մանր-վարձակալ գյուղացիներին, համայնքի ստորին խավերին, որոնցից շատերը կորցրեցին իրենց հողակտորները։ Ահա, գյուղում անգլիացիների վարած այս քաղաքականությունն էր, որ առաջ բերեց բնակչության լայն խավերի դժգոհությունը, որը և իր վառ արտացոլումը գտավ սիփայների շարժման մեջ։

Այսպիսով, ակնհայտ է գյուղացիության անմիջական և լայն մասնակցությունը հնդկական առաջին ազգային ապստամբությանը։ Գյուղացիները հարձակվում, սպանում էին անգլիական չինովնիկներին ու հարկահավաքներին և պարտիզանական ջոկատներ կազմելով հարձակումներ էին գործում անգլիական կայազորների վրա։ Իրենք, անգլիական ականատեսները ևս վկայում էին շարժման մասսայական բնույթը։ Նրանցից մեկը գրել է. «Սա ավելին էր, քան զինվորական բունտը. հենց սկզբից շարժումն ընդունեց ապստամբության բնույթ,— ապստամբություն, որի մեջ ներգրավված էին վիթխարի զանգվածներ, այլ ոչ միայն «սիփայ զորքերը» (И. Рейснер, «Очерки классовой борьбы в Индии», М., 1932, стр. 69)։

Անգլիան երկար ժամանակ ի վիճակի չէր ճնշելու ապստամբությունը։ Հսկայական երկրում ցրված անգլիական ջոկատները նման էին կղզյակների՝ ապստամբության ալեկոծվող ծովի մեջ։ Անգլիացի նույն ականատեսը շարունակում է, որ «դեռևս չէինք ջախջախել թշնամուն (սիփայներին—Տ. Հ.), խլել նրա թնդանոթները, երբ նա նորից պատրաստ էր պայքարի. հազիվ կարողանում էինք ազատել մի քաղաք և օգնության հասնել երկրորդին, երբ վտանգը անսպասելիորեն հանդես էր գալիս մի երրորդ տեղում. նոր էինք ավարտում մի շրջանի հպատակեցումը, երբ հուզումները բռնկում էին հարևան շրջանում. դեռ նոր էինք ապահովել հաղորդակցության անվտանգությունը կարևոր ստրատեգիական կետերի միջև, երբ ճանապարհները նորից դառնում էին անմատչելի։ Հազիվ էինք ոչնչացնում խռովարարների և ապստամբների մի խոշոր ջոկատ, երբ նրանք նորից էին հանդես գալիս կրկնապատկված և եռապատկված ուժերով» (Նույն տեղը)։

Անգլիական մամուլն այդ ժամանակ չտեսնված վայնասուն էր բարձրացրել հնդիկների «գազանությունների» առթիվ։ «Թայմս»-ը կոչ էր անում «կործանված յուրաքանչյուր քրիստոնեական եկեղեցու փոխարեն հողին հավասարեցնել 100 հնդկական տաճար։ Յուրաքանչյուր սպանված եվրոպացու հա-

մար տանջալից մահապատժի ենթարկել հազարավոր ապստամբների, չխնայելով ծերերին, կանանց, երեխաներին»։

Չնայած ապստամբության լայն թափին, շուտով դրսևորվեց նրա գլխավոր թուլությունը՝ միասնական ծրագրի և ղեկավարության բացակայությունը։ Սիփայների զոկատները հենց առաջին ելույթներից հետո լուծվեցին բնակչության մեջ՝ դադարելով լինել մեկ միասնական ընդհանուր հրամանատարության տակ։ Ղեկավարությունը փաստորեն թողնված էր Դելիում հաստատված իշխանությանը, որի գլուխ կանգնած էր ապիկար ու զառամյալ Բահադուր շահը։ Բացի այդ, ինչպես դա հատուկ է ֆեոդալական դարաշրջանի ապստամբությունների մեծ մասին, ապստամբները վարում էին պաշտպանողական տակտիկա, որը ունեցավ միայն կործանիչ հետևանքներ։ Ապստամբության թուլությունը պայմանավորված էր նաև ղեկավարների երպառակություններով, Հնդկաստանի ներքին մասնատվածությամբ, որի հետևանքով հնարավոր չէր կապ ստեղծել նրա տարբեր մասերի միջև։ Դրան պետք է ավելացնել նաև ֆեոդալների և ռաջաների տատանողական դիրքը և նրանց մի մասի դավաճանությունը։ Ապստամբության համար խոշոր մինուս էր նաև կրոնա-համայնական որոշ անտագոնիզմը (հատկապես Փենջաբի սիքխերի և մահմեդականների միջև), որն օգտագործեցին անգլիացիները իրենց դիրքերն ամրապնդելու և հակահարձակման անցնելու համար։

Այս բոլորի հետևանքով անգլիացիները 1857 թ. աշնանը օժանդակ ուժեր ստանալով՝ անցան հակահարձակման։ Առաջին հերթին դաժանորեն ճնշվեց Փենջաբի սիփայների ապստամբությունը։ Այնուհետև, անգլիական գաղութարարները պաշարեցին Դելին, որը մեկ շաբաթվա գրոհից հետո հրետանու ուժով գրավվեց և սոսկալի կողոպուտի ու կոտորածի մատնվեց։ Աստիճանաբար ճնշվեցին և ապստամբության մյուս օջախները։ Սակայն, մինչև 1859 թ. հնդիկ ժողովուրդը հերոսական դիմադրություն էր ցույց տալիս։ Պարտիզանական ջոկատները դեռ երկար ժամանակ գործում էին հյուսիսային և միջին Հնդկաստանի տարբեր վայրերում։

Ապստամբությունը ճնշելիս անգլիացիները դիմում էին մասսայական մահապատիժների։ Գաղութարարները դաժան հաշվեհարդար էին տեսնում ապստամբների հետ, նրանց կապելով թնդանոթների բերաններին և կրակելով, մի տեսարան, որն իր կտավի վրա անմահացրել է ռուս նշանավոր նկարիչ Վ. Վերեշչագինը։

Հնդիկ ժողովուրդը այսօր նշում է իր նախնիների, հայտնի և անհայտ իր բազմաթիվ հերոս զավակների հիշատակը, որպես անգլիական վայրագ գաղութարարների զոհեր։

Բռնի ուժի հետ միասին Անգլիան դիմեց նաև դիվանագիտական խորամանկ միջոցների և սիրաշահման քաղաքականության։ 1858 թ. լույս տեսավ Վիկտորիա թագուհու մանիֆեստը, որտեղ խոստացվում էր «հարգել հնդիկների օրինավոր իրավունքները», միաժամանակ պահանջելով, որ նրանք ևս ճանաչեն անգլիական տիրապետությունը։ Կաշառքի և զիջումների միջոցով գաղութարարները իրենց կողմն էին գրավում ֆեոդալներին և ռաջաներին, նրանց վերածելով անգլիական տիրապետության հավատարիմ հենարանը Հնդկաստանում։

Հնդկական առաջին ազգային ապստամբությունը կղզիացած երևույթ չէր։ Այդ նույն ժամանակ հզոր ապստամբություններ և ժողովրդական շարժումներ էին տեղի ունենում նաև Արևելքի այլ երկրներում, հատկապես Չինաստանում, որտեղ ծավալվել էր տայպինների գյուղացիական մեծ ապստամբությունը, որը միաժամանակ ուղղված էր օտարերկրյա գաղութարարների դեմ։ Իրանում տեղի ունեցող բաբիների շարժումը, չնայած իր կրոնական քողին, այնուամենայնիվ ուղղված էր ֆեոդալական շահագործման և օտարերկրյա նվաճողների ճնշման դեմ։



Մարքսը և Էնգելսը ուշադրությամբ հետևում էին Արևելքի երկրներում կատարվող դեպքերին և իրենց հոդվածներով արձագանքում պատմական այդ կարևորագույն իրադարձություններին։ Հնդկական ազգային ապստամբության մասին Մարքսը 1858 թ. մարտի 14-ին իր նամակում Էնգելսին գրում էր. «Հնդկաստանը ներկայումս մեր լավագույն դաշնակիցն է»։

Նրանք կանխատեսում էին, որ Արևելքի ժողովուրդների այդ պայքարը պատմական խոր հետևանքներ կունենա և ավելի հզոր ազգային-ազատագրական շարժումների սկիզբը կհանդիսանա, սերտորեն կապվելով բանվոր դասակարգի ընդհանուր պայքարի հետ։



Հնդիկ ժողովրդի ազատագրական պայքարը մի նոր, ավելի բարձր աստիճանի հասավ իմպերիալիզմի դարաշրջանում, երբ ավելի սրվեցին հակասությունները իմպերիալիստական տերությունների միջև՝ մի կողմից և այդ տերությունների և գաղութային ու կախյալ երկրների միջև՝ մյուս կողմից։ Անգլիայի համար Հնդկաստանի նշանակությունը, որպես կապիտալի արտահանման ոլորտ և արտահանման շուկա, ավելի մեծացավ։ Իմպերիալիզմի դարաշրջանում ավելի մեծ չափերի հասավ հնդիկ ժողովրդի շահագործումը։

Սակայն, այս նոր դարաշրջանը նշանավորվում էր նաև նրանով, որ Հնդկաստանում հանդես էին գալիս նոր ուժեր—հնդկական ազգային բուրժուազիան և պրոլետարիատը։ Հնդկական բուրժուազիան ստեղծեց իր քաղաքական կազմակերպությունը՝ Ազգային Կոնգրես պարտիան, ձևավորվեցին բանվորական առաջին պրոֆմիությունները։

1905—1907 թթ. ռուսական ռևոլյուցիան խոր ազդեցություն ունեցավ Արևելքի երկրների ազատագրական պայքարի վրա։ Այդ ժամանակաշրջանը Լենինը բնորոշել է որպես «Ասիայի զարթոնքի դարաշրջան»։ «Համաշխարհային կապիտալիզմը և 1905 թվականի ռուսական շարժումը վերջնականապես արթնացրել են Ասիան,— գրել է Լենինը։— Տրորված, միջնադարյան անշարժության մեջ վայրենացած բնակչության հարյուր միլիոններն արթնացել են նոր կյանքի և նոր պայքարի՝ հանուն մարդկային տարրական իրավունքների, հանուն դեմոկրատիայի» (Երկեր, հ. 19, էջ 84)։

1905—1908 թթ. Հնդկաստանն ապրում էր ռևոլյուցիոն վերելքի մի շրջան, երբ հնդիկ ժողովրդի լայն խավերն արդեն առաջ էին քաշում անկախության՝ սվառաջյի, այսինքն՝ Հնդկաստանում անգլիական տիրապետության վերացման լոզունգը։ Այդ պայքարում ներգրավված էին բանվորները, գյուղացիները և ազգային բուրժուազիան։ 1908 թ. Բոմբեյի մանածագործ բանվորների գործադուլը եղավ այդ պայքարի բարձրագույն կետը, որը վերածվեց բարիկադային զինված կռիվների անգլիական զորքերի և ոստիկանության դեմ։ Լենինը ջերմ համակրանքով էր վերաբերվում Արևելքի աշխատավորների

հերոսական պայքարին, իր հոդվածներով արձագանքում էր Հնդկաստանում կատարվող դեպքերին։ Ասիական դեմոկրատիայի զարթոնքը և աշխատավորական մասսաների պոտենցիալ ուժերը նա համարում էր «դյուրավառ նյութ», որը բռնկելով պիտի ոչնչացներ ֆեոդալիզմի կապանքները և իմպերիալիստական գաղութային տիրապետության սիստեմը Արևելքում։

Հոկտեմբերյան Սոցիալիստական ռևոլյուցիան մի նոր էջ բաց արեց գաղութային և կախյալ երկրների ազգային-ազատագրական պայքարի պատմության մեջ։

Հնդիկ ժողովրդի և նրա պրոգրեսիվ գործիչների վրա խորը տպավորություն էին գործում մեր երկրում կատարվող վերափոխումները՝ նախկինում ճնշված ազգությունների ձեռք բերած անկախությունն ու իրավահավասարությունը, սոցիալիստական շինարարության նվաճումները։

«Սովետական ռևոլյուցիան,— գրում է Ջավահարլալ Ներուն,— մեծ չափով առաջ մղեց մարդկային հասարակությունը և վառեց մի պայծառ հուր, որը հնարավոր չէ հանգցնել։ Նա հիմք դրեց այն նոր քաղաքակրթության, դեպի որը կարող է ընթանալ աշխարհը» (Ջ. Ներու, նույն աշխ., էջ 24)։

Հոկտեմբերյան ռևոլյուցիայից հետո հնդիկ ժողովրդի ազատագրական պայքարն ավելի լայն ծավալ ընդունեց։ Սակայն, անկախության համար հնդիկ ժողովրդի մղած պայքարը հանդիպում էր լուրջ խոչընդոտների և կատաղի դիմադրության, որոնք ստեղծվել էին երկրում անգլիական գաղութային երկարատև տիրապետության և գաղութային իշխանությունների վարած քաղաքականության հետևանքով։ Անգլիան մտադիր չէր կամովին հեռանալ Հնդկաստանից։

Միայն երկրորդ համաշխարհային պատերազմում գերմանական ֆաշիզմի և ճապոնական միլիտարիզմի դեմ գլխավորապես Սովետական Միության ջանքերով ձեռք բերված հաղթանակից հետո ռեալ հնարավորություններ ստեղծվեցին Հնդկաստանի անկախության համար։

Պատերազմից հետո ավելի ևս խորացավ գաղութային սիստեմի ճգնաժամը և նոր թափ հաղորդեց Արևելքի երկրների ազգային-ազատագրական պայքարին. դրա արդյունքը եղավ գաղութային սիստեմի քայքայումը և ազգային անկախության հաղթանակը Արևելքի մի շարք երկրներում։ Իր ազատագրական պայքարի մեջ հնդիկ ժողովրդին առանձնապես ոգեշնչում էր չին ժողովրդի հերոսական պայքարը, որը պսակվեց լիակատար հաղթանակով։

Հնդկաստանում, ինչպես նաև գաղութային և կախյալ մի շարք այլ երկրներում հակաիմպերիալիստական, ազգային-ազատագրական պայքարը տեղի էր ունենում հակաիմպերիալիստական ուժերի միացյալ ճակատով, որի մեջ ներգրավվում էին երկրի բոլոր պրոգրեսիվ խավերը։

Երկարատև և համառ մարտերից, հատկապես 1946—1947 թթ. ապստամբություններից հետո հնդիկ ժողովրդի դարավոր ազատագրական պայքարը վերջացավ հաղթանակով։ 1947 թ. օգոստոսին Հնդկաստանը բաժանվեց երկու դոմինիոնների՝ Հնդկաստանի և Պակիստանի, իսկ երեք տարի չանցած՝ 1950 թվականի հունվարի 26-ին ստեղծվեց Հնդկական անկախ ռեսպուբլիկան։

Ամբողջ աշխարհի պրոգրեսիվ մարդկությունը ջերմորեն ողջունեց հնդիկ ժողովրդի ազատագրումը և Հնդկական ռեսպուբլիկայի ստեղծումը։ Հնդկական ռեսպուբլիկան կարճ ժամանակամիջոցում դիվանագիտական և բարեկամական կապեր հաստատեց սոցիալիստական լագերի բոլոր պետությունների հետ։ Սովետական Միության ժողովուրդները սրտանց ողջունեցին հնդիկ ժողովրդի պատմական հաղթանակը։



Հնդկական ռեսպուբլիկան անմիջապես կանգնեց խաղաղասեր երկրների առաջավոր շարքերում և իր հետևողական խաղաղասիրական քաղաքականությամբ նվաճեց ազատասեր ժողովուրդների հարգանքն ու համակրանքը։

Իմպերիալիզմի լծից նոր ազատագրված Չինաստանի, Ինդոնեզիայի և Բիրմայի հետ միասին Հնդկաստանը հանդիսացավ Ասիայի և Աֆրիկայի 29 պետությունների Բանդունգի կոնֆերանսի նախաձեռնողներց մեկը, մի կոնֆերանս, որտեղ դատապարտվեց գաղութակալությունը և որտեղ ընդունվեցին նշանավոր հինգ կետերը՝ Փանչա-Շիլան—ազգային սուվերենության, միմյանց ներքին գործերին չմիջամտելու, խաղաղ գոյակցության, բարեկամության և համագործակցության սկզբունքները, որոնք այսօր արդեն լայն ճանաչում են գտել աշխարհի բոլոր մասերում։

Խաղաղության պաշտպանության գործում Հնդկական ռեսպուբլիկայի կարևոր ներդրումներից մեկն էլ այն է, որ չնայած իմպերիալիստական տերությունների գործադրած ճնշումներին, նա պահպանում է ակտիվ չեզոքություն և թույլ չի տալիս իրեն ներգրավել ռազմական և ագրեսիվ բլոկների մեջ։

Պայքարելով խաղաղության պահպանման համար՝ նա իր բողոքի ձայնն է բարձրացնում իմպերիալիստների ագրեսիվ քաղաքականության դեմ։

Բոլոր ազատասեր ժողովուրդների հետ միասին Հնդկաստանը դատապարտում է այսպես կոչված՝ «էյզենհաուերի դոկտրինա»-ն, որն ուղղված է արաբական երկրների դեմ և որի նպատակն է ոչնչացնել դեմոկրատական ազատությունները այդ երկրներում, նրանց թելադրել ամերիկյան մոնոպոլիստների կամքը և նոր ձևով վերականգնել իր դարն ապրած գաղութակալությունը։

Հնդկական ռեսպուբլիկան դատապարտում է գաղութային երկրներում և հատկապես Հարավ-Աֆրիկյան Միությունում անգլիացիների կողմից կիրառվող ռասայական խտրականությունը հնդիկների և նեգրերի նկատմամբ։

Հնդկական ռեսպուբլիկան պահանջում է Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկային տրամադրել իր օրինական տեղը Միավորված Ազգերի Կազմակերպության մեջ, գտնելով, որ առանց այդ մեծ երկրի ներկայացուցիչների ՄԱԿ-ը չի կարող լիովին իրագործել իր դերն ու կոչումը։

Քաղաքական անկախություն նվաճելուց հետո Հնդկական ռեսպուբլիկայի առաջ կանգնած է ոչ-նվազ դժվարին տնտեսական շինարարության և տնտեսական անկախության պրոբլեմը։ Հնդիկ ժողովրդից կպահանջվեն մեծամեծ ջանքեր՝ հաղթահարելու համար երկարատև գաղութային տիրապետության հետևանքները։ Այս տարվա ընտրությունների առթիվ Ազգային Կոնգրեսի նախընտրական մանիֆեստում ասված էր. «Հնդկաստանում ռևոլյուցիան կարող է ավարտվել միայն այն ժամանակ, երբ քաղաքական ռևոլյուցիային կհաջորդեն տնտեսական, ինչպես նաև սոցիալական հեղաշրջումները։ Այս երկու ռևոլյուցիաներն աստիճանաբար տեղի են ունենում Հնդկաստանում, բայց հնդկական ոգուն և մեթոդին համապատասխան՝ դրանք կատարվում են խաղաղ համագործակցության ոգով»։

Ճիշտ գնահատելով ծանր արդյունաբերության առաջատար և վճռող դերը, Հնդկական ռեսպուբլիկայի ղեկավարությունը տնտեսական շինարարության մեջ շեշտը դնում է այդ ճյուղերի զարգացման վրա, որպես Հնդկաստանի

տնտեսական անկախության նախապայման։ Սակայն, այստեղ կարիք կլինի հաղթահարելու օտարերկրյա կապիտալի ազդեցությունը, որը դեռևս զգալի տեղ ունի Հնդկաստանի էկոնոմիկայում։ Հնդկական ռեսպուբլիկան բոլոր դեպքերում էլ ձգտում է ապահովել իր տնտեսական անկախությունը։ Դրա համար էլ նա աշխատում է զարգացնել իր հարաբերությունները սոցիալիզմի լագերի երկրների հետ։

Հնդկական ռեսպուբլիկայի կառավարությունը բարձր գնահատելով Սովետական Միության բարեկամական և անշահախնդիր քաղաքականությունը, ընդունեց ՍՍՌՄ-ի առաջարկը՝ նրա միջոցներով Հնդկաստանում կառուցելու Բհիլայի խոշոր մետալուրգիական գործարանը։

Զարգացնելով երկու երկրների միջև քաղաքական, տնտեսական և կուլտուրական կապերն ու համագործակցությունը՝ սովետա-հնդկական բարեկամությունը դառնում է միջազգային նշանակություն ունեցող կարևորագույն գործոն։

Այս բարեկամությունն իր վառ արտահայտությունը գտավ Հնդկական ռեսպուբլիկայի պրեմիեր Ջավահարլալ Ներուի Մոսկվա կատարած այցելության և ընկ. ընկ. Բուլգանինի ու Խրուշչովի փոխայցելության ժամանակ Հնդկաստանում։

Հնդկաստանի ազատագրումն ու անկախությունը լայն հնարավորություններ ստեղծեցին հնդիկ տաղանդավոր և աշխատասեր ժողովրդի ընդունակությունների և ստեղծագործ աշխատանքի դրսևորման համար։

Պրոգրեսիվ մարդկությունն այժմ հիացմունքով է ծանոթանում այդ հին ժողովրդի կուլտուրային, գիտության, գրականության և արվեստի ասպարեզում նրա ստեղծած արժեքներին։ Կարելի է ասել, որ Հնդկաստանը նորից է հայտնագործվում, այս անգամ արդեն ոչ թե գաղութարարների, այլ ամբողջ աշխարհի աշխատավորների առաջ, նյութական և հոգևոր արժեքների անմիջական ստեղծողների առաջ։

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան Ռուսաստանում մարդկային պատմության մեջ նոր դարաշրջանի սկիզբը հանդիսացավ։ Այդ մոմենտից սկսած գաղութային սիստեմի ճգնաժամը մեր օրերում հասցրեց այդ սիստեմի քայքայմանը։ Ասիայի և Աֆրիկայի երկրները մեկը մյուսի հետևից թոթափելով գաղութակալության լուծը, կանգնում են ազատ զարգացման ուղու վրա։ Այդ երկրների առջևից ընթանում են 600 միլիոնանոց Չինաստանը և 400 միլիոնանոց Հնդկաստանը։

Իրականանում է Վ. Ի. Լենինի հանճարեղ կանխատեսումն այն մասին, որ Արևելքի ժողովուրդները արթնանում են նոր կյանքի համար, արթնանում են, որպեսզի գործնական մասնակցություն ունենան ամբողջ մարդկության բախտի տնօրինության մեջ։

---

# ՊԱՐՏԻԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ԵՎ ԱՆԱՍՆԱԲՈՒԾՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՀԱՐՑԵՐԸ

Ս. ՎԱՐԴԱՆՅԱՆ

Կալինինոյի շրջանը ռեսպուբլիկայի անասնապահական խոշոր շրջաններից մեկն է։ Կոլտնտեսությունների եկամուտների կեսից ավելին այստեղ ստացվում է անասնաբուծությունից։ Յոթ կոլտնտեսություններում ստեղծված են տոհմաբուծական ֆերմաներ։ Լոռու տոհմաբուծական սովետական տնտեսությունը տարիներ շարունակ բեղմնավոր աշխատանք է տանում խոշոր եղջերավոր անասունների նոր, բարձր մթերատու ցեղեր ստեղծելու ուղղությամբ։

Անցած տարիների ընթացքում կոլտնտեսությունները որոշ հաջողություններ են ձեռք բերել անասնաբուծական մթերքների, մասնավորապես կաթի արտադրության ավելացման ուղղությամբ։ 1956 թվականին կոլտնտեսություններում միջին հաշվով մեկ փուրաժային կովի կաթնատվությունը հասավ 1740 կիլոգրամի։ Որոշակի արդյունքներ են ձեռք բերվել անասունների ցեղի բարելավման գործում։

Ընթացիկ տնտեսական տարվա առաջին ամիսներին շրջանում անհրաժեշտ միջոցներ ձեռնարկվեցին կաթի արտադրությունն զգալի չափով ավելացնելու համար։

Ամենից առաջ անհրաժեշտ էր մեր կադրերին, անասնաբուծության բնագավառի բոլոր աշխատողներին համոզել, որ մեկ փուրաժային կովից միջին հաշվով 1700—1740 կիլոգրամ կաթ ստանալը շրջանի կոլտնտեսությունների համար վերջնական սահման չէ, որ մենք հնարավորություն ունենք և պետք է պայքարենք հասնելու ավելի բարձր ցուցանիշների։ Պարտիական կազմակերպությունների աշխատանքը առաջին շրջանում ուղղվեց այդ նպատակին։ Պետք է ասել, որ այդ գործում մենք հանդիպում էինք որոշակի դժվարությունների. ոչ միայն ներքին օղակներում, այլև կոլտնտեսային և նույնիսկ շրջանային առանձին ղեկավար աշխատողներ այն թերահավատ կարծիքին էին, թե հնարավոր չէ մեկ տարում կովի կաթնատվությունը հասցնել 2000 կիլոգրամի։

Պարտիական կազմակերպությունները շրջանի աշխատավորության հետ տարվող քաղաքական-մասսայական աշխատանքի միջոցով հավատ ներշնչեցին անասնապահներին՝ վստահ լինել սեփական ուժերի վրա և բոլոր հնարավորություններն ու ռեզերվներն օգտագործել անասնաբուծության մթերքների արտադրանքն ավելացնելու համար։

Այս տարվա անցած ամիսներին շրջանի անասնապահների ձեռք բերած հաջողությունները ոչ միայն փարատեցին թերահավատ մարդկանց տարակուսանքը, այլև շատ շատերին քաջալերեցին վերանայելու իրենց պարտավորու-

թյունները և պայքարելու յուրաքանչյուր կովի կաթնատվությունը 2250—2300 կիլոգրամի հասցնելու համար։

Շրջանի պարտիական կազմակերպությունների ամենակարևոր խնդիրներից մեկն էր անասնապահների մեջ սոցիալիստական մրցության ծավալումը։ Սոցմրցության պայմանագրեր կնքվեցին բոլոր անասնապահների, անասնապահական բրիգադների, ֆերմաների ու կոլտնտեսությունների միջև։ Շրջանը սոցիալիստական մրցության մեջ մտավ Ստեփանավանի շրջանի հետ։ Մենք դիմեցինք Վորոնեժի մարզի Ռոսսոշի շրջանի ընկերներին՝ առաջարկելով սոցմրցության պայմանագիր կնքել երկու շրջանների միջև։ Որոշ ժամանակ հետո մեզ սոցմրցության հրավիրեցին եղբայրական Վրաստանի Դմանիսիի և Բոգդանովկայի շրջանները։

Սոցիալիստական մրցությունը մասսայական դարձնելու համար պարտշրջկոմի բյուրոն մշակեց մրցության արդյունքներն ամփոփելու կարգ, որի համաձայն այդ ամփոփումը տասնօրյակը մեկ կատարվում է ֆերմաներում, իսկ ամիսը մեկ անգամ՝ (հաջորդ ամսվա առաջին օրերին) կոլտնտեսություններում։ Միջկոլտնտեսային մրցության արդյունքներն ամփոփվում են ներկայացուցիչների ամենամսյա փոխայցելության միջոցով։ Մրցակից կոլտնտեսության ներկայացուցիչները լինում են անասնապահական օբյեկտներում, ծանոթանում են մրցակիցների աշխատանքի հետ, ուսումնասիրում են նրանց փորձը, դիտողություններ անում։ Որպես կանոն ուսումնասիրության վերջում հրավիրվում է անասնապահների խորհրդակցություն մրցակից կոլտնտեսությունից եկած ընկերների և կոլտնտեսային ակտիվի մասնակցությամբ։ Այդ համատեղ խորհրդակցությունում տեղի է ունենում մտքերի աշխույժ փոխանակություն։ Արտահայտվող ընկերները խոսելով լավագույն անասնապահների դրական աշխատանքի, այն ընդօրինակելու մասին՝ միաժամանակ նշում են մրցակիցների թերությունները և խորհուրդներ տալիս դրանք վերացնելու համար։

ՀԿԴ շրջկոմը և աշխատավորների դեպուտատների շրջսովետը սահմանել են փոխանցիկ դրոշ՝ անասնաբուծության գծով առաջավոր կոլտնտեսության համար, որը հանձնվում է տվյալ ամսին ամենաբարձր ցուցանիշների հասած կոլտնտեսությանը։ Յուրաքանչյուր ամսվա վերջում շրջկոմի բյուրոյի և շրջսովետի գործկոմի համատեղ նիստում քննարկվում են մրցության արդյունքները և որոշում է կայացվում փոխանցիկ դրոշը հանձնելու մասին։

Ուսանելի է, որ պարտիական կազմակերպությունները ամփոփելով սոցիալիստական մրցության արդյունքները՝ ագիտատորների, պատի թերթերի և թերթիկների միջոցով այն մասսայականացնում են կոլտնտեսականների մեջ, ջանում են առաջավորների փորձն արմատավորել արտադրության մեջ։ Շրջկենտրոնում լույս է տեսնում ամենամսյա «Մրցության լուսամուտ», որտեղ սոցիալիստական մրցության ընթացքը լուսաբանվում է ընկերական շարժերի ձևով։

Սոցիալիստական մրցության հուրը հնարավոր է մշտապես բորբոքված պահել միայն այն դեպքում, երբ պարբերաբար դրվում են նոր խնդիրներ, առաջ են քաշվում նոր լոզունգներ, որոնց շուրջը պետք է համախմբել աշխատավորությանը։ Հնարավոր չէ լայնորեն կազմակերպել մրցությունը, եթե չեն առաջադրվում տվյալ ամսվա կամ եռամսյակի կոնկրետ խնդիրները։

Դեռևս հունվար ամսին Սարչապետ գյուղի Ցրունզեի անվան կոլտնտեսության ընդհանուր ժողովում, որը հրավիրված էր փոխանցիկ դրոշը այդ կոլտնտեսությանը հանձնելու առթիվ, կոլտնտեսականները հանդես եկան մի շարք առաջարկություններով և վերցրին հետևյալ պարտավորությունները՝ մինչև մայիսի 1-ը (մսուրային շրջանում) յուրաքանչյուր կովից ստանալ 1000 կիլոգրամ կաթ, կաթի համախառն արտադրանքի տարեկան պլանը կատարել ժամկետից երկու ամիս շուտ՝ օգոստոսի 1-ին։ Սարչապետցիները կոչով դիմեցին մյուս կոլտնտեսություններին՝ լայն պայքար սկսել անասնաբուծական մթերքների արտադրանքն ավելացնելու համար։



Շրջանի պարտիական կազմակերպությունները միահամուռ պաշտպանեցին այդ առաջարկությունները։ Սարչապետցիների կոչը քննության առնվեց բոլոր կոլտնտեսություններում։ Ամենուրեք ստանձնվեցին նույնանման պարտավորություններ։ Լայն պայքար ծավալվեց ամբողջ շրջանում սարչապետցիների օրինակով կաթի արտադրանքի տարեկան պլանը ժամկետից շուտ կատարելու համար։ Այդ պայքարը տվեց իր արդյունքը։ Մինչև մայիսի 1-ը շրջանի կոլտնտեսությունները յուրաքանչյուր կովից միջինը ստացան 1015 կիլոգրամ կաթ։ Շրջանի կոլտնտեսությունների կեսը, որոնց թվում ամենախոշոր անասնապահական տնտեսությունները մայիսի 1-ին արդեն յուրաքանչյուր կովից ստացել էին 1100—1200 կիլոգրամ կաթ։

Ուշագրավ է նաև հետևյալ օրինակը։ Մոլդավական ՍՍՌ Չադր-Լունգի շրջանի կոլտնտեսությունների հայրենասիրական նախաձեռնության քննարկման ժամանակ, Պրիվոլնոյեի Իլյիչի ավան կոլտնտեսության անասնապահները պարտավորվեցին մայիս, հունիս և հուլիս ամիսներին յուրաքանչյուր կովից ստանալ 1000 կիլոգրամ կաթ։ Իսկ այդ ամիսները Կալինինոյի շրջանի համար ամենապատասխանատու ամիսներն են, և աշխատանքի լավ կազմակերպման դեպքում այդ ամիսներին կարելի է հասնել լավագույն արդյունքների։ Այդ առնչությամբ հրավիրվեց շրջանի առաջավոր անասնապահների խորհրդակցություն, որը հավանություն տվեց Պրիվոլնոյեի կոլտնտեսականների վերցրած պարտավորություններին և կոչով դիմեց շրջանի անասնապահներին՝ մոբիլիզացնել բոլոր ուժերն ու հնարավորությունները նշված ամիսներին մեկ կովից 1000 կիլոգրամ կաթ ստանալու համար։

Չնայած կլիմայական անբարենպաստ պայմաններին՝ մայիս ամսում շրջանի կոլտնտեսություններում մեկ կովից ստացվեց 283 կիլոգրամ կաթ։ Սոցմրցման լայն ծավալման արդյունք եղավ այն, որ մինչև օգոստոսի 1-ը յուրաքանչյուր կովից ստացվեց 1607 կիլոգրամ կաթ, անցյալ տարվա 1198 կիլոգրամի դիմաց։

Սոցիալիստական մրցության ծավալման գործում չափազանց կարևոր նշանակություն ունեցան ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՌՄ կառավարության դիմումը՝ ուղղված գյուղատնտեսության աշխատողներին և համաժողովրդական հավանություն գտած պարտիայի առաջադրած լոզունգը՝ բնակչության մեկ շնչին ընկնող մսի, կաթի և յուղի արտադրությամբ մոտ տարիներս հասնել ԱՄՆ-ին, որոնք խոշոր քաղաքական ակտիվություն և արտադրական վերելք առաջացրին գյուղի բոլոր աշխատողների շրջանում։

Կալինինոյի շրջանում անասնաբուծության արտադրանքը զգալիորեն ավելացնելու համար ձեռնարկված միջոցառումների մեջ կարևոր տեղ է գրավում

կոլտնտեսականների նյութական շահագրգռվածության բարձրացման հարցը: Այդ նպատակով, կոլտնտեսություններում կիրառվող լրացուցիչ վարձատրության կարգից բացի, սահմանվել է նաև հետևյալ նոր կարգը: Եթե կթվորը կաթի արտադրության տվյալ ամսվա պլանը կատարում է 120 տոկոսից ավելի (առանձին կոլտնտեսություններում 130—140-ից), ապա նա գերակատարած տոկոսների չափով ստանում է դրամական պարգև: Օրինակ, եթե կթվորը պլանը կատարել է 128 տոկոսով, պարգևատրվում է 28 ռուբլով, 135 տոկոսով՝ 35 ռուբլով, 200 տոկոսով՝ 100 ռուբլով և այլն: Պարգևատրման գումարը կթվորուհուն է հանձնվում ամսվա արդյունքների ամփոփմանը նվիրված խորհրդակցությունում:

Խրախուսման այս կարգը հիանալի արդյունք է տալիս. կթվորներին շահագրգռում է ժամանակին կերակրելու և լավ խնամելու անասուններին, կիթը կատարելու զոոտեխնիկական կանոններով:

Կարելի է մտածել, թե նյութական շահագրգռության այդ մեթոդը կարող է անդրադառնալ կաթի ինքնարժեքի վրա: Բանն այն է, որ մեր շրջանի կոլտնտեսություններն այդ մեթոդը կիրառելու շնորհիվ հասնում են ինքնարժեքի զգալի կրճատման: Բերենք մի օրինակ. շրջանի կոլտնտեսություններում ըստ պլանի յուրաքանչյուր կթվորուհի իր խնամած կովերից ամսական պետք է ստանա 1500—2000 կիլոգրամ կաթ: Հաշվառումներ կատարելու համար պլանը վերցնենք 2000 կիլոգրամ: Եթե կթվորուհին ամսվա ընթացքում ստանում է 2500 կիլոգրամ կաթ, գերակատարելով պլանը 25 տոկոսով, պարգևատրվում է 25 ռուբլով: Գերակատարված յուրաքանչյուր կիլոգրամի դիմաց նա պարգևատրվում է 5 կոպեկով: Հասկանալի է, որ այդպիսի գերակատարումից ինքնարժեքը կարող է միայն զգալի չափով պակասել:

Մեր շրջանի Ղզըլշաֆակի կոլտնտեսությունում պարգևատրման այս մեթոդը կիրառվում է հունվար ամսից: Այդ կոլտնտեսության օրինակով կարելի է ցույց տալ, թե այս և մյուս միջոցառումների շնորհիվ ինչպես է ավելացել կովերի կաթնատվությունը:

1956 թվականի հոկտեմբերին Ղզըլշաֆակի կոլտնտեսությունն ստացել է 6,8 տոննա կաթ, նոյեմբերին՝ 5,5 տոննա, դեկտեմբերին՝ 10,5 տոննա, այս տարվա հունվարին՝ 18,6 տոննա, փետրվարին՝ 22,7, մարտին՝ 32,1 ապրիլին՝ 40, մայիսին՝ 48,5 տոննա կաթ:

Անցած անասնապահական տարվա հունվար ամսին մեկ կովի կաթնատվությունը կազմել է 69,9 կիլոգրամ, փետրվարին՝ 50 կիլոգրամ, մարտին՝ 77,9, ապրիլին՝ 80 ,մայիսին՝ 122,5 կիլոգրամ: Այս տարվա հունվարին մեկ կովի կաթնատվությունը եղել է 152,1 կիլոգրամ, փետրվարին՝ 187,1, մարտին՝ 269,7, ապրիլին՝ 323,8, մայիսին՝ 376,1 կիլոգրամ:

Ղզըլշաֆակի կոլտնտեսությունում դրամական պարգևատրության համար վերոհիշյալ ամիսներին բաց է թողնվել մոտ 3000 ռուբլի, որը փոխհատուցվել է կաթի արտադրության խոշոր ավելացման շնորհիվ:

Առաջավոր կթվորների խրախուսման այս մեթոդը չափազանց արդյունավետ է և մեզ թվում է, որ այն արժանի է ուշադրության:

Անասնաբուծության աշխատանքների բարելավման և մասնավորապես կաթի արտադրության ավելացման կարևորագույն պայմաններից մեկը զոոանասնաբուժական աշխատանքների լավագույն կազմակերպումն է, առանց



որի անասնապահության աշխատողների առջև դրված խոշոր և պատվավոր խնդիրները հնարավոր չէ կենսագործել:

Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ խոշոր անասնաբուծական կոլտնտեսություններում կովերի կենդանի քաշը 1953 թվականի համեմատությամբ ոչ միայն չի ավելացել, այլև զգալիորեն պակասել է: Այսպես, օրինակ, Մեդովկայի կոլտնտեսությունում կովերի կենդանի քաշը 1956 թվականին, 1953 թվականի համեմատությամբ, իջել է 15 կիլոգրամով, Բլագոդարնոյեի կոլտնտեսությունում՝ 55 կիլոգրամով, Կալինինոյի կոլտնտեսությունում՝ 18 կիլոգրամով, Սարատովկայի կոլտնտեսությունում՝ 30 կիլոգրամով: Դրա հետ միասին կոլտնտեսությունների մի մասում, նախորդ տարիների համեմատությամբ, 1956 թվականին պակասել է բարձրակիթ կովերի թիվը:

Այս բոլորը չէին կարող լրջորեն չանհանգստացնել շրջանի պարտիական և սովետական կազմակերպություններին, մանավանդ, եթե նկատի առնվի, որ շրջանում անասնապահությունը տոհմաբուծական թեքում ունի: Դրա համար էլ հարցը քննության առարկա դարձավ պարտիական ակտիվի ժողովում: Ստեղծված վիճակի ուսումնասիրությունից պարզվեց, որ կովերի տոհմական կազմի բարելավման ուղղությամբ տարվող աշխատանքներում տարիներ շարունակ թույլ է տրվել չափազանց լուրջ սխալ, վատ է կազմակերպվել հորթերի խնամքը և կերակրումը: Մինչև կաթից կտրելը հորթերը սովորաբար լինում են շատ լավ վիճակում, կաթից կտրելուց հետո նրանք կերակրվում են միայն չոր խոտով, այն էլ անբավարար քանակությամբ: Այսպիսով, իր զարգացման ամենալավագույն ժամանակաշրջանում հորթը չի ստանում անհրաժեշտ քանակությամբ սնունդ և աստիճանաբար կորցնում է ժառանգած լավագույն հատկությունները: Նրա խնամքը քիչ թե շատ բավարար է լինում, երբ այն արդեն երինջ է:

Պարտիայի շրջանային կոմիտեն անհրաժեշտ միջոցառումներ ձեռնարկեց այդ թերությունը վերացնելու համար: Բոլոր կոլտնտեսությունների վարչությունների և պարտիական կազմակերպությունների ուշադրությունը հրավիրվեց հորթերի խնամքի բարելավման հարցի վրա: Ուժեղացվեց հսկողությունը այդ գործի նկատմամբ: Հորթերի խնամքը զգալի չափով բարելավվեց հատկապես Լոռվա տոհմաբուծական սովետական տնտեսության անասնապահների փորձի հետ ծանոթանալուց հետո:

Այդ օրինակով հորթերի խնամքը սկսեցին բարելավել Սարատովկա, Ղզըլշաֆակ, Պրիվոլնոյե և մյուս գյուղերի կոլտնտեսություններում: Ձմեռվա ամիսներին մատղաշները ստացան որոշ քանակությամբ խտացրած կեր, սիլոս: Ավելի հետևողականորեն կիրառվեց հորթերին ցրտին վարժեցնելու մեթոդը:

Սակայն պետք է խոստովանել, որ շրջանի կոլտնտեսությունների անասնապահական ֆերմաներում տարվող տոհմաբուծական աշխատանքը դեռևս շատ հեռու է բավարար լինելուց: Ռեսպուբլիկական կազմակերպությունները, մասնավորապես Հայկական ՍՍՌ Գյուղատնտեսության մինիստրությունը համարյա անուշադրության են մատնել աշխատանքի այդ կարևոր բնագավառը: Կան շատ հարցեր, որոնք կարող են լուծվել միայն ռեսպուբլիկական օրգանների միջամտությամբ: Որպես օրինակ կարելի է բերել սիմենտալ ցեղի կովերի զարգացման հարցը: Հայտնի է, որ այդ ցեղի կովերը տալիս են շատ կաթ, մ{ս և կարող են ակլիմատիզացիայի ենթարկվել Հայաստանի մի շարք

շրջաններում։ Մեր շրջանում սիմենտալ կովեր ունեն Բլագոդարնոյեի, Սարատովկայի, Կալինինոյի և Նովոսելցովոյի կոլտնտեսությունները։

Եթե ռեսպուբլիկայում սիմենտալ ցեղի կովերի զարգացման հարցը առաջիկայում չլուծվի, մեր շրջանի տոհմաբուծական կոլտնտեսությունները կկանգնեն որոշ դժվարությունների առաջ՝ կովերի այդ ցեղի հետագա զարգացման գործում։ Անհրաժեշտ է նշել նաև, որ Հայկական ՍՍՌ Գյուղատնտեսության մինիստրությունն անբավարար օգնություն է կազմակերպում իր ենթակայության այնպիսի կարևոր տնտեսության նկատմամբ, ինչպիսին է Ստեփանավանի պետական տոհմաբուծարանը։ Այդ տոհմաբուծարանը իր բնույթով ռեսպուբլիկայում միակն է։ Այնտեղ աշխատում են իրենց գործի հիանալի էնտուզիաստներ, բազմամյա փորձ և վաստակ ունեցող մասնագետներ, որոնք Ստեփանավանի և Կալինինոյի շրջաններում բեղմնավոր աշխատանք են կատարում անասունների ցեղի բարելավման և ընդհանրապես անասնաբուծության զարգացման հարցերի լուծման ուղղությամբ։

Տոհմաբուծական աշխատանքների կազմակերպման առնչությամբ անհրաժեշտ ենք համարում բարձրացնել մեկ հարց ևս, որի դրական լուծումն զգալիորեն կօգնի ռեսպուբլիկայում անասնաբուծության վիճակը աստիճանաբար, բայց հաստատուն կերպով բարձրացնելու գործին։

Հայտնի է, որ ռեսպուբլիկայի շրջանների մեծ մասում կովերի ցեղային կազմի բարելավման ուղղությամբ տարիներ շարունակ անբավարար աշխատանք է կատարվել, որի հետևանքով բազմաթիվ կոլտնտեսություններ շարունակում են պահել տեղական, ո՛չ բարձր մթերատու անասուններ։ Բնական է, որ անասնապահության զարգացման հեռանկարային հարցերում որոշող տեղ պետք է գրավի կովերի ցեղային կազմի բարելավումը։ Իսկ այդ հարցը կարող է լուծվել ամենից առաջ ռեսպուբլիկայի ներսում տոհմաբուծական աշխատանքը հիմնավորապես բարելավելու միջոցով։

Պետք է խոստովանել, որ մեր կարծիքով չափազանց կարևոր այս հարցը տարիներ շարունակ վրիպել է ռեսպուբլիկական համապատասխան կազմակերպությունների ուշադրությունից և այդ ուղղությամբ պլանավորված հետևողական աշխատանք չի կատարվել, տոհմաբուծական գործը փաստորեն չի ղեկավարվել և այն ամբողջությամբ թողնվել է միայն կոլտնտեսությունների վրա։

Մեր մի շարք կոլտնտեսություններ ցեղային կովերի գնումները կատարել են և շարունակում են կատարել մեծ մասամբ մյուս ռեսպուբլիկաներից, որոնց բնակլիմայական պայմաններին սովորած կովերի մի մասը մեր ռեսպուբլիկայի պայմաններին չեն դիմանում, որից կոլտնտեսությունները խոշոր վնաս են կրում։ Մինչդեռ այդ հարցը հնարավոր է կարգավորել մեր ռեսպուբլիկայի անասնապահական տոհմաբուծական տնտեսությունների միջոցով։ Սակայն այդ գործի կազմակերպմանը խանգարում է այն, որ տոհմաբուծական-անասնապահական ֆերմաներ ունեցող կոլտնտեսությունները մսի պետական գնումների նույնպիսի առաջադրանքներ են ստանում, ինչպիսին տոհմաբուծական անասնապահական ֆերմաներ չունեցող կոլտնտեսությունները, և անասունների զգալի մասը հանձնում են որպես մսացու։ Մեր կարծիքով դա մեր ռեսպուբլիկայի պայմաններում, հարցի խելոք լուծումը չէ։ Հենց միայն այն բանը, որ այդ տնտեսությունները կոչվում են տոհմաբուծական, ամեն ինչ ասում է նրանց հիմնական խնդրի մասին, այն է՝ աճեցնել ցեղական մատղաշներ և



մատակարարել մյուս կոլտնտեսություններին։ Բայց այդ խնդիրը մեր շրջանի տոհմաբուծական անասնապահական ֆերմաներ ունեցող կոլտնտեսությունները հնարավորություն չունեն լուծելու։ Բավական է բերել հետևյալ օրինակը։ Շրջանի տոհմաբուծական ֆերմաներ ունեցող յոթ կոլտնտեսություններում կա մոտ 3000 ցեղական կով, որոնցից տարեկան ստացվում է առնվազն 2500 գլուխ հորթ, մինչդեռ նրանցից անցյալ տարի մեր ռեսպուբլիկայի կոլտնտեսությունները գնել են ընդամենը 94 գլուխ, այն էլ միայն ցուլիկներ։

Ինչո՞վ բացատրել այս։ Բանն այն է, որ վաճառքի միջոցով իրացված ցեղային անասունների քաշի միայն կեսն է հաշվվում պետգնման դիմաց, այսինքն՝ 100 կիլոգրամ քաշ ունեցող հորթը վաճառելու դեպքում կոլտնտեսության պետգնման պլանի հաշվին գրանցվում է միայն 50 կիլոգրամ։ Հետևաբար, կոլտնտեսությունը պետգնման իր առաջադրանքը կատարելու համար, եթե նա վաճառում է ցեղական անասուն, պետք է ելք անի կրկնակի անգամ ավել անասուն։

Բոլորովին այլ կարգ գոյություն ունի Լոռվա տոհմաբուծական սովետական տնտեսությունում։ Այնտեղ վաճառքի հանված ցեղական անասունները ձևակերպում են մսի հանձնման դիմաց 1:1 հարաբերությամբ։ Մի քանի տարի առաջ նման կարգ կիրառվել է նաև կոլտնտեսություններում։ Բացի դա, տոհմաբուծական ֆերմաներ ունեցող կոլտնտեսություններին պետական տոհմաբուծարանը մատակարարել է խտացրած կեր, մասնավորապես քուսպ։

Ռեսպուբլիկայում անասնաբուծության վերելքի խնդիրը պահանջում է, որ համապատասխան կազմակերպությունները քննության առարկա դարձնեն այս հարցը և որոշում ընդունեն վերականգնելու ցեղական անասունների վաճառքի՝ նախկինում գոյություն ունեցող միանգամայն ճիշտ կարգը։

Եթե այդպիսի որոշում ընդունվի, միայն մեր շրջանի տոհմաբուծական անասնապահական ֆերմաներ ունեցող կոլտնտեսությունները յուրաքանչյուր տարի ռեսպուբլիկայի մյուս շրջաններին կարող են տալ 1000—1500 գլուխ ցեղական անասուն։ Դա մեծ չափով կօգնի մեր ռեսպուբլիկայում անասնաբուծության զարգացման հեռանկարային հարցերի լուծմանը։

Այս կապակցությամբ անհրաժեշտ է առաջ քաշել ևս մի հարց։ Վերջերս շրջանային օրգանների քննարկմանը ներկայացվեց ռեսպուբլիկայի գիտահետազոտական կազմակերպությունների կողմից մշակված գյուղատնտեսության հեռանկարային պլանը, որի նպատակն է՝ ելնելով տարբեր զոնաների բնակլիմայական սպեցիֆիկ պայմաններից՝ ռեսպուբլիկայի տերիտորիայում կազմակերպել գյուղատնտեսության մասնագիտացում։ Մեր կարծիքով դրա կարիքը վաղուց էր զգացվում մեր ռեսպուբլիկայում, և այժմ այդ նախաձեռնությունը պետք է ողջունել։ Միաժամանակ պետք է նշել, որ այդ աշխատանքում կան լուրջ թերություններ, և դա հետևանք է այն բանի, որ նրանում չեն ներգրավվել արտադրության աշխատողները։

Չխորանալով այդ աշխատանքի վերլուծության մեջ՝ անհրաժեշտ ենք համարում մի էական առաջարկություն անել։ Հիշյալ աշխատանքի համաձայն Կալինինոյի շրջանում անասնաբուծությունը պետք է ունենա կաթնա-ապրանքային ուղղություն, այլ կերպ ասած՝ անասնաբուծությունը մեզ մոտ պետք է մասնագիտացվի կաթի արտադրության գծով։ Վերևում շարադրված դիտողությունների համաձայն մենք առաջարկում ենք Կալինինոյի շրջանում անասնաբուծության պրոֆիլը համարել ոչ միայն ապրանքային կաթի արտադրում,

այլ նաև տոհմաբուծություն։ Ինքնըստինքյան հասկանալի է, որ տոհմաբուծական աշխատանքը ոչ միայն չի բացառում ապրանքային կաթի ստացումը, այլև զգալի չափով օժանդակում է դրան։

Այժմ գյուղատնտեսության աշխատողների առջև դրված կարևոր խնդիրներից ամենաառաջնայինը անասնաբուծական մթերքների արտադրության ավելացումն է։ Այս խնդրի լուծման շուրջը պետք է կենտրոնանա գյուղական պարտիական, սովետական կազմակերպությունների, կոլտնտեսությունների վարչությունների ամբողջ ուշադրությունը, կազմակերպական աշխատանքը։

Կալինինոյի շրջանի պարտիական ու սովետական կազմակերպությունները անհրաժեշտ ուշադրություն դարձնելով անասնաբուծության աշխատողների արտադրական խանդավառության բարձրացմանը և նրանց ստանձնած պարտավորությունների հաջող կատարմանը՝ արդեն հասել են որոշ արդյունքների։ Այս տարի մինչև հունիսի 1-ը յուրաքանչյուր կովից, անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ, ավել է ստացվել 362 կիլոգրամ կաթ և յուրաքանչյուր կովի կաթնատվությունը հասել է 1303,2 կիլոգրամի։

Յուրաքանչյուր ոչխարից գարնանային խուզի ժամանակ, անցյալ տարվա առաջին խուզի համեմատությամբ, ավել է ստացվել 300 գրամ բուրդ։ Այս տարի ոչխարների անկումն անցյալ տարվա համեմատությամբ կրճատվել է 3 անգամ։

Շրջանի կոլտնտեսությունները պարտավորվել են այս տարի, անցյալ տարվա համեմատությամբ ավել արտադրել 28000 ցենտներ կաթ, կամ յուրաքանչյուր 100 հեկտար հողատարածության դիմաց կաթի արտադրությունն ավելացնել 100 ցենտներով։ Եթե անցյալ տարի 100 հեկտար հողատարածության դիմաց ստացվել է 179 ցենտներ կաթ, ապա այս տարի այն պետք է հասնի 280 ցենտների։ 100 հեկտար հողատարածության հաշվով մսի արտադրությունը պետք է հասցվի 40 ցենտների։ Է՛լ ավելի լուրջ պարտավորություններ են ստանձնված 1958 թվականի համար։ Շրջանի կոլտնտեսությունները պարտավորվել են 1958 թվականին յուրաքանչյուր 100 հեկտար հողատարածության դիմաց ստանալ 350 ցենտներ կաթ և մեկ կովի կաթնատվությունը հասցնել 3000 կիլոգրամի, այսինքն՝ 1956 թ. համեմատությամբ ավելացնել 1260 կիլոգրամով։

Հասկանալի է, որ այս խնդիրը չի կարելի կատարել առանց բոլոր ուժերի մոբիլիզացման և աշխատանքների հմուտ կազմակերպման։

Շրջանում ստանձնած պարտավորությունների անթերի կատարման համար արոտային վերջին ամիսներին (օգոստոս, սեպտեմբեր) յայլաղներում կպատրաստվի որոշ քանակի սիլոս, կկազմակերպվի անասունների կերակրում կանաչ մասսայով և խտացրած կերով։

Լուրջ ուշադրություն է դարձվում ոչխարաբուծության զարգացման հարցերին։ Այժմ շրջանում պլանից ավելի կա մոտ 2000 գլուխ ոչխար։ Այս տարի, անցյալ տարվա համեմատությամբ, կրկնակի անգամ ավելի շատ խոզի միս կարտադրվի։

Դեռևս մարտ ամսից որոշակի միջոցառումներ են ձեռնարկվել եկող անասնապահական տարվա համար անհրաժեշտ քանակությամբ կեր կուտակելու ուղղությամբ։ Պարտիական կազմակերպությունների կողմից խնդիր է առաջ քաշվել՝ «Ստեղծել անհրաժեշտ կերի բազա՝ 1958 թ. յուրաքանչյուր կովից 3000 կիլոգրամ կաթ ստանալու համար»։ Կոլտնտեսություններում զգալի չափով



ավելացել է եգիպտացորենի ցանքատարածությունը և այն հասել է 860 հեկտարի, որի բերքը ամբողջությամբ օգտագործվելու է որպես սիլոսային մասսա։ Որոշ չափով ավելացվել են նաև արմատապտուղների ցանքատարածությունները։ Այս տարի բարձր որակով և ժամանակին կատարվեցին կարտոֆիլի ցանքը և նրա առաջին մշակության աշխատանքները։ Շրջանի կոլտնտեսություններում շուրջ 1000 հեկտար տարածության վրա այս տարի առաջին անգամ ակադեմիկոս Լիսենկոյի մեթոդով՝ օրգանա-հանքային կոմբինացված պարարտանյութերի օգտագործմամբ կատարվեց կարտոֆիլի և եգիպտացորենի ցանք։ Նախատեսվում է յուրաքանչյուր կովի համար պահանջվող քանակի կոշտ կերից բացի ունենալ 8—9 տոննա սիլոս, որի մոտ կեսը եգիպտացորենի, մեկ տոննա արմատապտուղ և մեկ տոննա կարտոֆիլ։

Այս բոլոր միջոցառումները հնարավորություն կտան ապահովել ստանձնած պարտավորությունների կատարումը և պատվով դուրս գալ սոցիալիստական մրցությունից։

Սոցիալիստական մրցության կազմակերպման ու անասնապահների արտադրական խանդավառությունը գլխավորելու գործում խիստ կարևոր նշանակություն ունի ստանձնած պարտավորությունների կատարման ընթացքի սիստեմատիկ լուսաբանումը ռեսպուբլիկական մամուլում։ Մեզ համար անհասկանալի է այն հանգամանքը, թե ինչո՛ւ ռեսպուբլիկական թերթերը չեն լուսաբանում միջշրջանային մրցությունների ընթացքը։ Կամ ինչո՞ւ կաթի արտադրության մասին վերջերս պարբերաբար տպագրվող ամփոփագրերը կազմվում են այբբենական կարգով և ոչ ըստ գրաված տեղի։ Չէ՞ որ այդ մոմենտը նույնպես կարևոր նշանակություն ունի։ Մեր կարծիքով անասնապահների մրցությունը շատ ավելի արդյունավետ կլինի, եթե ռեսպուբլիկայի մասշտաբով արդյունքներն ամփոփվեն ոչ թե տարին մեկ անգամ, այլ եռամսյակը մեկ անգամ։ Վատ չէր լինի, եթե սահմանվեր փոխանցիկ դրոշ տվյալ եռամսյակում լավագույն ցուցանիշների հասած շրջանների համար։ Գուցե և կարելի է մշակել խրախուսման նոր, ավելի նպատակահարմար միջոցներ։

ՍՄԿԿ Կենտկոմը և ՍՍՌՄ կառավարությունը գյուղի աշխատավորության առաջ դրել են քաղաքական խոշոր նշանակություն ունեցող հայրենասիրական խնդիր՝ առաջիկայում հասնել Ամերիկայի Միացյալ Նահանգներին՝ մեկ շնչին ընկնող անասնաբուծական մթերքների արտադրության գործում։

Կալինինոյի շրջանի պարտիական և սովետական կազմակերպությունների պատվի գործն է՝ կազմակերպել և գլխավորել աշխատավորության համաժողովրդական պայքարը պարտիայի և կառավարության այդ պատասխանատու առաջադրանքը պատվով կատարելու համար։

# ՇԵՐԱՄԱՊԱՀՈՒԹՅԱՆ ՀԵՏԱԳԱ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՀԱՄԱՐ

Ս. ՆՇԱՆՅԱՆ

*Շերամապահությունը և շերամի թթենու մշակությունը Հայաստանում հայտնի է շատ հին ժամանակներից։ Նրա մշակության պատմական ժամանակաշրջանը հաշվվում է 5-ից 6-րդ դարերից։ Հայաստանում սովետական կարգեր հաստատվելուց հետո ավելի արագ կերպով զարգացավ շերամապահությունը և շերամի թթենու մշակությունը։ Բարելավվեց շերամի խնամքը և բարձրացավ բոժոժի բերքատվությունը։*

*Եթե Հայաստանում 1922 թվականին կերակրվել է 800 տուփ գրենա և ստացվել է 18 600 կիլոգրամ բոժոժ, կամ մեկ տուփ գրենայից 23,2 կիլոգրամ, ապա 1956 թվականին կերակրվել է 3 100 տուփ գրենա և ստացվել է 171 780 կիլոգրամ բոժոժ, կամ մեկ տուփից՝ 55,4 կիլոգրամ։ 1922 թվականի համեմատությամբ 1956 թվականին բոժոժի համախառն արտադրանքը մեր ռեսպուբլիկայում ավելացել է 9,2 անգամ, իսկ յուրաքանչյուր տուփ գրենայից բոժոժի արտադրությունը ավելացել է 2,4 անգամ։*

*Հայաստանում շերամապահության մեջ իր արժանավոր տեղն է գրավում Մեղրու շրջանը, որտեղ 1932 թվականին կազմակերպվեց գրենայի արտադրությունը, որի համար կառուցվեց 3 գրեն-գործարան։ Շրջանում լուրջ ուշադրություն են դարձնում շերամի որդի լավագույն խնամքին, որի հետևանքով ապահովվում է բարձրորակ գրենայի արտադրությունը։ Մեղրու գրենան հանդիսանում է Միության լավագույն գրեններից մեկը և այն արտահանվում է ինչպես Սովետական Միության տարբեր ռեսպուբլիկաներ, այնպես էլ արտասահման։ Շրջանի շերամապահությամբ զբաղվող 10 կոլտնտեսությունն էլ սերմաբուծական են։ Աշխատանքային 35—40 օրվա ընթացքում կոլտնտեսություններն ստանում են 2—2,5 միլիոն ռուբլի եկամուտ, որը շերամապահական կոլտնտեսությունների դրամական եկամուտի 18—22 տոկոսն է կազմում։ Շրջանի պարտիական և սովետական կազմակերպությունների ձեռնարկած միջոցառումների շնորհիվ տարեց-տարի շրջանի կոլտնտեսություններում ընդարձակվում է շերամապահությունը, բարձրանում է բոժոժի բերքատվությունը և որակը։*

*Եթե 1946 թվականին շրջանի շերամապահությամբ զբաղվող 10 կոլտնտեսությունները կերակրել են 565 տուփ գրենա, յուրաքանչյուր մեկ տուփ գրենայից ստացել են 59,1 կիլոգրամ բոժոժ և ունեցել են 1 միլիոն 291 հազար ռուբլի դրամական եկամուտ, ապա 1956 թվականին կերակրել են 620 տուփ գրենա և յուրաքանչյուր տուփից ստացել են 80,3 կիլոգրամ բոժոժ։ 1956 թվականին կոլտնտեսությունները շերամապահությունից ստացել են 2 միլիոն 282 հազար 258 ռուբլի եկամուտ։*

*Շրջանի առանձին կոլտնտեսություններ, բրիգադներ, օղակներ ավելի լուրջ ուշադրություն դարձնելով շերամապահության զարգացմանը, ստացել են*



*ավելի բարձր և որակով բերք, որի շնորհիվ եռապատկվել է կոլտնտեսությունների ստացած դրամական եկամուտները։*

*1956 թվականին բոժոժի բարձր բերք ստացան հատկապես Գուդեմնիս, Կարճևան, Մեղրի, Վարդանաձոր, Լեհվազ, Շվանիձոր, Կուրիս գյուղերի կոլտնտեսությունները և բարձր ցուցանիշներով կատարեցին պետության բոժոժի հանձնման պլանը։ Նշված կոլտնտեսություններում մի շարք բրիգադներ ու օղակներ բոժոժի ավելի բարձր բերք ստացան։ Այսպես, օրինակ, շրջկենտրոնի Ստալինի անվան կոլտնտեսության առաջավոր բրիգադավար, գյուղատնտես ընկ. Խ. Խաչատրյանի ղեկավարած բրիգադան 1956 թվականին խնամել է 31 տուփ գրենա, յուրաքանչյուր տուփից ստացել է 96 կիլոգրամ բոժոժ, Ա. Օհանյանի ղեկավարած բրիգադան՝ 93 կիլոգրամ, Ս. Աղամալյանի ղեկավարած օղակը յուրաքանչյուր տուփ գրենայից ստացել է 100 կիլոգրամ բոժոժ։ Բոժոժի բարձր բերք ստացան Գուդեմնիսի Միկոյանի անվան կոլտնտեսության՝ Աղամալյանի, Մարտիրոսյանի, Կարճևանի «Կոմսոմոլեց» կոլտնտեսության՝ Հ. Աղամալյանի, Բ. Մաթևոսյանի, Շվանիձորի Շահումյանի անվան կոլտնտեսության՝ Թալիբովի ղեկավարած բրիգադները։*

*Շերամապահության եկամտաբերության մասին պատկերացում ունենալու համար բերենք հետևյալ աղյուսակը.*

| Կոլտնտեսություններ | Խնամած գրենայի տուփերի քանակը | Մեկ տուփ գրենայից ստացված բոժոժի քանակը կ. գրամով | 1. կ. գրամ բոժոժի վրա ծախսված աշխօրը | 1 կ. գրամ բոժոժի միջին արժեքը ռուբլով | Շերմապահությունից ստացած դրամական եկամուտը (ռուբլիներով) |
|---|---|---|---|---|---|
| Մեղրիի կոլտնտեսություն . . . . | 196 | 89,8 | 0,72 | 52,41 | 922487 |
| Նյուվադիի » . . . . . | 59 | 69 | 1,59 | 39 73 | 156607 |
| Շվանիձորի » . . . . . | 55 | 80 | 1,45 | 50,8 | 223917 |
| Ալդարայի » . . . . . | 55 | 74 | 1,44 | 46,1 | 187860 |
| Կարճևանի » . . . . . | 50 | 77 | 1,03 | 51,11 | 197141 |
| Կուրիսի » . . . . . | 22 | 72,6 | 0,83 | 45,4 | 71553 |
| Գուդեմնիսի » . . . . . | 18 | 80 | 1,04 | 47,1 | 66889 |
| Վարհավարի » . . . . . | 26 | 71,7 | 1,12 | 41,22 | 70985 |
| Լեհվազի » . . . . . | 77 | 85,9 | 0,72 | 40,62 | 230672 |
| Վարդանաձորի » . . . . | 62 | 69,7 | 1 | 38,12 | 154200 |
| Ընդամենը | 620 | 80,3 | 0,99 | 47,21 | 2283160 |

*Պրակտիկան ցույց է տվել, որ կոլտնտեսություններում շերամապահությունից բարձր եկամուտ ստանալու առաջին կարևոր պայմանը հանդիսանում է էլիտային — սերմացուի և սորտային բոժոժի ավելի բարձր տոկոսի ապահովումը։*

*Սերմացու և տեսակավոր բոժոժի արտադրանքը տարեց-տարի ավելացնելու, երկրին ավելի բարձր որակի բոժոժ տալու հարցը հանդիսանում է Մեղրու շրջանի պարտիական, սովետական կազմակերպությունների և կոլտնտեսային աշխատավորության հիմնական խնդիրը։ Ձեռնարկված մի շարք միջոցառումների շնորհիվ անցյալ տարիների համեմատությամբ բարելավվել է բարձր որակի սպիտակացեղ բոժոժի սորտային կազմը և բարձրացել նրա բերքատվությունը։ 1956 թվականին կոլտնտեսությունների կողմից խնամած բարձրորակ սպիտակացեղ ճապոնական և չինական բոժոժի արտադրանքի մեջ 88 տոկոսից ավելին կազմում է տեսակավոր։*

Լուրջ հաջողությունների են հասել շրջանի գրենայի գործարանները, որոնք գրենայի արտադրության պլանները գերակատարելու համար վերջին 3 տարում սիստեմատիկաբար հանդիսանում են Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսի թեկնածուներ։ Բարձր որակի գրենայի արտադրության և ինքնարժեքի իջեցման գործում ձեռք բերված հաջողությունների համար գործարանը ՍՍՌՄ Գյուղատնտեսության մինիստրության և գյուղատնտեսության աշխատողների պրոֆմիության կողմից ծավալված սոցիալիստական մրցության մեջ 1955 թվականին շահեց երկրորդ կարգի մրցանակ։ Բայց, չնայած այն բանին, որ Մեղրու շրջանը հանդիսանում է բարձրորակ սերմացու և ցեղացու գրենայի արտադրության շրջան, ՀՍՍՌ-ի Գյուղատնտեսության մինիստրությունը միանգամայն սխալ կերպով 1951 թվականին Մեղրու շրջանից հանեց ցեղացու գրենայի արտադրությունը և Երևանում կազմակերպեց ցեղացու գրենայի արտադրության կայան, որը ոչ եկամտաբեր է և պետությունից տարեկան ստանում է 300 000 ռուբլի դոտացիա։ Տարեց-տարի պակասեցվում է նաև Մեղրու շրջանի գրենայի գործարանի արտադրության պլանը, որի պատճառով էլ կոլտնտեսությունների արտադրած բարձրորակ սերմացու բոժոժը չի ընդունվում որպես այդպիսին և արհեստական կերպով դարձվում է առաջին կարգի բոժոժ, որի պատճառով էլ կոլտնտեսությունները կրում են խոշոր վնաս։

Մեղրու շրջանում շերամապահությունն էլ ավելի զարգացնելու, նրա եկամտաբերությունը բարձրացնելու նպատակով, անհրաժեշտ է Երևանի Գրենայի գործարանը և շերամապահության ցեղացու կայանը օգտագործել այլ նպատակների համար, համապատասխանաբար ավելացնելով Մեղրու շրջանի Գրենայի գործարանի և կոլտնտեսությունների աշխատանքի ծավալը, որով կոլտնտեսությունները կստանան 600—800 հազար ռուբլի լրացուցիչ եկամուտ, իսկ պետությունը՝ բարձրորակ բոժոժի գրենայի հումք և տարեկան կունենա 300 000 ռուբլի տնտեսում։

Շերամապահությունից բարձր եկամուտ ստանալու մյուս աղբյուրը հանդիսանում է բոժոժի արտադրության ավելացումը և նրա վրա գործադրվող աշխատանքի կրճատումը։ Մեղրու շրջանի կոլտնտեսություններում արտադրվող բոժոժի որակի բարելավման հետ միասին, ավելանում է նաև յուրաքանչյուր տուփ գրենայից ստացվող բոժոժի քանակը, պակասեցվում է նրա վրա գործադրվող աշխատանքը։ Եթե 1930 թվականին մեկ տուփ գրենայից ստացվել է ցածր որակի 51 կիլոգրամ բոժոժ, ապա 1956 թվականին ստացվեց 83,3 կիլոգրամ սպիտակացեղ բարձր որակի բոժոժ։

Շերամապահության զարգացման և բարձր որակի բոժոժ ստանալու հիմնական պայմանները, որոնց համար պայքարում են շրջանի պարտիական, սովետական կազմակերպությունները և կոլտնտեսությունները, հանդիսանում են կերապաշարի ավելացումը, նրա խնամքով ու ճիշտ օգտագործումը, շերամորդի կերակրման դարակների առկայությունը և աշխատանքի ճիշտ կազմակերպումը։

Այդ նպատակով շրջանային կոմիտեի, սկզբնական պարտիական կազմակերպությունների ու կոլտնտեսությունների վարչությունների ձեռնարկած միջոցառումների շնորհիվ յուրաքանչյուր տարի շրջանում տնկվում է 80—100 հազար թթենու հատատունկ և 4—5 հեկտար թթենու պլանտացիա։ Բարելավվում է թթենու մշակությունը։ Յուրաքանչյուր տարի 1—2 անգամ փխրեցվում



է թթենիների բունը, 2—3 անգամ տրվում է հանքային և տեղական պարարտանյութ և սիստեմատիկաբար կազմակերպվում է նրա ջրումը։

Թթենու տերևի մասսան ավելացնելու գործում կարևոր նշանակություն ունի վայրի թթենիների պատվաստումը կուլտուրական սորտերով։ Այդ նպատակով ամեն տարի կատարվում է ավելի քան 60—70 հազար թթենու աչքապատվաստ։ Թթենու տերևատվությունը բարձրացնելու գործում կարևոր նշանակություն ունեն նաև նրա ճիշտ օգտագործումը, ճյուղեր կտրատելու եղանակը և ձևը։ Եթե ծառի ճյուղերը կտրում են ոչ մասնագիտորեն, և չեն ձևավորում բունցքաձև, այն անպայման ազդում է հաջորդ տարվա տերևատվության վրա։

Թթենու նոր տնկարանները տնկանյութով ապահովելու համար շերամապահական կոլտնտեսությունները ամեն տարի կատարում են թթենու ցանք։

Շերամապահության աշխատանքները ճիշտ կազմակերպելու, աշխատանքի վարձատրումը ըստ արտադրանքի որակի ու քանակի կատարելու, շերամորդի խնամքի համար նպաստավոր պայմաններ ստեղծելու և մասնագիտական ղեկավարությունը բարելավելու ուղղությամբ կառուցվել և վերանորոգվել են տիպային նոր շերամատներ, ձեռք են բերվել մեծ քանակությամբ կերակրման դարակներ։ Վերջին տարիներում մի շարք կոլտնտեսություններում կառուցվել են երկհարկանի շերամատներ։ Մեղրու Ստալինի անվան կոլտնտեսությունը վերջին 3 տարում կառուցել է նման երկհարկանի 5 շերամատուն, որտեղ խնամվում է 100 տուփ գրենա։ Կարճևանի «Կոմսոմոլեց» կոլտնտեսությունը՝ 2 շերամատուն, Ալդարայի Պարտիայի XVIII համագումարի անվան, Կուրիսի «Կարմիր Հոկտեմբեր» և ուրիշ կոլտնտեսություններում կառուցված են մեկական շերամատներ։ Խնդիր է դրված, որ մինչև 1960 թվականը բոլոր կոլտնտեսություններն ունենան անհրաժեշտ քանակությամբ տիպային շերամատներ, դարակներ և շերամի խնամքի համար այլ անհրաժեշտ պարագաներ։

Մեղրու Ստալինի անվան կոլտնտեսությունը, որը լուրջ ուշադրություն է դարձնում շերամապահության զարգացման վրա, խնամած շերամորդի 80 տոկոսից ավելին պահում է ընդհանուր շերամատներում, շերամի որդը լրիվ կերպով կերակրվում է դարակակալների վրա, խիստ կերպով նվազեցված են օժանդակ ծախսերը։ Այստեղ մեկ կիլոգրամ բոժոժի արտադրության վրա 1956 թվականին ծախսվել է 0,72 աշխօր։ Իսկ Նյուվադիի «Կրմզի սահրադ» կոլտնտեսությունում, որտեղ շերամապահության համար չկան անհրաժեշտ հարմարություններ և օժանդակ աշխատանքների վրա կատարվել են մեծ ծախսեր, մեկ կիլոգրամ բոժոժի արտադրության վրա ծախսվել է 1,59 աշխօր։ Ալդարայի XVIII պարտհամագումարի անվան կոլտնտեսությունում՝ 1,44 աշխօր և այլն։

Շերամապահության զարգացման գործում կարևոր նշանակություն ունի կոլտնտեսականների անձնական շահագրգռվածության բարձրացումը։ Շերամապահության բնագավառում աշխատողների անձնական շահագրգռվածությունը բարձրացնելու նպատակով նրանց վարձատրումը կատարվում է ըստ արտադրանքի որակի և քանակի։ Շրջանի կոլտնտեսություններում միջին հաշվով մեկ կիլոգրամ սերմացու բոժոժ արտադրելու դեպքում շերամապահին տրվում է 0,9 աշխօր, տերև փոխադրողին՝ 0,44 աշխօր, առաջին տեսակի բոժոժի դեպքում շերամապահին տրվում է 0,75 աշխօր, տերև փոխադրողին՝

0,27 աշխօր, իսկ խոտան և տականք բոժոժի մեկ կիլոգրամի համար՝ 0,11 աշխօր։

Շատ և բարձր որակով բոժոժ ստանալու դեպքում ավելանում են շերամապահի վաստակած աշխօրերը և կրկնապատկվում ու եռապատկվում է նրա ընդհանուր եկամուտը։ Մեղրու կոլտնտեսության շերամապահ Ո. Փեցյանը իր խնամած շերամի յուրաքանչյուր տուփ գրենայից 1956 թվականին ստացավ 108,4 կիլոգրամ բոժոժ, որի 46,9 տոկոսը սերմացու։ Նա աշխատանքային 35 օրվա ընթացքում վաստակեց 71 աշխօր և ստացավ 820 ռուբլի դրամական պարգև։ Մ. Խանոյանը մեկ տուփ գրենայից ստացավ 124,4 կիլոգրամ բոժոժ, որի 27,2 տոկոսը սերմացու, վաստակեց 72 աշխօր և ստացավ 1200 ռուբլի դրամական պարգև։ Վ. Շահբազյանի օղակը 3 տուփ գրենայից ստացավ 284 կիլոգրամ բոժոժ, վաստակեց 112 աշխօր և ստացավ 2311 ռուբլի դրամական պարգև։ Նման ձևով բարձր եկամուտ են ստացել նաև շրջանի մյուս կոլտնտեսությունների առաջավոր շերամապահները։

1956 թվականին բոժոժի մթերման պլանը 11,2 տոկոսով գերակատարելու համար շրջանի կոլտնտեսությունները դրամական պարգև-հավելում ստացան 196 767 ռուբլի, այդ թվում Մեղրու Ստալինի անվան կոլտնտեսությունը՝ 126 311 ռուբլի, Կարճևանի «Կոմսոմոլեց» կոլտնտեսությունը՝ 21 366 ռուբլի, Շվանիձորի Շահումյանի անվան կոլտնտեսությունը՝ 28 909 ռուբլի, իսկ աշխատավորների դեպուտատների շրջանային Սովետի գործադիր կոմիտեն՝ 36 հազար ռուբլի, որից 20 հազար ռուբլի գումարով գնվեց դարակակալներ և բաժանվեց շերամապահական կոլտնտեսություններին, իսկ մնացած գումարը տրվեց շրջանի պարտիական, սովետական աշխատողներին, գյուղատնտեսության մասնագետներին, որոնք ակտիվ կերպով մասնակցել էին շրջանում շերամապահության զարգացմանը և պլանների գերակատարմանը։

Շերամապահության մեջ աշխատանքի արտադրողականության բարձրացման գործում կարևոր պայման է հանդիսանում օղակային և բրիգադային սիստեմի ամրացումը։ Վերջին տարիներում ընդարձակ շերամատների կառուցումը հնարավորություն է տվել շերամի որդը պահել օղակներով և բրիգադներով։ Շերամապահական օղակը (կազմված 6—8 կոլտնտեսականներից) խնամում է 3-ից 5 տուփ գրենայի շերամորդ. որդին 1, 2, 3 հասակներում խնամելիս օղակի անդամների մի մասը կոլտնտեսությունում կատարում է այլ աշխատանքներ և միայն 4-րդ հասակից օղակի բոլոր անդամները զբաղվում են որդերի խնամքի գործով։ Օղակային սիստեմով աշխատելու ժամանակ օժանդակ աշխատանքների վրա ավելի քիչ աշխօր է ծախսվում և ռացիոնալ կերպով է օգտագործվում թթենու տերևը։

Շերամապահությունից բարձր եկամուտ ստանալու համար կարևոր նշանակություն ունի ագրոկոմպլեքսի ճիշտ կատարումը, որի վրա լուրջ ուշադրություն են դարձնում շրջանի պարտիական, սովետական կազմակերպությունները և կոլտնտեսությունների վարչությունները։ Հայտնի է, որ շերամի որդը զարգանում է չափազանց արագ կերպով, նա իր կյանքի 25—30 օրում ավելանում է 8000—10000 անգամ։ Օրգանիզմի նման զարգացման և աճման տեմպերը պահանջում են անհրաժեշտ պայմաններ և լավագույն խնամք, գործիմացություն և ջանասեր աշխատանք։ Շերամորդի լավ զարգացումը ապահովելու համար լուրջ ուշադրություն է դարձվում շերամատների օդի պահանջ-



վելիք ջերմաստիճանի և խոնավության պահպանման, շերամորդի ժամանակին կերակրման և նորմալ խտության վրա։

Բոժոժի բարձր բերք ստանալու պայմաններից մեկն էլ հանդիսանում է շերամորդի համար բոժոժ հյուսելու լավագույն պայմանների ստեղծումը։

Մեղրու շրջանում, որպես բոժոժակալ օգտագործվում են վայրի խոտաբույսեր, բայց նպատակահարմար է բոժոժակալներ պատրաստել թղթից, որը ավելի մաքուր է և որի վրա հյուսած բոժոժի կորուստը լինում է քիչ։ Գյուղատնտեսության մինիստրությունը պետք է հոգ տանի և առաջիկայում շերամապահական կոլտնտեսություններին ապահովի թղթով, որպեսզի տեղում պատրաստվեն բոժոժակալներ։

Շերամապահության զարգացման և բարձր որակով բոժոժ ստանալու համար տեղի պայմաններին համապատասխան պետք է բարձր բերքատու և արդյունաբերության համար լավագույն հումք տվող շերամորդի նոր ցեղեր ստեղծվեն։

Սովետական Միությունում շերամապահությամբ զբաղվող մի շարք ռեսպուբլիկաներում ստեղծվել են շերամի նոր ցեղեր, որոնք տվյալ տնտեսական շրջանի կլիմայական պայմաններում տալիս են բարձր բերք, բայց Հայաստանում տեղի պայմաններին համապատասխանող շերամի նոր ցեղեր դեռ չեն ստեղծվել։ Մեղրու շրջանի կոլտնտեսություններում մի շարք ուրիշ ցեղերի հետ միասին, վերջին տարիներում, պահվում է նաև սպիտակ ցեղի չինական և ճապոնական բոժոժ։ Չնայած 1953 թվականի համեմատությամբ, 1956 թվականին յուրաքանչյուր տուփ գրենայից ստացվող բոժոժի արտադրանքը 50 տոկոսով ավելացել է և 1953 թվականին մեկ տուփ գրենայից ստացված 60 կիլոգրամի դիմաց 1956 թվականին ստացվել է 84 կիլոգրամ չինական և 95 կիլոգրամ ճապոնական սպիտակաթել բոժոժ, սակայն այդ ցեղի շերամի որդը ունի մի շարք թերություններ՝ դանդաղաշարժ է, ավելի նուրբ է ու պահանջկոտ, չի հարմարվում մեր բնակլիմայական պայմաններին և այլն։ Մեր գիտնականները պետք է առաջիկա տարիներում ստեղծեն մեր ռեսպուբլիկայի պայմաններին համապատասխան շերամի նոր ցեղեր, որոնք լինեն քիչ պահանջկոտ և շատ արտադրանք տան։

Շերամապահության զարգացման գործում խոշոր դեր ունեն կատարելու մասնագետ կադրերը։ Շերամապահությունը լավագույն, գործիմաց կադրերով ապահովելու նպատակով Մեղրու շրջանի կոլտնտեսություններում ամեն տարի կազմակերպվում են շերամապահների պատրաստման և վերապատրաստման կարճատև դասընթացներ, որտեղ մասնագետ հրահանգիչները պլանավորված կերպով պարապմունքներ են անցկացնում շերամապահների հետ և ապահովում նրանց ուսուցումը։ Բացի այդ, շերամի որդի խնամքի ժամանակ հին, փորձված շերամապահների հետ աշխատանքի են նշանակվում նոր երիտասարդ շերամապահներ, որոնք նրանց օգնությամբ խորացնում են իրենց գիտելիքները և դառնում որակյալ մասնագետներ։

Շերամապահության զարգացման և բոժոժի որակի բարելավման ուղղությամբ ձեռք բերած հաջողությունների համար Մեղրու շրջանի կոլտնտեսականներից՝ Լենինի շքանշանով պարգևատրվել են 2 հոգի, Կարմիր Դրոշի շքանշանով՝ 3 հոգի, Աշխատանքի արիության ու գերազանցության համար մեդալներով՝ 18 հոգի։

Բացի այդ, շերամապահության բնագավառում ձեռք բերած բարձր ցու-

ցանիշների համար բազմաթիվ կոլտնտեսություններ ամեն տարի մասնակցում են գյուղատնտեսական ցուցահանդեսին։ 1955 թվականից Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսին մասնակցել են 71 հոգի, որից 29-ը պարգևատրվել են ոսկյա և արծաթյա մեդալներով ու թանկարժեք իրերով։ Մեղրու Ստալինի անվան կոլտնտեսությունը երրորդ տարին է, ինչ լայն ցուցադրման կարգով մասնակցում է Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսին և արժանանում է երկրորդ կարգի դիպլոմի ու պարգևատրվում ապրանքատար ավտոմեքենայով։

ՍՄԿԿ XX համագումարի կողմից հաստատված վեցերորդ հնգամյա պլանի Դիրեկտիվներում սահմանված է, որ վեցերորդ հնգամյակում շերամապահության արտադրանքը ավելացնել 1,8 անգամ։ Ելնելով դրանից, նախատեսված է Հայաստանում 1960 թվականին արտադրել 250 տոննա բոժոժ, այդ թվից 56 տոննան Մեղրու շրջանում։ Շրջանի պարտիական, սովետական կազմակերպությունները, կոլտնտեսությունների ընդհանուր ժողովները քննարկելով XX համագումարի որոշումները, մշակել են կոլտնտեսությունների և շրջանի գյուղատնտեսության զարգացման վեցերորդ հնգամյա պլանը։ Շրջանում շերամապահության աշխատանքները ավելի լավ կազմակերպելու և 1960 թվականի համար սահմանված շերամապահության պլանը կատարելու և գերակատարելու համար 15 հեկտարով ընդարձակվելու է թթենու պլանտացիաները, կատարվելու է 300 հազար թթենու հատատունկ, է՛լ ավելի է բարելավվելու թթենու մշակությունը, կոլտնտեսություններում կառուցվելու են տիպային շերամատներ։ Շրջանի պարտիական, սովետական կազմակերպություններն ու կոլտնտեսությունները պարտավորվել են 1957 թվականին պետությանը հանձնել 50 տոննա բարձր որակի բոժոժ և դրանով կատարել բոժոժի հանձնման 1958 թվականի պլանը։

---

# ԱՎԵԼԻ ՇԱՏ ՃԱԿՆԴԵՂ

## Վ. ՊՈՂՈՍՅԱՆ

Սպիտակի շրջանի պարտիական կազմակերպությունները և կոլտնտեսային աշխատավորությունը գործի վերածելով ՍՄԿՊ XX համագումարի որոշումները, իրական պայքար են ծավալում գյուղատնտեսական բոլոր կուլտուրաների, և առաջին հերթին շաքարի ճակնդեղի բերքատվությունը բարձրացնելու համար։ Ճակնդեղը շատ կարևոր և թանկարժեք կուլտուրա է։ Նրա պլանտացիաներից բարձր բերք ստանալ՝ այդ նշանակում է ավելացնել յուրաքանչյուր շնչին ընկնող շաքարի քանակը, ավելացնել կոլտնտեսությունների դրամական եկամուտները, դրանով իսկ ավելացնել կոլտնտեսականների աշխօրերին բաժանելիք դրամը և հաստատուն կերպով պայքարել կոլտնտեսականների բարեկեցիկ կյանքի համար։ Ճակնդեղագործությունը շրջանի էկոնոմիկայի մեջ որոշիչ տեղ է գրավում. շրջանում ցանվում է 1500 հեկտար ճակնդեղ։

Այս խորը համոզմունքով ճակնդեղագործները, մեխանիզատորները և բոլոր կոլտնտեսականները երկրին ավելի շատ շաքարի հումք տալու ջերմ ցանկությամբ հայրենասիրական աշխատանքի լավագույն օրինակներ են տալիս։ Օր-օրի վրա աճում է բարձր բերքի վարպետների թիվը։ Բարձր բերքի վարպետների հռչակ են ձեռք բերել մանավանդ Սարահարթի Չկալովի անվան կոլտնտեսության ճակնդեղագործները։ Արդեն հինգերորդ տարին է, որ նրանք ռեսպուբլիկայում ամենից բարձր բերք են հավաքում։ Սարահարթցիները երեք անգամ հաստատվել են Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսի թեկնածու և համաժողովրդական փորձի այդ մեծ դպրոցում ներկայացվել լայն ցուցադրման կարգով։ Վերջին 3 տարում մի քանի տասնյակ առաջավոր ճակնդեղագործներ եղել են Մոսկվայում, դիտել են Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսը։ Տասը տարուց ավելի է, որ կոմունիստ Ս. Մարկոսյանի ղեկավարած դաշտավարական № 2 բրիգադան ոչ միայն մեր շրջանում, այլև ռեսպուբլիկայում ստանում է շաքարի ճակնդեղի ամենաբարձր բերքը։ Վերջին հինգ տարիների ընթացքում ընկ. Մարկոսյանը անընդհատ բարձրացնելով բերքատվությունը՝ միևնույն հողատարածությունից կրկնակի չափով ավելի բերք է ստացել։ Այսպես, եթե 1951 թվականին նա մեկ հեկտարից ստացել է 251 ցենտներ ճակնդեղ, ապա 1952 թվականին՝ 350 ցենտներ, իսկ 1955 և 1956 թվականներին բրիգադան իր հողատարածության յուրաքանչյուր հեկտարից ստացել է 508 և ավելի ցենտներ ճակնդեղ։ Ինչպես Սարահարթի կոլտնտեսությունում, այնպես էլ ամբողջ շրջանում գովեստով են խոսում կոմունիստ ճակնդեղագործուհիներ Բ. Գրիգորյանի, Ն. Քարամյանի մասին։ Անվանի կոլտնտեսական Բ. Գրիգորյանը արդեն 20 տարի է, ինչ ղեկավարում է ճակնդեղագործական օղակը։ Նա երեք անգամ մասնակցել է Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսին, պարգևատրվել Լե-

կե մեղալով և թանկարժեք նվերներով։ Նրա ղեկավարած օղակի առաջավոր փորձի մասին 2 անգամ բրոշյուր է տպագրվել, ուր նկարագրվել է իր և իր ընկերուհիների կատարած աշխատանքը, նրանց հայրենասիրական գործերը։

Միշտ լինելով առաջավորների շարքերում՝ իրենց փորձի մասին հարևան կոլտնտեսությունների ճակնդեղագործների մոտ զեկուցումով հանդես են եկել ճակնդեղագործ-օղակավարուհիներ՝ Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատ Ա. Բարիկյանը, Ա. Վարդերեսյանը, Վ. Ջանազյանը և ուրիշները։ Այս տարի առաջավոր ու անվանի օղակավարուհիներն ստանձնել են նոր, ավելի բարձր պարտավորություններ՝ յուրաքանչյուր հեկտարից ստանալ 600-ական ցենտներ շաքարի ճակնդեղ։ Նրանք կկատարեն իրենց խոստումը, որովհետև Սարահարթի բոլոր կոլտնտեսականներն աշխատում են աղնվորեն և օրինակելի են մշակում ճակնդեղի պլանտացիաները։

Պարտիական կազմակերպությունը խորապես գիտակցելով, որ կոմունիստի տեղն այնտեղ է, ուր անմիջականորեն արտադրվում են նյութական բարիքներ, 44 կոմունիստներից 42-ը աշխատանքի է ուղարկել արտադրության մեջ։ Պարտիականների օրինակին են հետևել նաև կոմերիտականները, որոնք մեծ սիրով են աշխատում ոչ միայն ճակնդեղի պլանտացիաներում, այլև տնտեսության բոլոր ճյուղերում։

Երկու տարի առաջ այլ պատկեր գոյություն ուներ Մ. Պարնիի Շահումյանի անվան կոլտնտեսությունում։ Այստեղ տարիներ շարունակ չէին կատարվում շաքարի ճակնդեղի բերքատվության պլանային առաջադրանքները, չնայած որ բարձր բերք ստանալու համար կային բոլոր պայմանները։

Մեծ Պարնիի կոլտնտեսությունն առաջավորներին հասցնելը դարձավ պարտիայի շրջանային կոմիտեի մտահոգության խնդիրներից մեկը։ Կոլտնտեսության էկոնոմիկան մանրամասն ուսումնասիրելուց հետո շրջկոմի բյուրոյում քննարկվեց Մեծ Պարնիի կոլտնտեսության վիճակը։ Պարզվեց, որ կոլտնտեսությունում կադրերը ճիշտ չեն դասավորված, խիստ ընկած է աշխատանքային կարգապահությունը, լրիվ չափով չի օգտագործվում աշխատող ձեռքերը, աշխատանքի կազմակերպումն իր բարձրության վրա չի դրված։ Շրջկոմի որոշումից հետո սկզբնական պարտիական կազմակերպությունը 45 կոմունիստից 43-ը, իսկ կոմերիտական կազմակերպությունը 120 կոմերիտականներից 118-ը ուղարկեցին արտադրության մեջ անմիջական աշխատանքի, ընդ որում մեծագույն մասը դաշտավարության բնագավառում։

Շաքարի ճակնդեղի մշակությունը դարձավ պարտիական կազմակերպության և կոլտնտեսության վարչության ուշադրության կենտրոնը։ Կոմպլեկտավորվեցին ճակնդեղագործական օղակները։ Վերանայվեց օղակների կազմը և այնտեղ աշխատանքի ուղարկվեցին առավել փորձված, ագրոտեխնիկան լավ իմացող կոլտնտեսուհիներ։ Այս ամենի շնորհիվ կոլտնտեսությունը շաքարի ճակնդեղի բերքատվության բարձրացման գործում հասավ գոհացուցիչ արդյունքների։ 1956 թվականին կոլտնտեսությունը 170 հեկտարից, պլանով նախատեսված 32 հազար ցենտներ ճակնդեղի փոխարեն մթերակայան հանձնեց 52 հազար ցենտներ բերք։ Դաշտավարական այն բրիգադան, որի բրիգադիրն է պարտկազմակերպության քարտուղար ընկ. Ն. Բաղալյանը, 34 հեկտար շաքարի ճակնդեղի պլանտացիաների ամեն մի հեկտարից ստացավ 352 ցենտներ բերք։ Բարձր ու կայուն բերք ստացան նաև կոմունիստներ



Ա. Ղոչիկյանի, Ս. Շահբազյանի, Ա. Քոսյանի ղեկավարած դաշտավարական բրիգադաները։

Կոլտնտեսությունում միայն ճակնդեղագործությունից ստացված եկամուտը հասավ 1,5 միլիոն ռուբլու, որից 300 հազար ռուբլի որպես պարգև հավելում։ Այս գումարի մի զգալի մասը բաժանվեց առաջավոր ճակնդեղագործներին։ 20 ճակնդեղագործ օղակավարուհիները որպես դրամական պարգև ստացան 100 հազար ռուբլի։ Առավել աչքի ընկնող օղակավարուհիներ Լ. Գասոյանը, Մ. Դալլաքյանը, Ռ. և Պ. Նազարյանները և ուրիշներ միայն ճակնդեղագործության գծով վաստակած աշխօրերի դիմաց ստացան 5—6 հազարական ռուբլի։ Ակներև է, որ շաքարի ճակնդեղի բերքատվության բարձրացումը ոչ միայն ավելացրեց կոլտնտեսության դրամական եկամուտը, այլև ռեալ հնարավորություններ ստեղծեց տնտեսության մյուս ճյուղերի բարձրացման համար։

Վերցնենք, թեկուզ, այսպիսի բնորոշ փաստ։ Այն ժամանակ, երբ կոլտնտեսությունը չէր կատարում պլանտացիաների բերքատվության պլանը, խիստ ետ էր մնում նաև անասնաբուծությունը, երբեք չէին կատարվում կովերի կաթնատվության պլանային առաջադրանքները։ Իսկ երբ շատ շաքարի ճակնդեղ արտադրվեց, իր հերթին ավելացավ և հյութալի կերի պաշարը։ Սկսած սեպտեմբեր ամսից կովերին կերակրում են ճակնդեղի կանաչ թփերով, իսկ այնուհետև, անասունները գրեթե մինչև արոտի դուրս բերելը, հանձնած ճակնդեղի դիմաց շաքարի գործարանից ստանում են արժեքավոր հյութալի կեր՝ մզուքը։ Անցած տարի պարնեցիներն առաջին անգամ կովերի կաթնատվության պլանային առաջադրանքները գերակատարեցին և յուրաքանչյուր կովից ստացան պլանից ավել 300 կիլոգրամ կաթ։

Պայքարելով յուրաքանչյուր 100 հեկտար հողատարածությունից 100 ցենտներ միս և 400 ցենտներ կաթ տալու համար՝ Շահումյանի անվան կոլտնտեսության աշխատավորներն այս տարվա առաջին կեսում արդեն ապահովել են ֆերմայի 350 կովի համար սահմանված կաթնատվության տարեկան պլանային առաջադրանքը։

Ներկայումս Շահումյանի անվան կոլտնտեսությունը դարձել է առաջավոր, ուր կատարելագործելով տնտեսության ղեկավարման ձևերն ու մեթոդները՝ միաժամանակ աշխատանքի կազմակերպման լավագույն օրինակ է տրվում նաև հարևան գյուղերի կոլտնտեսություններին։

Հարևան, ինչպես և մրցակից կոլտնտեսություններից միշտ առաջ անցնելու ջերմ ձգտումով են համակված նաև Արտագյուղի կոլտնտեսականները։ Երկու տասնյակ տարի է, ինչ նրանք շաքարի ճակնդեղ են մշակում և միշտ գերակատարել են բերքատվության պլանային առաջադրանքը։ Բայց, ահա, անցած տարի ետ մնացին ամենամոտ հարևանից՝ Մեծ Պարնիի կոլտնտեսությունից։ Այդ չէր կարող չանհանգստացնել սկզբնական պարտիական կազմակերպությանը և կոլտնտեսության վարչությանը։ Անցած տարվա նոյեմբերին պարտիական կազմակերպությունը քննարկեց շաքարի ճակնդեղի բերքահավաքի արդյունքները և 1957 թվականին բարձր բերք ստանալու խնդիրը։ Պարտիական ժողովում ելույթ ունեցող ընկերները նշեցին, որ կոլտնտեսությունում ռեզերվներ ու հնարավորություններ շատ կան, բայց դրանք ինչպես հարկն է չեն օգտագործվում։ Մասնավորապես խնդիր դրվեց հողի նախացանքային մշակությունը լավագույն կերպով կազմակերպել, մեխանիզացիան

ավելի լայն չափերով կիրառել, հանքային ու տեղական պարարտանյութերը լրիվ չափով օգտագործել և ոռոգման ժամկետները չխախտել։

Այս տարվա ցանքի սկզբին պարտկազմակերպությունը նորից անդրադարձավ շաքարի ճակնդեղի ցանքի ու մշակության գործի կազմակերպման հարցերին։ Ժամանակին կոմպլեկտավորվեցին օղակները, դաշտավարական բրիգադաներում աշխատանքի ուղարկվեցին հողագործության լավ փորձ ունեցող կոմունիստներ ու անպարտիական ակտիվիստներ։ Ցանքը կատարվեց ժամկետին։ 160 հեկտար պլանտացիայի վրա դեռ նոր էին նշմարվում ճակնդեղի բույսերի զույգ տերևները, երբ կոլտնտեսությունն սկսեց մակերեսի փխրեցումը, որին և հաջորդեցին նոսրացման աշխատանքները։

Սակայն շաքարի ճակնդեղը չափազանց պահանջկոտ է հողի նկատմամբ, նրան պետք է լրացուցիչ սնուցում տալ։ Սովետական առաջավոր ագրոնոմիական գիտության նվաճումներով և սեփական փորձով կոլտնտեսականները համոզվել են, որ պլանտացիաներից առավել բարձր բերք է ստացվում, երբ հողին տրվում է օրգանական և հանքային պարարտանյութերի խառնուրդ։ Գյուղի մոտերքի գոմերում գոմաղբ չկար, այն ամբողջությամբ տրված էր հողին։ Բայց գյուղից հեռու գտնվող փարախներն ու աղլները լիքն էին այդ արժեքավոր պարարտանյութով։ Կարելի էր այն տեղափոխել ճակնդեղի դաշտերը։ Այդպես էլ արվեց։ Պարտիական կազմակերպության քարտուղար Ե. Ոսկանյանը, որը միաժամանակ № 1 դաշտավարական բրիգադայի բրիգադիրն է, առաջինն սկսեց պարարտանյութի փոխադրման աշխատանքը։ Պարտիական կազմակերպության քարտուղարի նախաձեռնությունն ընդօրինակվեց բոլոր կոլտնտեսականների կողմից, և մեծ քանակությամբ գոմաղբ ավտոմեքենաներով ու սայլերով տեղափոխվեց ճակնդեղի պլանտացիաները։

Արտագյուղացիների օրինակը համակեց նաև մեր մյուս ճակնդեղագործ կոլտնտեսություններին։ Ջիգդամալի, Քարաձորի կոլտնտեսությունները հետևելով արտագյուղցիների օրինակին՝ կազմակերպել են տասնյակ տարիներով կուտակված գոմաղբի տեղափոխումը ճակնդեղի ցանքադաշտերը։

Շաքարի ճակնդեղի բերքատվության բարձրացման մեծ հնարավորություններ ունեն նաև Ծաղկաշենի, Նալբանդի, Ջրաշենի, Լուսաղբյուրի, Գողթանի, Ղուրսալիի, Լեռնանցքի կոլտնտեսությունները, որոնք վերջին տարիներս չեն կատարել ճակնդեղի բերքատվության պլանային առաջադրանքը։ Ինչպես ասացինք, բարձր բերք ստանալու նախապայմանը պարարտացումն է։ Իսկ պարարտանյութը մեզ մոտ անսպառ է։ Մինչդեռ վերը նշված կոլտնտեսություններում այս կարևոր հանգամանքի վրա շատ քիչ ուշադրություն են դարձնում։ Պարարտացման մեծագույն աղբյուր է նաև տորֆը։ Դրա անսպառ պաշարներ կան ինչպես Նալբանդ, Ջրաշեն, Թափանլի, այնպես էլ շրջանի մյուս գյուղերում։ Նալբանդ գյուղի «Հոկտեմբեր» կոլտնտեսությունը անցյալ տարի 50 հեկտար ճահիճ է չորացրել և, բացի այդ, այս տարվա գարնանից ձեռնամուխ է եղել դաշտերը տորֆով պարարտացնելու գործին։ Կասկած չկա, որ առաջիկայում այդ աշխատանքը լայն ծավալ կստանա նաև մյուս կոլտնտեսություններում։ Բարձր բերք ստանալու համար կան բոլոր երաշխիքները, մնում է, որ խելացիորեն օգտագործվեն եղած հնարավորություններն ու ռեզերվները։ Ասել, թե Սպիտակի շրջանում ամեն ինչ արվում է, որպեսզի նվազագույն միջոցների ծախսումով հասնենք լավ արդյունքների, ճիշտ չէր լինի։ Այսպես, օրինակ, Ջրաշենի կոլտնտեսությունը 1956 թվականին հեկտարից



205 ցենտների փոխարեն ստացել է 140 ցենտներ բերք։ Մեկ ցենտներ ճակնդեղի ինքնարժեքը կազմել է 38 ռուբլի, մինչդեռ կոլտնտեսությունը մթերակայան հանձնած ամեն մի ցենտների դիմաց ստացել է 21 ռուբլի, և այդ այն դեպքում, երբ Ջրաշենի կոլտնտեսությունը ունի հողակլիմայական բոլոր բարենպաստ պայմանները։ Միայն աշխատանքի վատ կազմակերպումով պետք է բացատրել, որ Ջրաշենում շաքարի ճակնդեղի մեկ հեկտարի դրամական եկամուտը կազմեց 2,2 հազար ռուբլի, երբ Սարահարթում կազմել է ավելի քան 10 հազար ռուբլի։ Ջրաշենի կոլտնտեսության գործերի այս վիճակը չէր կարող չանհանգստացնել սկզբնական պարտկազմակերպությանը և պարտիայի շրջկոմին։ Բերքահավաքն ավարտվելուց հետո պարտշրջկոմի բյուրոյում լսվեց սկզբնական պարտկազմակերպության հաշվետվությունը։ Վերանայվեցին ու տեղաբաշխվեցին կոմունիստների ուժերը, նշանակվեցին դաշտավարական երկու նոր գործիմաց բրիգադիրներ։ Շրջկոմի բյուրոն Ջրաշենի կոլտնտեսությանն օգնելու նպատակով այնտեղ ուղարկեց շրջկոմի պլենումի անդամներ Ս. Ուստյանին, Ս. Գալստյանին և ՄՏ կայանի մասնագետներին։ Նրանք կազմակերպական աշխատանքի հետ միասին կոլտնտեսականների շրջանում լայնորեն պարզաբանեցին ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի՝ «Շաքարի ճակնդեղի և շաքարի արտադրությունն ավելացնելու միջոցառումների մասին» 1956 թվականի հունիսին ընդունած որոշումը։

Այժմ Ջրաշենում վիճակը փոխվել է։ Այս գարնանը ջրաշենցիք սեղմ ժամկետում և որակական բարձր ցուցանիշներով ավարտեցին ճակնդեղի ցանքը, մակերեսային փխրեցումն ու նոսրացումը։

Ելնելով Վորոնեժցիների փորձից, շրջանի կոլտնտեսություններում առաջին անգամ կիրառվեց մշակության ժամանակ լավագույն աշխատողներին խրախուսելու մեթոդը, լողունգ ունենալով բույսերի նոսրացումը կատարել 5 օրում։ Նոսրացումը հաջողությամբ ավարտող ամեն մի ճակնդեղագործ պարգևատրվեց 200 ռուբլով։ Այս տարի շրջանում առաջին անգամ կիրառվում է ցանքերի քառակուսի բնային մշակության եղանակը։ Միայն Վորոշիլովի անվան կոլտնտեսությունում նոր եղանակով մշակվում է 50 հեկտար ճակնդեղի ցանք։

Ներկայումս ինչպես ճակնդեղագործները, այնպես էլ Սպիտակի շաքարի գործարանի կոլեկտիվը համակված են մեկ միասնական ձգտումով՝ արտադրական արժանավայել նվերներով դիմավորել Մեծ Հոկտեմբերի 40-ամյակը։

Սոցիալիստական մրցության մեջ մտնելով եղբայրական Վրաստանի Ագարայի շաքարի գործարանի կոլեկտիվի հետ՝ Սպիտակի շաքարագործները պարտավորվել են սահմանված ժամկետից մեկ ամիս շուտ ավարտել մեքենաների ու սարքավորումների նորոգումները, բազմակողմանիորեն պատրաստել արտադրական սեզոնը, մինչև նոյեմբերի 7-ը կատարել շաքարի արտադրության տարեկան պլանը։ Ավելի բարձր պարտավորություններ են ստանձնել երիտասարդ կոմունիստներ, ինժեներներ Հ. Գևորգյանի, Մ. Հովսեփյանի ղեկավարած հերթափոխությունները, որոնք լրիվ օգտագործելով իրենց կարողությունները՝ խնդիր են դրել մինչև նոյեմբերի 7-ը պլանից դուրս արտադրել 800 ցենտներ շաքար։

Շաքարագործները ջերմորեն հավանություն տալով արդյունաբերության ու շինարարության ղեկավարման կազմակերպումը կատարելագործելու մասին պարտիայի ու կառավարության որոշումներին՝ պարտավորվել են իրենց

*հնարավորություններն օգտագործել առավել արդյունավետ, իջեցնել շաքարի ինքնարժեքը և միջոցների նվազագույն ծախսումով հայրենիքին ավելի շատ շաքար տալ։*

*Նոր է մեր ռեսպուբլիկայի շաքարի արդյունաբերության առաջնեկը, սակայն այստեղ աճել են շաքարագործների հրաշալի կադրեր, որոնք լավ գիտեն արտադրության տեխնոլոգիական պրոցեսները։ Եվ եթե անցած արտադրական սեզոնում վերամշակվել է 72 հազար տոննա շաքարի ճակնդեղ, ապա այս տարվա արտադրական սեզոնում կվերամշակվի ոչ պակաս քան 80 հազար տոննա, իսկ 1960 թվականին՝ 90 հազար տոննա։*

*Պատվով կատարելով Հայաստան—Կիրգիզիա, Սպիտակ—Ախուրյան սոցիալիստական մրցությամբ ստանձնած պարտավորությունները՝ Սպիտակի շրջանի գյուղատնտեսության բնագավառի աշխատողները կգործադրեն բոլոր ջանքերը, կդնեն շաքարի ճակնդեղի բարձր բերքի հաստատուն հիմքերը և արտադրական արժանավայել նվերներով կդիմավորեն Մեծ Հոկտեմբերի 40-ամյակը։*

---

# ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ՄԹԵՐՔՆԵՐԻ ԻՆՔՆԱՐԺԵՔԻ ԻՋԵՑՄԱՆ ՀԱՄԱՐ

*Ն. ՎԻՐԱԲՅԱՆ*

*Կոլտնտեսությունները կազմակերպորեն ու տնտեսապես էլ ավելի ամրապնդելու և գյուղատնտեսական մթերքների արտադրությունը շեշտակիորեն բարձրացնելու նպատակով Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը վերջին տարիներում ձեռնարկեցին մի շարք կարևոր միջոցառումներ։ Այդ միջոցառումների թվին են պատկանում գյուղատնտեսության պլանավորման նոր կարգը, գյուղատնտեսական մթերքների մթերման ու գնման գների զգալի բարձրացումը, կոլտնտեսություններն ու ՄՏ կայանները մասնագետներով և ձեռնհաս, կազմակերպչական ունակություններ ունեցող ղեկավարներով ապահովելը, գյուղին ավելի շատ կատարելագործված մեքենաներ ու գործիքներ մատակարարելը և այլն։*

*Գյուղատնտեսության պլանավորման նոր կարգի արմատավորումը կոլտնտեսություններին հնարավորություն տվեց գյուղատնտեսական կուլտուրաների ցանքերը, անասնաբուծության հետագա զարգացումը պլանավորելիս հաշվի առնել եղած հնարավորությունները և հողակլիմայական պայմանները, որը և խոշոր չափով նպաստեց բերքատվության բարձրացմանը և անասնաբուծական մթերքների արտադրության ավելացմանը։*

*Վեդու շրջանի Արարատի ՄՏ կայանի կողմից սպասարկվող մի շարք կոլտնտեսություններ անցյալ տարի որոշակի հաջողությունների հասան գյուղատնտեսական մթերքների, հատկապես հացահատիկի, խաղողի, բամբակի ու կաթի արտադրությունը ավելացնելու գործում։ Այսպես, օրինակ, եթե 1955 թվականին գոտու կոլտնտեսությունները ստացել են 21 780 ցենտներ հացահատիկի համախառն բերք, կամ յուրաքանչյուր հեկտարից 14,4 ցենտներ, ապա 1956 թվականին հացահատիկի համախառն բերքը եղել է 32 280 ցենտներ, կամ յուրաքանչյուր հեկտարից՝ 19 ցենտներ։ Բամբակենու ցանքատարածությունների յուրաքանչյուր հեկտարից 1956 թվականին, 1955 թվականի համեմատությամբ, 4,5 ցենտներով ավելի բամբակի հումք է ստացվել։ Զգալի չափով բարձրացել է խաղողի այգիների բերքատվությունը, որի շնորհիվ խաղողի բերքը անցյալ տարի 737 տոննայով գերազանցեց 1955 թվականին ստացված բերքը։*

*Անցյալ գյուղատնտեսական տարում Արարատի ՄՏ կայանն ու նրա գոտու կոլտնտեսությունները բերքատվության բարձրացման, աշխատանքի ճիշտ կազմակերպման ու հաշվառման, մեքենայական պարկի ռացիոնալ օգտագործման, խնայողության ռեժիմի պահպանման շնորհիվ որոշ քայլեր կատա-*

րեցին նաև գյուղատնտեսական արտադրանքի ինքնարժեքի իջեցման ուղղությամբ։ Այսպես. մեկ ցենտներ հացահատիկի արտադրության վրա ծախսվեց 1,29 աշխօր և մոտ 35 ռուբլի դրամ, ի դիմաց 1955 թվականի 2,02 աշխօրի և 40 ռուբլի դրամի։

Արարատի ՄՏ կայանի գոտու կոլտնտեսությունների էկոնոմիկայում հիմնականը այգեգործությունն է և գինեգործությունը։ 1956 թվականին կոլտնտեսությունների ամբողջ եկամտի 42,3 տոկոսը ստացվեց այգեգործությունից։ Այստեղից պարզ է, որ խաղողի յուրաքանչյուր ցենտների վրա որքան նվազ աշխատանք և միջոցներ ծախսվի, այնքան բարձր կլինի կոլտնտեսությունների եկամուտը։ Խաղողի այգիները լավ մշակելու շնորհիվ 1956 թվականին գոտու կոլտնտեսությունները յուրաքանչյուր հեկտարից միջին հաշվով ստացել են 66,7 ցենտներ բերք։ Արտադրված ամեն մի ցենտներ խաղողի վրա ծախսվել է 4,8 աշխօր և 13 ռուբլի դրամ, 1955 թվականին ծախսված 6 աշխօրի և 16 ռուբլու դիմաց։

Այգևանի կոլտնտեսությունը աշխատանքն ավելի լավ կազմակերպելու, ագրոկանոնները լրիվ կիրառելու շնորհիվ խաղողի այգիների յուրաքանչյուր հեկտարից ստացել է 95 ցենտներ բերք և մեկ տոննա խաղողի վրա միջին հաշվով ծախսվել է մոտ 40 աշխօր և 120 ռուբլի դրամ, 1955 թվականին ծախսած 50 աշխօրի և 160 ռուբլի դրամի դիմաց։ Իսկ նրա կողքին Շիդլուի կոլտնտեսությունը այգիներն անխնամ թողնելու հետևանքով յուրաքանչյուր հեկտարից ստացել է ընդամենը 30 ցենտներ խաղող և յուրաքանչյուր տոննայի վրա ծախսել է 80 աշխօր և ավելի քան 530 ռուբլի դրամ։ Այսպիսի օրինակներ կարելի է բերել նաև ուրիշ կոլտնտեսություններից։

Անցյալ տարի կոլտնտեսությունների աչքի ընկնող հաջողություններից մեկն էլ այն էր, որ կոլտնտեսականների ազնիվ աշխատանքի շնորհիվ, նախորդ տարվա հետ համեմատած, զգալիորեն բարձրացավ կոլտնտեսությունների եկամուտը և կոլտնտեսականների աշխօրերի արժեքը։ Եթե 1955 թվականին գոտու բոլոր կոլտնտեսությունների եկամուտը եղել է 13,6 միլիոն ռուբլի, ապա 1956 թվականին այն հասավ 19,3 միլիոն ռուբլու։ Համապատասխանորեն աշխօրերի արժեքը 8,7 ռուբլուց բարձրացավ 14,7 ռուբլու։

Այս որոշակի հաջողությունների կողքին Արարատի ՄՏ կայանի գոտու կոլտնտեսություններում դեռևս լուրջ թերություններ կան գյուղատնտեսական մթերքների արտադրությունը ավելացնելու և արտադրանքի մեկ միավորի վրա ծախսվող աշխատանքն ու միջոցները նվազեցնելու գործում։

Գոտու կոլտնտեսությունների անցյալ տարվա տնտեսա-ֆինանսական գործունեության վերլուծությունը ցույց է տալիս, որ հանրային տնտեսության առանձին ճյուղերում արտադրվող մթերքների ինքնարժեքը դեռևս խիստ բարձր է և այն գերազանցում է պետական, անգամ և շուկայական գներին։ Հատկապես խիստ բարձր է կաթի, ձվի, խոզի մսի ինքնարժեքը։ ՄՏ կայանը և կոլտնտեսությունների վարչությունները դեռևս խորամուխ չեն եղել անասնապահությունից ստացվող մթերքների արտադրության հարցերում, անհրաժեշտ ուշադրություն չեն դարձրել խոզաբուծության զարգացման վրա, որի հետևանքով էլ չի լուծված խոզի մսի արտադրության հարցը։ Բավական է նշել, որ պետությանը հանձնված մսի միայն 6,2 տոկոսն է կազմում խոզի միսը։ 1956 թվականին մեկ ցենտներ խոզի մսի ինքնարժեքը գոտու կոլտնտեսություններում կազմեց 70,4 աշխօր և 1376 ռ., այսինքն՝ ավելի բարձր, քան շուկայա-



կան գները։ Ինքնարժեքի նման ցուցանիշը հետևանք է այն բանի, որ կոլտնտեսությունների վարչություններն անհրաժեշտ ուշադրություն չեն դարձնում կերի կայուն բազա ստեղծելու, հատկապես եգիպտացորենի ցանքն ընդարձակելու, նրա մշակումը լավ կազմակերպելու, անասունների կերակրման ռացիոն արմատավորելու և խտացրած ու սիլոսային կերով կենդանիներին կերակրելու հարցերի վրա։ Կոլտնտեսությունները խոզաբուծական ֆերմաներում դեռևս սարքավորումներ և հարմարություններ չեն ստեղծել կերի մշակման ու նրա մարսելիության տոկոսը բարձրացնելու համար, չի կազմակերպված խոճկորների պլանային բտման գործը։ Գյուղատնտեսական մթերքների ինքնարժեքի իջեցման ուղղությամբ կատարված անբավարար աշխատանքով պետք է բացատրել այն, որ մեկ կիլոգրամ կաթը գոտու կոլտնտեսություններում նստել է 1 ռ. 90 կ., կամ մեկ ցենտները՝ 6 աշխօր և 97 ռ. 80 կ., իսկ ձուն՝ 2ռ. 15 կ. կամ 1000 ձվի վրա ծախսվել է 66,2 աշխօր և 1100 ռ., իսկ Շիդլուի կոլտնտեսությունում մեկ կիլոգրամ կաթը նստել է 2 ռ. 10 կ., ձուն՝ 2 ռ. 70 կ., կամ 1000 ձվի վրա ծախսվել է 61 աշխօր և 1867 ռ. դրամ։ Այս բոլորի հետևանքը լինում է այն, որ մի շարք կոլտնտեսությունների անասնապահական ֆերմաներ տնտեսական տարին փակում են վնասով։ Այսպես, Արարատի կոլտնտեսությունը անասնաբուծության վրա ծախսել է 56 587 աշխօր և 689 հազար ռուբլի դրամ, կամ ընդամենը դրամական արտահայտությամբ 1 482 հազար ռուբլի, մինչդեռ տնտեսության այդ ճյուղից եկամուտ է ստացվել 1 389 հազար ռուբլի։ Նույն վիճակումն է նաև Ավշարի կոլտնտեսությունը, որը անասնաբուծության վրա ծախսել է 44 հազար աշխօր, 557 հազար ռուբլի դրամ, բայց ստացել է միայն 554 հազար ռուբլու եկամուտ։

Գոտու կոլտնտեսություններում բարձր է նաև բանջարեղենի ինքնարժեքը։ Այդ ճյուղից ստացված եկամուտը չի ծածկում նրա վրա կատարված ծախսերը։ Այդ հետևանք է նրան, որ կոլտնտեսություններում ինչպես հարկն է ուշադրություն չի դարձվում ջերմոցային տնտեսություններ կազմակերպելու, սածիլները ժամանակին դաշտ փոխադրելու, բերքահավաքը անկորուստ կատարելու աշխատանքների վրա, որի համար էլ բանջարանոցներից քիչ բերք է ստացվում։

Շրջանի պարտիական կազմակերպությունները և սովետական օրգանները, ՄՏ կայանի ու կոլտնտեսությունների ղեկավարները հաշվի առնելով անցյալ տարվա թերությունները, կոնկրետ միջոցառումներ են ձեռնարկել նվազեցնելու արտադրվող մթերքների վրա ծախսվող աշխատանքն ու միջոցները։

Ամենահիմնականը ներկայումս դա գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության բարձրացումն է և անասնաբուծական մթերքների ավելացումը։ Փորձը ցույց է տվել, որ Արարատի ՄՏ կայանի գոտու կոլտնտեսություններում հասկավոր կուլտուրաներից կարելի է ավելի բարձր բերք ստանալ, եթե այդ նպատակի համար օգտագործվեն բոլոր ռեզերվներն ու հնարավորությունները, ինչպես, օրինակ, ցանքն ու բերքահավաքը սեղմ ժամկետում կատարելը, ցանքերի մշակումը և ոռոգումն օրինակելիորեն կազմակերպելը։ Այդ է վկայում Այգևանի կոլտնտեսության փորձը։ Այս կոլտնտեսությունն աշխատանքները լավ կազմակերպելու հետևանքով անցյալ տարի յուրաքանչյուր հեկտարից ստացավ 28 ցենտներ հացահատիկ։ Սրա կողքին առանձին կոլտնտեսություններ, որոնք ունեն նույն հողակլիմայական պայմանները,

ցածր բերք ստացան գլխավորապես այն բանի հետևանքով, որ նրանց մոտ բերքահավաքը տևեց 20—25 օր և տեղի ունեցավ բերքի զգալի կորուստ։

Ինչպես նշեցինք, Արարատի ՄՏ կայանի սպասարկած կոլտնտեսությունների եկամտի գլխավոր մասը ստացվում է խաղողագործությունից ու գինեգործությունից, որոնք զարգացման մեծ հեռանկարներ ունեն։ Հաշվի առնելով այդ, այժմ պարտիական կազմակերպությունները հատուկ ուշադրություն են դարձնում տնտեսության այդ ճյուղի զարգացման վրա։

Պարտիական կազմակերպությունների նախաձեռնությամբ գարնանը լայնորեն մասսայականացվեց առաջավոր խաղողագործների աշխատանքի փորձը, որի արմատավորման ու բարձր բերքի ստացման համար բոլոր կոլտնտեսություններն ու բրիգադները սոցիալիստական մրցության մեջ մտան և ստանձնեցին կոնկրետ պարտավորություններ։ Դրանից հետո պարտիական կազմակերպությունները քաղաքական-մասսայական ամենօրյա աշխատանքի միջոցով մոբիլիզացրին խաղողագործներին և ուժեղ պայքար ծավալեցին սոցիալիստական մրցությունում ստանձնած պարտավորությունների կատարումն ապահովելու համար։ Կատարված աշխատանքի արդյունքը եղավ այն, որ ընթացիկ տարում, նախորդ տարվա համեմատությամբ, ժամանակին ու բարձր որակով կատարվեց այգիների էտը, վազերի բների բացումը և մյուս աշխատանքները։ Առաջին անգամ կիրառվեց կոմբինացված պարարտանյութերի միջոցով այգիների պարարտացումը, որը բերքատվության բարձրացման կարևոր գործոններից մեկն է։ Այդ ուղղությամբ առանձնապես խրախուսելի աշխատանք կատարեց Խալիսայի Մյասնիկյանի անվան կոլտնտեսությունը, որն իր 75 հեկտար խաղողի այգիները պարարտացրեց օրգանական և հանքային պարարտանյութերով։

Այգիների մշակմանը լուրջ կերպով օգնեց Կիրովի անվան սովետական տնտեսության փորձի ուսումնասիրությունն ու կիրառումը։ Այս սովետական տնտեսությունը խաղողի վազերի բների մաքրման, վնասատուների դեմ պայքարի, լարային սիստեմի կիրառման և միջշարքային տարածությունները ձիաքարշ կուլտիվատորների միջոցով մշակման շնորհիվ յուրաքանչյուր հեկտարից ստանում է 110 ցենտներ խաղող։ Կոլտնտեսություններում այդ փորձի արմատավորման ուղղությամբ կատարված աշխատանքի առաջին արդյունքները առկա են։

Խաղողի արտադրանքի ինքնարժեքն իջեցնելու համար կոլտնտեսությունները ձեռնամուխ են եղել նաև այգիները լիարժեք դարձնելու և նոր այգիներ գցելու գործին։ Ստուգումները ցույց են տվել, որ առանձին հեկտարների վրա պակասում է նույնիսկ 400—500 վազ, որը զգալի չափով ազդում է բերքատվության վրա։ Այժմ կոլտնտեսություններում պայքար է գնում խաղողի այգիների բերքատվությունը հասցնել հարևան՝ Կիրովի անվան սովետական տնտեսության խաղողի այգիների բերքատվությանը, այսինքն՝ մեկ հեկտարից միջինը ստանալ 110 ցենտներ բերք։

Գյուղատնտեսական արտադրանքի ինքնարժեքի իջեցման կարևորագույն պայմաններից մեկն էլ աշխատանքի արտադրողականության բարձրացումն է։ Այս գործում վճռական դեր է խաղում գյուղատնտեսության աշխատատար պրոցեսների մեքենայացումը։ Ճիշտ է, այժմ գոտու կոլտնտեսությունների դաշտային աշխատանքների 70—80 տոկոսը կատարվում է մեքենաների միջոցով, բայց որոշ աշխատանքներում, հատկապես բամբակագործության, այ-



գեգործության և անասնաբուծության մեջ, ձեռքի աշխատանքը դեռևս մեծ տեղ է գրավում և խոշոր չափով ազդում է ինքնարժեքի վրա։ Այսպես, 1956 թվականին կոլտնտեսություններում բոլոր տեսակի աշխատանքների վրա ծախսվել է 794 հազար աշխօր, որից մեխանիզատորներին բաժին է ընկել ընդամենը 53 հազար աշխօր, կամ աշխօրերի 7 տոկոսը։ Ամենից քիչ աշխօրերը ծախսվել են հասկավոր կուլտուրաների վրա, որովհետև այստեղ բոլոր հիմնական աշխատանքները, բացառությամբ ոռոգումից, կատարվում են մեքենաների միջոցով, այդ պատճառով էլ հացահատիկի ինքնարժեքն անհամեմատ ավելի ցածր է, քան մյուս կուլտուրաներինը։

Այժմ կոլտնտեսություններն ու ՄՏ կայանները բոլոր հնարավոր միջոցները ձեռք են առնում, որպեսզի բարձրացվի աշխատատար պրոցեսների մեքենայացման մակարդակը, հատկապես անասնաբուծության բնագավառում, իսկ մյուս կողմից լայնորեն կիրառվի կոմպլեքսային մեքենայացումը։

Աշխատատար պրոցեսների մեքենայացման հետ միասին կարևոր նշանակություն ունի աշխատանքի որակի բարձրացումը։ Բազմաթիվ փաստեր կարելի է բերել, թե ինչպես անորակ վարի, ցանքի, ցելի և այլնի դեպքում կրկնակի աշխատանք է կատարվում, որը խստորեն ազդում է ինքնարժեքի վրա։ Այսպես, 1955 թվականին անորակ ցրտահերկ կատարելու հետևանքով 1956 թվականի գարնանը բավականին տարածության վրա կրկնավար կատարվեց, որի համար կոլտնտեսությունները լրացուցիչ բնավարձ մուծեցին 2100 կիլոգրամ հացահատիկ։ Նույնը կարելի է ասել բամբակենու մշակության մասին։ Արարատի կոլտնտեսության № 5 բրիգադայի բամբակենու դաշտերը չնայած 6—7 անգամ մշակվել էին, բայց հսկողության բացակայության պատճառով մշակումը կատարվել էր ցածր որակով։ Արդյունքը եղավ այն, որ բրիգադայում հեկտարից միջինը ստացվեց 13,9 ցենտներ բերք։ Մինչդեռ նույն կոլտնտեսության № 4 բրիգադան բամբակենու մշակումը լավ կատարելու շնորհիվ հեկտարից միջին հաշվով ստացավ 22 ցենտներ բերք։

Արտադրանքի ինքնարժեքի իջեցման գործում վճռական նշանակություն ունի աշխատանքի կազմակերպումը և ճիշտ նորմավորումը։ Պետք է նշել, որ Արարատի ՄՏ կայանի գոտու կոլտնտեսություններում առանձին աշխատանքների գծով, հատկապես անասնաբուծության բնագավառում, արտադրական նորմաները չեն սահմանվում առաջավոր կոլտնտեսությունների աշխատանքի միջին ցուցանիշների համաձայն։ Առանձին բրիգադաների մոտ նույնիսկ արտադրական նորմաների իջեցման տենդենց կա։ Ինչ խոսք, որ այդպես վարվել, նշանակում է պայքար չտանել արտադրանքի ինքնարժեքի իջեցման համար։ Ահա թե ինչու պարտիական կազմակերպությունները պայքար են կազմակերպում նման տենդենցի դեմ և կոլտնտեսություններին օգնում են այնպիսի արտադրական նորմաներ մշակելու, որոնց կիրառումը կխթանի աշխատանքի արտադրողականության բարձրացմանն ու գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացմանը։

Պարտիական կազմակերպությունները բոլոր անասնապահների ու կթվորների շրջանում ամենօրյա քաղաքական-բացատրական աշխատանք են կատարում ու նոր թափով գործարար սոցիալիստական մրցություն ծավալում՝ զգալիորեն ավելացնելու կաթի, մսի, ձվի, բրդի և անասնաբուծական մյուս մթերքների արտադրությունը, որի համար կան բոլոր պայմաններն ու հնարավորությունները։ Այդ ուղղությամբ կատարված հետևողական աշխատանքի

շնորհիվ գոտու կոլտնտեսություններն ընթացիկ տարվա չորս ամսում ստացել են 5009 ցենտներ կաթ, անցյալ տարվա նույն ժամանակամիջոցում ստացված 4431 ցենտների դիմաց։ Այդ նույն ժամանակամիջոցում Այգևանի, Խալիսայի և Ավշարի կոլտնտեսությունների կովաբուծական ֆերմաներում կաթի արտադրությունն ավելացել է 15—20 տոկոսով։

Գաղտնիք չէ, որ գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման և նրանց ինքնարժեքի իջեցման գործում վճռական դերը խաղում են մարդիկ, կադրերը։ Հաշվի առնելով այդ, պարտիական կազմակերպությունները հետևողական աշխատանք են կատարում կոլտնտեսությունների ղեկավար կադրերի տնտեսագիտական ուսուցման ուղղությամբ։ Կոլտնտեսային պարտիական կազմակերպությունները կազմակերպել են գյուղատնտեսության էկոնոմիկան ուսումնասիրող խմբակներ ու սեմինարներ։ Բացի այդ, նրանք սիստեմատիկորեն կազմակերպում են նաև դասախոսություններ ու զրույցներ՝ կոլտնտեսություններում աշխատանքի կազմակերպման, բերքատվության բարձրացման, արտադրանքի ինքնարժեքի իջեցման ուղիների և այլ հարցերի շուրջը։ Դասախոսությունները, սեմինարում ու խմբակներում պարապմունքները անցկացվում են կոլտնտեսությունների պրակտիկ աշխատանքների հետ շաղկապված։

Արարատի ՄՏ կայանի գոտու կոլտնտեսությունների պարտիական կազմակերպությունները պրոպագանդելով ու արմատավորելով առաջավորների փորձը, կոլտնտեսություններին օգնում են բոլոր ռեզերվները գործի դնել՝ նվազագույն աշխատանքի ու միջոցների ծախսումով ավելի շատ գյուղատնտեսական մթերքներ արտադրելու համար։

Հետևելով երկրի առաջավոր կոլտնտեսությունների օրինակին, ՄՏ կայանի կողմից սպասարկվող կոլտնտեսությունները վերջերս իրենց ժողովներում քննության առան գյուղատնտեսական մթերքների արտադրանքի ավելացման ու նրանց ինքնարժեքի իջեցման հարցերը։ Հաշվի առնելով եղած հարուստ ռեզերվները, նրանք պարտավորություն ստանձնեցին ընթացիկ տարում զգալիորեն ավելացնել հողատարածության յուրաքանչյուր 100 հեկտարի դիմաց ստացվող կաթի, բրդի, մսի և մյուս մթերքների արտադրությունը, միաժամանակ իջեցնելով նրանց ինքնարժեքը։ Ստանձնած պարտավորությունների կենսագործման ուղղությամբ արդեն լարված աշխատանք է կատարվում։ Այդ գործում կոլտնտեսություններին լուրջ օգնություն են ցույց տալիս պարտիական, սովետական կազմակերպությունները և ՄՏ կայանը, որոնք սկսել են ավելի կոնկրետ և մոտիկից ղեկավարել կոլտնտեսությունները։

---



# ՄԱՆՐ ՀՈՂԱՅԻՆ ՍԵՓԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԵՎ ՀՈՂԻ ԱԶԳԱՅՆԱՑՄԱՆ ՀԱՐՑԻ ՄԱՍԻՆ

*Ս. ՄԻՔԱՅԵԼՅԱՆ*

Դեռ Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի նախօրյակին Վ. Ի. Լենինը գրել է, որ բոլոր ազգերը անխուսափելիորեն կանցնեն սոցիալիզմին, բայց այդ անցումը միակերպ չի լինի։ Յուրաքանչյուր երկիր այս կամ այն առանձնահատկությունը կմտցնի հասարակական կյանքի զանազան կողմերի սոցիալիստական վերափոխությունների մեջ։ Լենինի այս հետևությունը, որ սերտորեն կապված է իմպերիալիզմի ժամանակաշրջանում կապիտալիզմի զարգացման տնտեսական ու քաղաքական անհամաչափության իր իսկ հայտնագործած օրենքի հետ, լիովին հաստատվել է ժողովրդա-դեմոկրատական երկրների սոցիալիստական շինարարության պրակտիկայով։ ՍՄԿՊ XX համագումարը կրկին մատնանշեց, որ տարբեր երկրներ անխուսափելիորեն տարբեր ձևերով կանցնեն սոցիալիզմին։ Այդ տարբերություններն ու առանձնահատկությունները վերաբերում են ոչ թե սոցիալիզմին անցնելու և սոցիալիստական վերափոխությունների հիմնական օրինաչափություններին, որոնք պարտադիր են բոլոր երկրների համար, այլ սոցիալիստական վերափոխությունների ձևերին, մեթոդներին, տեմպերին, և կապված են տվյալ երկրի պատմական զարգացման, ազգային ու սոցիալական յուրահատկությունների ու տրադիցիաների հետ։

Սոցիալիստական վերափոխությունների ասպարեզում եղած այդ առանձնահատկություններից մեկը Բուլղարիայի Ժողովրդական Ռեսպուբլիկայում, ինչպես և եվրոպական ժողովրդա-դեմոկրատական մյուս ռեսպուբլիկաներում, այն է, որ զարգացման տվյալ էտապում հողի մասնավոր սեփականությունը զուգակցվում է հողի մասնակի ազգայնացման հետ, չի իրականացված ամբողջ հողի ազգայնացում, ինչպես այդ տեղի է ունեցել Սովետական Միությունում Սովետների Համառուսական Երկրորդ համագումարի 1917 թ. նոյեմբերի 8-ի դեկրետով։

Հողի ազգայնացման հարցը թեորիապես բխում է բացարձակ ռենտայի մասին Մարքսի ուսմունքից։ Մարքսը ցույց է տվել, որ հողի մասնավոր սեփականության մոնոպոլիայի հետևանքով թանկանում են գյուղատնտեսական մթերքների գները, որ բացարձակ ռենտան յուրօրինակ (և բավականին մեծ) տուրք է ամբողջ հասարակության համար։ Հողի մասնավոր սեփականության մոնոպոլիան խոչընդոտում է կապիտալիստների ազատ կոնկուրենցիան, քանի որ նրանց կապիտալները ներդրված են լինում ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղերում՝ թե՛ արդյունաբերության, թե՛ գյուղատնտեսության մեջ, թե՛ շինարարության, թե՛ լեռնագործության կամ անտառային տնտեսության մեջ, խանգարում է շահույթի հավասարեցմանը, շահույթի միջին նորմայի գո-

յացմանը կապիտալիստորեն վարվող բոլոր ձեռնարկություններում։ Փոխատվական կապիտալի տոկոսի մակարդակի իջեցման տենդենցը և ռենտայի աճումը հասցնում են հողի գնի աճման։ Համապատասխանաբար ավելի ու ավելի է աճում արտադրողական կապիտալի այն մասը, որը հատկացվում է բացարձակ ռենտա վճարելուն կամ հող գնելուն։ Մյուս կողմից հողի մասնավոր սեփականությունը դանդաղեցնում է տեխնիկական պրոգրեսը գյուղատնտեսության մեջ, կայունացնում գյուղատնտեսության հետամնացությունը։ Դրանով իսկ կապիտալիզմի պայմաններում է՛լ ավելի է խորանում հակադրությունը քաղաքի ու գյուղի միջև։

Կապիտալիստական արտադրողական ուժերն ավելի արագ կզարգանային հողը ազգայնացված լինելու պայմաններում։ Սակայն այն բանի շնորհիվ, որ հողի ազգայնացումը կխարխլեր մասնավոր կապիտալիստական սեփականության հիմքերը, և որ շատ կապիտալիստներ միաժամանակ խոշոր հողատերեր են, իսկ խոշոր հողային սեփականությունը ապահովված եկամտի աղբյուր է, բուրժուազիան չիրականացրեց հողի ազգայնացումը։

Հիմնավորելով հողի ազգայնացման հասարակական անհրաժեշտությունը արտադրողական ուժերի զարգացման տեսակետից և դարձնելով այն ծրագրային կետ, մարքսիզմ-լենինիզմը հնարավոր չի համարել հողի ազգայնացման հարցը առաջ քաշել ամեն մի երկրում՝ առանց հաշվի առնելու նրա պատմական զարգացման պայմանները։ Հողի ազգայնացումը միաժամանակ պրոլետարիատի վերաբերմունքի հարցն է տարբեր դասակարգերի, գյուղացիության տարբեր խմբերի, չքավոր ու միջակ գյուղացիների՝ մանր հողատերերի բազմամիլիոն մասսաների նկատմամբ, հետևաբար, պրոլետարիատի դաշնակցի հարցն է ռևոլյուցիոն պայքարում, առանց որի հնարավոր չէ ոչ միայն սոցիալիստական ռևոլյուցիայի, այլև դեմոկրատական ռևոլյուցիայի հաղթանակը, որում պրոլետարիատը կոչված է հեգեմոն լինել։

Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների երկերում կան ուղղակի ցուցումներ այս մասին։ Այսպես, Վ. Ի. Լենինը գրել է՝ «Մենք ազգայնացումը մակաբերում ենք ո՛չ թե վերացական նկատառումներից, այլ կոնկրետ դարաշրջանի կոնկրետ շահերի կոնկրետ հաշվառքից» (Երկեր, հատոր 13, էջ 410)։

Ինչպիսի՞ կոնկրետ պայմաններն ու շահերն են թելադրել Ռուսաստանում հողի ազգայնացման հնարավորությունն ու անհրաժեշտությունը, որ առաջադրել է Լենինը բոլշևիկների ագրարային ծրագրում 1906 թվականին։

Ռուսաստանում կալվածատիրական հողատիրությունն ու ճորտատիրության մնացորդները պահպանվել էին 1861 թվականին գյուղացիությունը ճորտությունից—իրականում հողից—ազատագրելուց հետո, որին իր ժամանակի առաջավոր մարդիկ, կաշկանդված լինելով գրաքննչական դնչակալով, դիմավորել էին լուռ անեծքով։ Կալվածատիրական տնտեսությունները Ռուսաստանում հիմնված են եղել ճորտատիրության ուղղակի մնացորդը հանդիսացող աշխատավճարումների վրա, որ հարկադրված էին կատարել մանր հողատերերը։ «Բառերը փոխվում էին, օրենքները հրատարակվում ու չքանում էին, դարերն անցնում էին,—իսկ գործի էությունը մնում էր նախկինը... Աշխատավճարային տնտեսությունը, այդ էլ հենց նույն, նորացրած, գունափոխած, շրջած, ճորտատիրական տնտեսությունն է» (Վ. Ի. Լենին, Երկեր, հատոր 12, էջ 321)։ Դեռ ավելին. աշխատավճարումների սիստեմը «ոչ այլ ինչ է, եթե ոչ ճորտատիրության հետագա զարգացում»,—ասում էր Վ. Ի. Լենինը։ Ստաց-



վում էր այնպես, որ նախկին ճորտերը շարունակում էին մշակել նախկին կալվածատերերի հողերը։

Լենինը մատնանշում էր, որ բացի Ռուսաստանից ուրիշ որևէ երկրում չի պահպանվել ճորտատիրական տնտեսությունը խոշոր ու խոշորագույն հողատարածությունների վրա։ Ինքը՝ գյուղացիական հողաբաժնետիրությունը, որն ի դեպ, աներևակայելիորեն խճճված էր, ճորտատիրական կարգերի մնացորդն էր և նպաստում էր կալվածատիրական ճնշման պահպանմանն ու ուժեղացմանը։ Հողաբաժինն ըստ էության նատուրալ աշխատավարձի փոխակերպված ձևն էր կալվածատիրական տնտեսություններում շահագործվող գյուղացիների համար։ Գյուղացիները տրոհված էին բազմաթիվ կարգերի, որոնք արտացոլում էին ճորտատիրության մեծ կենսունակությունը ռուսական գյուղում։ Սարատովի նահանգում գյուղացիները հողաբաժնի մեծության ու վճարումների չափերի նկատմամբ ունեցած վիճակի տեսակետից առաջին ռուսական ռևոլյուցիայի նախօրյակին բաժանվում էին 24 կարգի ու կատեգորիայի։ Գյուղացիների մեջ տարբերում էին՝ պարգևատրվածներ, սեփականատերեր, լրիվ սեփականատերեր, պետականներ, պետականներ՝ համայնատիրությամբ, պետականներ՝ քառորդատիրությամբ, պետականներ՝ կալվածատիրականներից, արքունականներ, պետական հողամասերի վարձակալներ, հողազուրկներ, սեփականատերեր՝ նախկին կալվածատիրականներից, գնովի տնատեղի վրա եղողներ, սեփականատերեր՝ նախկին արքունական գյուղացիներ, սեփականատերեր շենաբնակներ, վերաբնակիչներ, պարգևատրվածներ՝ նախկին կալվածատիրականներ, սեփականատերեր՝ նախկին պետականներ, ազատ արձակվածներ, հարկ չվճարողներ, ազատ հողագործներ, ժամանակավոր պարտավորյալներ, նախկին գործարանայիններ և այլն, իսկ այնուհետև նաև բնակագրված, եկվոր և այլ գյուղացիներ։ Համայնական հողօգտագործման եղած կարգը, հողերի բազմաշերտությունը, շերտամիջությունն ու հողերի իրարից հեռու լինելը է՛լ ավելի էին խճճում ագրարային հարաբերությունները։ Նման պատկեր գոյություն ուներ Ռուսաստանի շատ նահանգներում։ Ճորտատիրության մնացորդները կաշկանդում էին արտադրողական ուժերի հետագա զարգացումը երկրում։ Ճորտատիրության մնացորդների լիկվիդացումը Ռուսաստանում անհետաձգելի գործ էր։ Հողի ազգայնացումը այն պահանջն էր, որն արտահայտում էր ճորտատիրության մնացորդների վերացման տնտեսական անհրաժեշտությունը, կապիտալիստական զարգացման ուղիների մաքրումը և բուրժուական պրոգրեսի միջոցառում էր։ Հակառակ մենշևիկների իմաստակություններին, ռուս գյուղացիությունը արտահայտվեց հողի ազգայնացման օգտին, պաշտպանեց հողի ազգայնացման պահանջը, առաջ քաշեց ազգայնացման հարցը և՛ առաջին, և՛ երկրորդ Դումայում։ Կյանքը հաստատեց բոլշևիկների իրավացի լինելը։

Ռուսաստանի գյուղացիներն արտահայտվեցին հօգուտ հողի ազգայնացման ոչ թե հողատիրության հատուկ ձևի, ոչ թե համայնական ընտելությունների կամ բնազդի շնորհիվ, ինչպես այդ փորձում էին բացատրել էսեռները, ոչ թե ինչ որ պատահականության կամ այս կամ այն դոկտրինայի ազդեցության շնորհիվ, այլ այն բանի շնորհիվ, որ հողի ազգայնացումը ամենալավ միջոցն էր կալվածատիրական-ճորտատիրական ճնշումից ազատագրվելու համար։

Ռուսաստանի ագրարային կարգի բնորոշ առանձնահատկություններից

մեկն այն էր, որ ռուս գյուղացին դեռ չէր «ամրակայվել», ամուր չէր կառչել մասամբ հողաբաժնային, մասամբ վարձակալված կալվածատիրական հողին։ Գյուղացիական անպարտիական դեպուտատներից մեկը երկրորդ Դումայում ունեցած իր ելույթում հայտարարել էր՝ «...հողը աստվածային է, և ոչ թե կալվածատիրական» (տես Վ. Ի. Լենին, Երկեր, հատոր 13, էջ 491)։ Հողի ազգայնացման պահանջը միջոց էր ճորտատիրական հողատիրության խճճված հանգույցը կտրելու համար։ Լենինը գրել է, թե գյուղացիները հողի ազգայնացման օգտին արտահայտվեցին, որովհետև նրանք բնազդաբար ավելի լավ են հասկացել ամբողջ միջնադարյան հողային սեփականության ոչնչացման անհրաժեշտությունը։ «Հողի ազգայնացումը,— գրել է Լենինը,— հողագործության մեջ միջնադարի լիակատար լիկվիդացման միակ եղանակը չէ միայն, այլ նաև լավագույն հողային կարգ ու կանոնների լավագույն հնարավոր եղանակն է կապիտալիզմի օրով» (Երկեր, հատոր 13, էջ 548)։ Ռուս գյուղացիները հասկանում էին, որ հողի ազգայնացման հետևանքով բոլոր հողերը պետք է ենթարկվեն շուտափույթ բաժանության։

Չնայած այն բանին, որ հողի ազգայնացումը բխում էր Ռուսաստանի կապիտալիստական զարգացման տնտեսական անհրաժեշտությունից, որ ազգայնացումը բուրժուական զարգացման միջոցառում էր, բուրժուա-դեմոկրատական հեղաշրջման հնարավոր մաքսիմումը, բուրժուազիան չէր կարող անցկացնել հողի ազգայնացումը բանվոր դասակարգի ու բուրժուազիայի միջև դասակարգային պայքարի աճման և ուժեղ կերպով սրվելու պայմաններում։ Բուրժուազիան ռևոլյուցիայից սարսափած՝ պատրաստ էր գործարքի մեջ մտնել հին իշխանության ու կալվածատերերի հետ։ Բանը հենց այդպես էլ եղավ Ռուսաստանում։ Ուստի և, հանդես գալով որպես բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիայի հեգեմոն, «բանվոր դասակարգը բուրժուական հասարակությանը պետք է տա բուրժուական հեղաշրջման ամենազուտ, ամենահետևողական, ամենավճռական ծրագիրն ընդհուպ մինչև հողի բուրժուական ազգայնացումը» (Վ. Ի. Լենին, Երկեր, հատոր 13, էջ 462)։

Հողի ազգայնացման հարցը, մյուս կողմից, սերտորեն կապված է բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիան սոցիալիստականի վերաճելու լենինյան ուսմունքի հետ։ Չէր կարելի ազգայնացնել և պահել այդ հողը, հետագա քայլեր չկատարելով քաղաքական կյանքի ասպարեզում, առանց քաղաքական նվաճումների, առանց բուրժուական դեմոկրատիզմի հաղթանակից սոցիալիզմի համար մղվող իսկական պայքար սկսելուն անցնելու, հակառակ դեպքում բուրժուազիան, ամրապնդելով իրեն դեմոկրատական հեղաշրջումից հետո, հետ կխլեր բանվորներից ու գյուղացիներից նրանց բոլոր նվաճումները։ Լենինն ընդգծում էր, որ հողի ազգայնացումը Ռուսաստանում անհրաժեշտ է ոչ միայն բուրժուա-դեմոկրատական տեսակետից, «... նա անհրաժեշտ է նաև այն պատճառով, որ հսկայական հարված է արտադրության միջոցների մասնավոր սեփականության համար։ Մտածել, որ հողի մասնավոր սեփականությունը վերացնելուց հետո Ռուսաստանում ամեն ինչ առաջվա նման կմնա, պարզապես անմտություն է» (Երկեր, հատոր 24, էջ 347)։

Այսպիսիք էին այն կոնկրետ, պատմական ու քաղաքական պայմանները, որոնք պայմանավորել են բոլշևիկների ագրարային ծրագիրը՝ ընդդեմ հողի մասնավոր սեփականության, հօգուտ հողի ազգայնացման՝ քաղաքական որոշակի պայմանների դեպքում։



Նախահոկտեմբերյան շրջանում, երբ բոլշևիկները ուղղում էին պարտիան զինված ապստամբություն նախապատրաստելու նպատակին և ապահովեցին Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի հաղթանակը Լենինի ղեկավարությամբ, մի միասնական հզոր ռևոլյուցիոն հոսանքի մեջ միավորելով խաղաղության համար մղվող ընդհանուր դեմոկրատական պայքարը, հողի ազգայնացման պահանջը մեր պարտիայի ագրարային ծրագրում այլ դրվածք էր ստանում։ «Հողի ազգայնացումը,— գրել է Վ. Ի. Լենինը 1917 թվականի սեպտեմբերին,— ոչ միայն բուրժուական ռևոլյուցիայի «վերջին խոսքն է», այլև մի քայլ է դեպի սոցիալիզմ» (Երկեր, հատոր 13, էջ 554)։

Նարոդնիկների, մենշևիկների, էսեռների, կադետների և մարքսիզմի այլ թշնամիների դեմ մղած պայքարում Լենինն ու բոլշևիկները ոչ միայն պաշտպանել են Մարքսի-Էնգելսի ուսմունքը ռենտայի մասին ու նրանց ծրագրային դրույթները ագրարային հարցում, այլև զարգացրել են այն, ագրարային թեորիայի ասպարեզում մշակելով մի շարք նոր հարցեր, կոնկրետացրել են այն սոցիալիստական ռևոլյուցիայի շարժիչ ուժերի, թեորիայի ու պրակտիկայի տեսանկյունից, այդ ամենը ենթարկելով պրոլետարիատի դիկտատուրան նվաճելու և ամրապնդելու նպատակին, որ հիմնականն է լենինիզմում։

Հողի ազգայնացումը ՍՍՌՄ-ում վիճակվեց սոցիալիստական ռևոլյուցիային։ Նոր պայմաններում հողի ազգայնացումը դարձավ սոցիալիստական միջոցառում։

Հողի ազգայնացումը բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիայի հաղթանակի պայմաններում կնշանակեր հողի սեփականության իրավունքի, ուրեմն և դիֆերենցիալ ռենտա ստանալու իրավունքի, հանձնումը բուրժուական պետությանը (բացարձակ ռենտան վերացված կլիներ)։ Այսպիսի պայմաններում հողի ազգայնացումը չէր կասեցնի մանր գյուղացիական տնտեսությունների քայքայումը, գյուղացիության դասակարգային շերտավորումը, բևեռացումը գյուղում։

Հողի ազգայնացումը սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակի պայմաններում նշանակում է հողի սեփականության իրավունքի և հենց հողի հանձնումը սոցիալիստական պետությանը, այսինքն՝ ամբողջ հասարակությանը, թողնելով դիֆերենցիալ ռենտայի մի մասը գյուղացիներին՝ նրանց նյութական բարեկեցության բարձրացման համար։ Հողի ազգայնացումը սոցիալիստական ռևոլյուցիայի պայմաններում «տվել է հողագործության մեջ սոցիալիզմին անցնելու ամենամեծ հնարավորությունները» (Վ. Ի. Լենին, Երկեր, հատոր 28, էջ 401)։ Հողի ազգայնացումը Սովետական Միության պայմաններում ոչնչացրեց մանր գյուղացիության ստրկական կառչվածությունը հողակտորին, դյուրացրեց և արագացրեց երկրի գյուղատնտեսության կոլեկտիվացումը, կապիտալիստական վերջին դասակարգի՝ կուլակության վերացումը համատարած կոլեկտիվացման հիման վրա։ Սովետական Միությունում ստեղծվել է ամենապրոգրեսիվ, խոշոր մեքենայացված գյուղատնտեսություն։ Սովետական Միության կոլտնտեսային գյուղատնտեսությունը դիմացել է պատերազմի ամենադաժան փորձությանը և հաջողությամբ առաջ է ընթանում անշեղ վերելքի ուղիով։

«Մենք հաստատում ենք,— գրել է Մարքսը,— որ հասարակության տնտեսական զարգացումը, բնակչության աճումն ու համակենտրոնացումը, ինչպես և մեքենաների ու նման գյուտերի կիրառման անհրաժեշտությունը հողի ազ-

գայնացումը դարձնում են «հասարակական անհրաժեշտություն» և ոչ մի դատողություն սեփականության իրավունքի մասին չի կարող խափանել այդ անհրաժեշտությունը» (Կ. Մարքս և Ֆ. Էնգելս, Երկեր, հատոր 13, մաս 1, ռուսերեն, էջ 340)։

Մարքսի այսպիսի կատեգորիկ պնդումից, սակայն, չի բխում, թե ամեն մի երկրում հողի ազգայնացման պահանջը կարող է առաջ քաշվել առանց կոնկրետ պայմանների հաշվառման։ Համեմատելով Անգլիայի և Ֆրանսիայի ագրարային կարգի պայմանները, Մարքսը դեռևս 1869 թվականին գտնում էր, որ Ֆրանսիան «իր գյուղացիական սեփականությամբ ...ավելի հեռու է հողի ազգայնացումից, քան Անգլիան իր լենդլորդիզմով» (նույն տեղը, էջ 341)։ Մարքսը մատնանշում էր, թե մանր գյուղացին իր մոլեռանդ նվիրվածությամբ կառչում է իր հողակտորին։ Մանր գյուղացի-սեփականատերը չի կարող միանգամից ընկալել հողի ազգայնացման լոզունգի պրոգրեսիվությունը, իսկ որոշ հանգամանքներում հանդիսանում է ազգայնացման վճռական թշնամի։

Վ. Ի. Լենինը ճիշտ էր համարում, երբ Գերմանիայում յունկերա-բուրժուական կարգի հաստատումից հետո սոցիալ-դեմոկրատիան հրաժարվել էր հողի ազգայնացման պահանջ պարունակող հին ծրագրերից։

Հողի ազգայնացման հարցին մոտենալով այս կամ այն երկրի ագրարային կարգի պատմականորեն ստեղծված կոնկրետ պայմանների տեսակետից՝ Լենինը իր «Ագրարային հարցի վերաբերյալ թեզիսների սկզբնական ուրվագիծ» աշխատությունում գրել է՝ «Կապիտալիստական պետությունների մեծ մասում պրոլետարական իշխանությունն ամենևին մասնավոր սեփականության անհապաղ լրիվ վերացում չպետք է կատարի...» (Երկեր, հատոր 31, էջ 180)։

Այս դրույթը, որ ընդունվել է Կոմինտերնի երկրորդ կոնգրեսի կողմից, հետագայում արտացոլվել է Կոմինտերնի ծրագրում։

Եվ հիրավի. որքան ավելի է զարգացած կապիտալիզմը, որքան վաղուց գոյություն ունի հողի մասնավոր սեփականությունը, այնքան ավելի ուժեղ է նրա տրադիցիան, ուստի և այնքան ավելի դժվար կընկալի գյուղացիությունը հողի ազգայնացման լոզունգը։ Ելնելով այդ բոլորից՝ Կոմինտերնի ծրագիրը խոսում էր «հողի ճետագա ազգայնացման» մասին։

Ագրարային ծրագրի մշակման հենց սկզբից (1894 թ.) հանդես գալով հողի ազգայնացման դիրքերից և բոլշևիկյան պարտիայի ծրագրային պահանջը բխեցնելով դարաշրջանի կոնկրետ պահանջներից, Լենինը հողի բաժանքը չի համարել առհասարակ անընդունելի։ Իր «Բանվորական պարտիայի ագրարային ծրագրի վերանայումը» (1906 թ. մարտ) աշխատության մեջ Լենինն ընդունել է, որ որոշ պայմաններում կալվածատիրական հողի բաժանքը «...ընդհանուր և ամբողջ առումով վճռականապես պրոգրեսիվ միջոց կլիներ թե՛ տնտեսական և՛ թե քաղաքական իմաստով» (Երկեր, հատոր 10, էջ 213—214)։ Կալվածատիրական հողի բաժանքի հարցի առթիվ Լենինը շատ ասույթներ ունի, որոնք շատ կարևոր նշանակություն ունեն մյուս կապիտալիստական երկրների կոմունիստական պարտիաների ագրարային ծրագրի որոշման համար։ Այսպես, 1907 թվականի դեկտեմբերին Լենինը գրել է. «Սոցիալ-դեմոկրատիան չի հրաժարվում բաժանքը պաշտպանելուց։ Պատմական այլ մոմենտում, ագրարային ռևոլյուցիայի այլ աստիճանում բաժանքը



կարող է անխուսափելի լինել»։ «Բաժանքը կարող էր պրոգրեսիվ լինել, եթե դեն շպրտելով հինը, ամրացներ նոր տնտեսությունը, նոր ագրիկուլտուրան» (Երկեր, հատոր 13, էջ 370 և 364—365)։

Ագրարային հարցի մշակումը Վ. Ի. Լենինի կողմից հսկայական նշանակություն է ունեցել արտասահմանյան երկրների կոմունիստական պարտիաների գործունեության ու ամրապնդման համար, գյուղացիությանը պրոլետարիատի շուրջը համախմբելու, գյուղացիության հետ մարտական դաշինքն ուժեղացնելու և պրոլետարիատի ղեկավար դերը այդ դաշինքում ամրապնդելու համար, ժողովրդա-դեմոկրատական կարգի հաղթանակի և սոցիալիզմի ուղիով նրա հետագա զարգացման համար։

Բուլղարիայի Կոմունիստական պարտիան, ինչպես և եվրոպական մյուս երկրների կոմունիստական ու բանվորական պարտիաները, իր ծրագրում չի առաջադրել ամբողջ հողի ազգայնացման պահանջը։ Առանձին դեպքերում «ձախ» տարրերը անհամբերություն են ցուցաբերել նաև հողի հարցում, առաջարկելով անցկացնել ամբողջ հողի ազգայնացում, ագիտացիա են մղել գյուղացիության մեջ, օգտվելով ժողովրդա-դեմոկրատական ռևոլյուցիայի հաղթանակի հետևանքով մասսաների անխուսափելի ձախացումից։ 1944 թվականի նոյեմբերին, Հայրենական ճակատի առաջին կոնֆերենցիայի օրերին, նույնիսկ հեռագիր է ստացվել Բուլղարիայի գյուղերից մեկի գյուղացիների կողմից, որոնք պահանջում էին անցկացնել հողի ազգայնացում։ Բուլղարիայի Կոմունիստական պարտիան մերժել է այդ, պարզաբանել մասսաներին, որ պարտիան հողի ազգայնացման խնդիր չի դնում, բնականաբար ելնելով մարքսիզմ-լենինիզմի ագրարային թեորիայից։

Ագրարային ռեֆորմի հետևանքով, որ իրականացվել է 1946 թվականին, ստեղծվել է պետական հողային ֆոնդ, 20 հեկտարից ավելի (իսկ Դոբրուջայի հինգ օկոլիաներում՝ գավառներում 30 հեկտարից ավելի) հող ունեցողների հողը օտարելու, ինչպես և հասարակական այլ ֆոնդերի ու հողագործությամբ չզբաղվող հիմնարկների հողերը օտարելու հետևանքով։ Այդ հողերի մի մասը՝ 150 հազար հեկտարը, բաժանվել է սակավահող ու հողազուրկ գյուղացիներին, իսկ մյուս մասը՝ 159,1 հազար հեկտարը, ազգայնացվել ու տրվել է պետական հողագործական տնտեսություններին, աշխատանքային կոոպերատիվ հողագործական տնտեսություններին (ԱԿՀՏ), ՄՏԿ-ներին ու հասարակական այլ կազմակերպություններին։ Ձեռնարկությունների ու տնտեսական շենքերի ազգայնացումից և խոշոր գյուղատնտեսական ինվենտարի հարկադիր հետգնումից բացի, ազգայնացվել են 5 հեկտարից ավելի անտառներն ու անտառային արոտավայրերը հարթավայրային և 10 հեկտարից ավելին լեռնային շրջաններում, ինչպես և հողի ընդերքն ու ջրերը։

Այսպիսով, Բուլղարիայում տեղի է ունեցել ոչ թե ամբողջ հողի ազգայնացում, այլ մասնակի ազգայնացում՝ հողի մասնավոր սեփականության պահպանումով։

Հակառակ ռեակցիոն ու օպոզիցիոն տարրերի աղմուկին հողի մասնավոր սեփականության իրավունքի խախտման մասին (նրանք դրա տակ հասկանում էին միայն խոշոր հողատերերի մասնավոր սեփականությունը), ժողովրդա-դեմոկրատական կարգը, ընդհակառակը, ամրապնդել է անձնական աշխատանքի վրա հիմնված մանր հողային սեփականությունը։ Պետությունը ցույց է տվել և շարունակում է մեծ օգնություն ցույց տալ գյուղացիական տնտեսու-

թյուններին վարկով դույզ ձեռք բերելուն, հարկային արտոնություններով սահմանափակելով կուլակի շահագործողական տենդենցները, և դրանով իսկ խափանել է աշխատավոր գյուղացիական տնտեսությունների աղքատացումը, որ հասցնում էր հողակտորի հարկադրված վաճառքին։

Իր ջանքերն ուղղելով գյուղացիական տնտեսությունները ԱԿՀՏ-ներում կամավոր կերպով միավորելու վրա, ժողովրդա-դեմոկրատական կարգը ստեղծել է աշխատավոր գյուղացիական մասսաների բարեկեցության բարձրացման պայմաններ։

Մասնավոր սեփականությունը ժողովրդա-դեմոկրատական կարգի պայմաններում ենթարկվել է որոշակի սոցիալական փոփոխությունների։ Հողի բաժանքի հետևանքով առաջացած մանր մասնավոր սեփականությունը հիմնըված հողատերի և նրա ընտանիքի անդամների աշխատանքի վրա, չի կարող հասցնել կապիտալիստական ֆերմերի ու կապիտալիստական գյուղատնտեսության առաջացմանը, ինչպես այդ կարող է տեղի ունենալ կապիտալիզմի պայմաններում, ինչպես այդ տեղի է ունեցել ԱՄՆ-ում հոմստեդների բաժանումից հետո։ Հետևապես, փոխվում է նաև գյուղացիության շերտավորման բնույթը ժողովրդա-դեմոկրատական կարգի՝ պրոլետարիատի դիկտատուրայի քաղաքական այդ նոր ձևի պայմաններում։ Եթե կապիտալիզմի պայմաններում մի բևեռում աճում է աղքատների, իսկ մյուս բևեռում կուլակների թիվը, իսկ միջակ գյուղացիությունը քայքայվում է, ապա ժողովրդա-դեմոկրատական Բուլղարիայում տեղի ունի գյուղի աճող միջակացում, իսկ կուլակությունը շարունակաբար ենթարկվել է սահմանափակման ու արտամղման։

Ինչպես վերն ասվեց, հողի մասնավոր սեփականության իրավունքը սահմանափակված է։ Հողը չի կարող ազատ կերպով շրջանառության մեջ մտնել։ Աշխատանքային հողային սեփականության մասին օրենքի 42-րդ հոդվածի համաձայն այն անձինք, որոնց հող է հատկացվել, համայնքային հանձնաժողովի կազմած արձանագրությունից հետո 20 տարվա ընթացքում իրավունք ունեն տիրել ու օգտվել հատկացված հողից։ Բայց նրանք իրավունք չունեն օտարել իրենց հատկացված հողը, թեկուզ և ժամկետից շուտ վճարած լինեն հողի համար, ինչպես և իրենց սեփական հողը կամ ծանրաբեռնել այն պարտավորություններով, բացի Բուլղարական հողագործական ու կոոպերատիվ բանկի առաջ ունեցած պարտավորություններից։

Հողի մանր մասնավոր սեփականությունը տարբերվում է հողի կապիտալիստական մասնավոր սեփականությունից, այսինքն՝ խոշոր մասնավոր սեփականությունից, որի վերացումով վերացված է հողի մասնավոր սեփականության մոնոպոլիան՝ դրանից բխող հետևանքներով, վերացված է բացարձակ ռենտայի հիմքը։

Բուլղարիայի Ժողովրդական Ռեսպուբլիկայում գոյություն ունեցող ագրարային կարգի բնորոշ առանձնահատկությունն այն է, որ հողի մանր մասնավոր սեփականությունը պահպանվում է հողի մասնակի ազգայնացման պայմաններում։ Այդ չի նշանակում, թե սոցիալիզմի կառուցումը երկրում օրակարգից հանում է ամբողջ հողի ազգայնացման հարցը։ Չի կարելի պատկերացնել սոցիալիզմ կառուցած երկիր, ուր պահպանված լինի արտադրության միջոցներից մեկի՝ հողի մասնավոր սեփականության իրավունքը։

Անցման ժամանակաշրջանի էկոնոմիկայի ընդհանուր օրինաչափությունները, որոնք բացահայտել են մարքսիզմ-լենինիզմի կլասիկները և ստուգված



են սոցիալիզմի շինարարության պրակտիկայով ՍՍՌՄ-ում, պահպանում են իրենց ուժը բոլոր երկրների համար, որոնք անցնում են սոցիալիզմին։

Ուրեմն, հարցը վերաբերում է ոչ թե այն բանին, որ ժխտվի ամբողջ հողը համաժողովրդական ունեցվածքի վերածելու անխուսափելիությունը, որ կատարվել է ՍՍՌՄ-ում հողի մասին պատմական դեկրետով, որոշ պայմանների շնորհիվ։ Հարցը վերաբերում է հողի հետագա ազգայնացմանը զարգացման այլ կոնկրետ պայմանների շնորհիվ։

Բուլղարական Կոմունիստական պարտիայի հինգերորդ համագումարին տված քաղաքական հաշվետվության եզրափակման խոսքում Գ. Դիմիտրովն ասել է. «Զեկուցման մեջ իմ ասածից այն մասին, որ ներկա մեր պայմաններում, աշխատանքային կոոպերատիվ հողագործական տնտեսությունների զարգացման պայմաններում, մենք ազգայնացումը չենք համարում գյուղատնտեսության զարգացման անհրաժեշտ պայմանը, ոչ մի դեպքում չի կարելի այնպիսի եզրակացություն կատարել, թե սոցիալիզմի կառուցումը գյուղում ընդհանրապես հնարավոր է առանց հողի ազգայնացման։ Սակայն մենք նկատի ունենք, որ չքավորներին ու միջակներին աստիճանաբար ընդգրկելով աշխատանքային կոոպերատիվ հողագործական տնտեսությունների մեջ, մեքենատրակտորային կայանների զարգացման հետևանքով, ինչպես և հողի վարձակալությունը արգելելու հետևանքով, հողի առքն ու վաճառքը սահմանափակելու և հետագայում արգելելու հետևանքով, կոոպերացված գյուղացիների որոշումով, երբ պայմանները թույլ տան այդ, ռենտան[1] նվազեցնելու և հետագայում վերացնելու հետևանքով, հողի ազգայնացման հարցը գործնականորեն կլուծվի նրանով, որ ամբողջ հողը կմնա աշխատավոր գյուղացիների առհավետ օգտագործմանը։ Այսպիսով, աշխատավոր գյուղացին, որը ներկայումս իր մանր հողամասի տերն է, կկարողանա ամենալայն չափերով օգտվել հողի պտուղներից, որոնք զգալի չափերով ավելացվելու են այն արդիականացնելու և խոշոր հողագործական կոոպերատիվ տնտեսություններում մեքենաներով մշակելու հետևանքով»։

Բայց հողի փաստական հետագա ազգայնացումը, որն անպայման տեղի է ունենալու որպես գյուղացիներին կամավոր կերպով ԱԿՀՏ-ներում միավորելու և այլ միջոցառումների հետևանք, այլ բովանդակություն է ստանում Սովետական Միությունում տեղի ունեցած ամբողջ հողի ազգայնացման համեմատությամբ։

Ամբողջ հողի ազգայնացումը Ռուսաստանում Հոկտեմբերյան ռևոլյուցիայի հաղթանակից հետո նշանակում էր պրոլետարիատի կողմից մինչև վերջ հասցնել բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիայի խնդիրը և մի քայլ էր դեպի սոցիալիզմ, որ հեշտացրել է անցումը սոցիալիզմին հողագործության մեջ, հետևապես նախորդել է գյուղատնտեսության սոցիալիստական վերակառուցմանը։

Ամբողջ հողի ազգայնացումը Բուլղարիայում, ինչպես և ժողովրդական դեմոկրատիայի եվրոպական մյուս երկրներում, չի առնչվում բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիայի խնդիրների մինչև վերջը կատարման հետ, որոնք արդեն լուծված են խոշոր հողատիրության վերացումով, չի նախորդում գյուղատնտեսության սոցիալիստական վերակառուցմանը, այլ համընկնում է

[1] Ռենտա է կոչվում եկամուտների այն մասը, որը բաշխվում է ԱԿՀՏ-ներում ըստ հողի տարածության ու որակի։

գյուղացիական տնտեսությունների սոցիալիստական վերակառուցումը ավարտելու հետ։

Բուլղարական Կոմունիստական պարտիայի ճիշտ ագրարային քաղաքականությունը, որ հիմնված է մարքսիզմ-լենինիզմի անհաղթ ուսմունքի վրա, ամրապնդել է պարտիայի դիրքերը գյուղում, է՛լ ավելի սերտորեն է համախմբել աշխատավոր գյուղացիներին պարտիայի ու կառավարության շուրջը և հեշտացրել գյուղատնտեսության սոցիալիստական վերակառուցման գործը, հողի մասնավոր սեփականության պահպանման պայմաններում։

Առ 1957 թվականի մարտի 1-ը գյուղական տնտեսությունների և մշակվող հողի 80 տոկոսը ընդգրկված է ԱԿՀՏ-ներում։ Երկրի հացահատիկային ու հարթավայրային շրջաններում գյուղատնտեսության կոոպերացումը հիմնականում ավարտված է։ ԱԿՀՏ-ների աշխատանքների ավելի քան 70 տոկոսը մեքենայացված է 208 ՄՏ կայանների միջոցով, որոնք հանդիսանում են ԱԿՀՏ-ների ինդուստրիալ նյութա-տեխնիկական բազան և կենտրոնացնում են 26.000 տրակտոր (15 ուժանոցի հաշվով), 4313 կոմբայն, հազարավոր բեռնատար ավտոներ ու գյուղատնտեսական այլ մեքենաներ, որոնց մեծ մասը ստացված է Սովետական Միությունից։ Պետությունը ցույց է տվել և շարունակում է ցույց տալ աճող ֆինանսական օգնություն։ Պետության օգնությամբ և իրենց ԱԿՀՏ-ների միջոցներով կառուցված են 35.000 գյուղատնտեսական շենքեր ու մոտ 900 մանր ջրամբարներ ու լճակներ։ ԱԿՀՏ-ները տնկել են 44.000 հեկտար խաղողի և 40.000 հեկտար մրգատու այգիներ։ ԱԿՀՏ-ներին խոշոր օգնություն և բարձրաստիճան մեքենայացված տնտեսության օրինակ են տալիս պետական հողագործական տնտեսությունները։ 1956 թվականին ԱԿՀՏ-ները տվել են երկրում արտադրված հացահատիկի 74, բամբակի 90, ճակնդեղի 94,2 տոկոսը և մնացած տեխնիկական կուլտուրաների մեծ մասը։ ԱԿՀՏ-ները պարենի և արդյունաբերության համար գյուղատնտեսական հումքի մատակարարման հիմնական աղբյուրն են։ Վերջին հինգ տարվա ընթացքում կոոպերատորների եկամուտներն աճել են 60 տոկոսով։ Տասնյակ հազարավոր նախկին բատրակներ ու չքավոր գյուղացիներ իրենց համար կառուցել են նոր բնակարաններ։ 1957 թվականի հունվարից 60 տարեկանից բարձր տղամարդ և 55 տարեկանից բարձր կին կոոպերատորները ստանում են կենսաթոշակ ամսական 60-ից մինչև 150 լև գումարով։ Բուլղարիայի գյուղատնտեսության սոցիալիստական վերակառուցման ասպարեզում ձեռք բերված նվաճումների խոշոր նշանակությունը ընդգծվել է Սովետական Միության և Բուլղարիայի Կոմունիստական պարտիաների ներկայացուցիչների համատեղ հայտարարության մեջ՝ այս տարվա փետրվարին։

Այժմ խնդիր է դրված առաջիկա երկու-երեք տարվա ընթացքում ավարտել գյուղատնտեսության կոոպերացումը լիակատար կամավորության հիման վրա։

Բուլղարիայի Կոմունիստական պարտիայի ճիշտ քաղաքականությունը մարքսիզմ-լենինիզմի դրոշով Բուլղարիայի Ժողովրդական Ռեսպուբլիկան կհասցնի սոցիալիզմի հաղթանակին։

---



# ՊՐԱԿՏԻԿԱՅԻ ԴԵՐԸ ԻՄԱՑՈՒԹՅԱՆ ՊՐՈՑԵՍՈՒՄ

Հ. ԳԵՎՈՐԳՅԱՆ

Պատմության մատերիալիստական ըմբռնումը՝ պատմական մատերիալիզմը ելնում է այն բանից, որ հասարակության հոգևոր գործունեությունը՝ մտածողության պրոցեսն ու գիտակցությունը, գիտությունն ու կուլտուրան, քաղաքական գործունեությունը խարսխվում են նրա նյութական գործունեության վրա։ Այս պարզ, բայց հսկայական նշանակություն ունեցող ճշմարտության հայտնագործումն ու գիտական հիմնավորումը պայմանավորեց այն արմատական փոփոխությունները, որ մարքսիզմը կատարեց իմացության տեսության՝ գնոսեոլոգիայի մեջ։ Դրա շնորհիվ որակապես նոր մեկնաբանություններ ստացան այնպիսի երևույթներ, ինչպիսիք են մտածողությունը, գիտակցությունը, իմացությունը, հայտնաբերվեցին այն օրինաչափությունները, որոնք ընկած են դրանց առաջացման ու զարգացման հիմքում, վեր հանվեց դրանց իրական, ճշմարիտ փոխհարաբերությունը։

Մարդու կենսագործունեությունը մի շատ էական հատկանիշով տարբերվում է նրա կենդանական նախորդների կենսագործունեությունից։ Եթե կենդանիները պարզապես հարմարվում են բնությանը, բավարարվում նրանով, ինչ պատրաստի վիճակում գտնում են բնության մեջ, ապա մարդը ակտիվորեն է վերաբերվում իր շրջապատին. նա գործիքներ է պատրաստում և գոյամիջոցներ հայթայթում՝ ձևափոխելով բնության առարկաները, դրանք բազմազան հարաբերությունների մեջ դնելով. դրանով իսկ նա որոշ չափով ինքն է ստեղծում իր միջավայրը։ Մարդու և բնության այս փոխհարաբերությունն էլ, որի մեջ ակտիվ դերը մարդուն է պատկանում, աշխատանքային գործունեությունն է։ Աշխատանքի ընթացքում բնության առարկաների վերափոխումը՝ գործիքների պատրաստումը և դրանց օգնությամբ գոյամիջոցների արտադրումը մարդիկ կատարում են ոչ թե առանձին-առանձին, այլ համատեղ՝ հասարակության մեջ։ Ուստի աշխատանքային գործունեությունը միաժամանակ հասարակական գործունեություն է։ Ընդ որում այդ գործունեության ընթացքում մարդ վերափոխում է թե՛ շրջապատող բնությունը, թե՛ իրեն, թե՛ հասարակությունը։ Ուրեմն և ընդհանուր առմամբ նրա գործունեությունը պետք է բնորոշվի որպես արտադրական-հասարակական գործունեության ամբողջություն։ Համառոտակի, հենց այս էլ Մարքսն անվանում է պրակտիկա, մարդկանց նյութական գործունեություն՝ ի տարբերություն հոգևոր՝ մտածական, տեսական գործունեության։ Պրակտիկայի մեջ որոշիչ, վճռական դերը պատկանում է անմիջականորեն նյութական արտադրությանը՝ աշխատանքային գործունեությանը։

Իմացության մեջ պրակտիկայի դերն ըմբռնելու համար պետք է անդրադառնալ այն փաստին, որ մարդկային հասարակության պատմությունն սկսվում է այն պահից, երբ մարդու հեռավոր նախնին պատրաստում է առա-

*չին գործիքը և այն ի սպաս է դնում գոյամիջոցներ հայթայթելու նպատակին։
Աշխատանքային գործունեությունը հիմք հանդիսացավ մարդու ձևավորման
ու զարգացման, այդ թվում նրա մտածողության ու գիտակցության առաջաց-
ման և կատարելագործման համար։*

*Բնության երևույթները պարզապես դիտելով՝ հնարավոր է տեսնել սոսկ
նրանց հաջորդականությունը, այլ ոչ թե օրինաչափ կապերը։ Աշխատանքի
ընթացքում՝ գործիքներ պատրաստելիս և գոյամիջոցներ հայթայթելիս մարդ
ոչ միայն գործածում է այն, ինչ պատրաստի գտնում է բնության մեջ, այլև
վերափոխում է առարկաները, մի երևույթն օգտագործելով առաջացնում է
մեկ ուրիշը, դրանով իսկ հայտաբերելով առարկաների ու երևույթների հիմ-
քում ընկած օրինաչափությունները, նրանց միջև գործող պատճառական կա-
պերը։* «Դրա շնորհիվ,— *գրել է Էնգելսը,*— մարդու գործունեության *շնորհիվ
էլ հենց հիմնավորվում է* պատճառականության *մասին պատկերացումը, այն
բանի պատկերացումը, որ մի շարժումը մյուսի պատճառն է հանդիսանում»
(«Բնության դիալեկտիկա», Հայպետհրատ, 1950, էջ 256)։*

*Օրինաչափությունը, որ առանձին, կոնկրետ երևույթների մեջ դրսևորվող
ընդհանուրն ու անհրաժեշտն է, հնարավոր չէ ճանաչել՝ սահմանափակվելով
բնության առանձին իրերի և երևույթների միմիայն զգայական ընկալումով։
Դրա համար ուղեղը պետք է ի վիճակի լինի ընդհանրացումներ անելու, վե-
րացարկելու կոնկրետ իրերի պատահական հատկանիշներից և արտացոլելու
անհրաժեշտն ու մնայունը։ Վերացարկելու և ընդհանրացումներ անելու ունա-
կությունը ևս մարդու մոտ առաջանում և զարգանում է աշխատանքի շնորհիվ,
աշխատանքի ընթացքում։*

*Ինչպես ասվեց, աշխատանքը սկզբից ևեթ հասարակական գործունեու-
թյուն էր։ Համատեղ գործունեությունը ձևավորվող մարդկանց մեջ պահանջ
առաջացրեց աշխատանքի ընթացքում հաղորդակցել միմյանց հետ, մի բան
ասել իրար, խոսել։ Լեզվի առաջացումը վճռական նշանակություն ունեցավ
մարդու մտածողության օրգանի՝ ուղեղի զարգացման համար։ Լեզվի շնորհիվ
մարդ հնարավորություն ստացավ բառերի և նրանց կապակցությունների մի-
ջոցով արտահայտել իրականության մեջ եղած ընդհանուրը, վերացարկել
կոնկրետ, զգայական իրերից ու երևույթներից և կազմել հասկացություններ,
դատողություններ, կատարել մտահանգումներ։ Այս վերջիններս մտքի հիմնա-
կան ձևերն են հանդիսանում։ Դրանց միջոցով իրականանում է մարդու վերա-
ցական (աբստրակտ) մտածողությունը։ Դրանց միջոցով մարդ արտացոլում
է բնության մեջ եղած ընդհանուրը և օրինաչափը։*

*Համոզվելու համար, որ մարդու աբստրակտ մտածողությունը ձևավորվել
է նրա հասարակական-արտադրական գործունեության ընթացքում, վերցնենք
մաթեմատիկական հասկացությունների առաջացումը։ Մարդու հեռավոր նախ-
նիները (ինչպես և փոքրահասակ երեխաները) ընդհանրապես «թիվ» հասկա-
ցությունը չունեն։ Նրանց համար գոյություն ունի, ասենք, «երկու ծառ», «հինգ
քար», «տասը մատ» և այլն, այսինքն այն, ինչ կարելի է անմիջականորեն
ընկալել, տեսնել։ Առաջին եվրոպացիները, աշխարհագրական մեծ հայտնա-
գործությունների ժամանակ ոտք դնելով Աֆրիկայի ափերը, խաղաղ-օվկիա-
նոսյան կղզիները, զարմանքով տեսան, որ բնիկները իրերի փոխանակություն
կատարելիս դրանք դնում էին կողք-կողքի. եթե եվրոպացիները նրանց առա-
ջարկում էին, դիցուք, հինգ տուփ ծխախոտ, ապա նրանք այդ տուփերը*



*շարում էին գետնին և դիմացը դնում ծխախոտի փոխարեն առաջարկվող իրե-
րը։ Միայն այդպիսի ակնառու, շոշափելի համասարությունն էր նրանց մատ-
չելի։ Բայց չէ՞ որ նույն կերպ են վարվում նաև երեխաները՝ հաշվել սովորելիս.
նրանք հաշվում են կամ մատները, կամ կոնկրետ իրերը՝ քարերը, խաղալիք-
ները և այլն։ Նրանց համար թվերը կերպարանավորված են կոնկրետ իրերի
մեջ։ Մարդու հեռավոր նախնիների, ինչպես և փոքրահասակ երեխաների
այսպիսի կոնկրետ-զգայական մտածողությունը կոչվում է* առարկայական։
*Այս տեսակետից հետաքրքրական է, որ լատիներեն «հաշիվ», «հաշվել» բա-
ռերը ծագում են «կալկուլի» բառից, որ «խճաքար» է նշանակում. դա ժամա-
նակակից լեզվի մեջ այն հեռավոր դարաշրջանի արձագանքն է, երբ մարդիկ
հաշվում էին կոնկրետ առարկաների՝ խճաքարերի օգնությամբ։ Միայն հա-
զարամյակների փորձով, սերնդե-սերունդ գործ ունենալով իրերի քանակա-
կան հարաբերությունների հետ, բազմիցս իրերը դնելով այդպիսի հարաբե-
րությունների մեջ, մարդիկ ձեռք բերեցին իրերի քանակական հարաբերու-
թյունները նրանց կոնկրետ-զգայական պատկերից անջատելու ունակությունը։
Նույնը կարելի է ասել իրերի տարածական հարաբերություններն արտահայտող
երկրաչափական հասկացությունների առաջացման մասին։ Օրինակ, երբ
հյուսնը նշում է պատրաստվող իրի եզրագիծը, նա ըստ էության գործ ունի
մաթեմատիկական գծի հետ. չէ՞ որ նա նկատի է ունենում գծի միայն երկա-
րությունը, իսկ հաստությունը հաշվի չի առնում։ Մաթեմատիկական,
այսինքն՝ հաստություն չունեցող, գծի հասկացությունը ևս երկարատև փորձի
ընթացքում է մշակվել։ Մարդիկ բազմիցս պետք է համեմատեին իրերը, հա-
մոզվելու համար, որ որոշ դեպքերում կարելի է հաշվի չառնել իրերի հաս-
տությունը (լայնությունը, բարձրությունը), երբ այդ իրերը հարաբերության
մեջ են դրվում ըստ երկարության։*

*Ոչ միայն վերացարկելու և ընդհանրացումներ անելու ունակությունը,
այլև մտածողության ամբողջ տրամաբանական կառուցվածքը իրենց ծագու-
մով սերտորեն կապված են միայն մարդուն հատուկ կենսագործունեության՝
աշխատանքային գործունեության հետ։ Մտքի բոլոր ձևերը և տրամաբանու-
թյան օրենքները իրերի ու երևույթների միջև եղած պարզագույն և ամենա-
տարածված հարաբերություններն են արտահայտում և ճանաչվել ու գիտակ-
ցության մեջ ամրացել են գործնականում միլիարդավոր անգամ փորձվելուց
հետո։ Այդ մասին Լենինը գրել է. «Մարդու պրակտիկ գործունեությունը մի-
լիարդավոր անգամ պետք է մարդու գիտակցությանն ստիպեր կրկնելու տրա-
մաբանական զանազան ֆիգուրները,* որպեսզի *այդ ֆիգուրները* կարողանային
աքսիոմների *նշանակություն ստանալ» («Փիլիսոփայական տետրեր», Պետքաղ-
հրատ, 1947, ռուս. հրատ., էջ 164)։*

*Մարդկանց նյութական գործունեությունը՝ հասարակական-արտադրա-
կան պրակտիկան նրանց հոգևոր գործունեության հիմքն է կազմում ոչ միայն
այն իմաստով, որ մարդու աշխատանքային գործունեությունը պայմանավորել
է մտածողության առաջացումը, այլև այն իմաստով, որ նյութական գործու-
նեությունը, վերջին հաշվով, անմիջականորեն կամ անուղղակի կերպով միշտ,
բոլոր դարաշրջաններում պայմանավորել է իմացության առաջընթացը։ Դրա-
նում համոզվելու համար բավական է ընդհանուր ակնարկ գցել մարդու գիտե-
լիքների զարգացման, ընդլայնման և խորացման պատմական ուղու վրա։*

*Երկրաչափությունը և թվաբանությունը ծագել և սկզբնական ծաղկումն*

ապրել են այնպիսի երկրներում, ինչպիսիք են Եգիպտոսը, Հնդկաստանը՝ այն երկրները, որտեղ հնում բարձր աստիճանի է հասել հողամշակությունը։ Տարբեր հողամասերը սահմանագծելու և չափելու անհրաժեշտությունը խթանել է տարածաչափության զարգացումը, բերքի և գյուղատնտեսական մթերքների քանակը որոշելու անհրաժեշտությունը՝ զանազան ձևի անոթների (երկրաչափական մարմինների) ծավալը չափելու միջոցների որոնումները։ Եգիպտական աստղագիտությունը առաջացել է նույն նյութական պահանջմունքներից՝ Նեղոսի վարարումների ժամանակը ստույգ որոշելու անհրաժեշտությունից։ Հողագործության զարգացումը Եգիպտոսում, Միջագետքում և այլ երկրներում պահանջում էր ոռոգիչ ջրանցքների, ամբարտակների և ջրատնտեսական այլ կառուցվածքների պատրաստում, իսկ դա իր հերթին պայմանավորեց մեխանիկայի հիմունքների ստեղծումը։

Ահա և մեկ ուրիշ ժամանակաշրջանի՝ Վերածնության օրինակը։ Առևտրի և արտադրության զարգացումը, ծովագնացության ընդլայնումը զարկ տվին գիտության զարգացմանը։ Հանձինս Լեոնարդո դա Վինչիի և Կոպեռնիկոսի, Բրունոյի և Գալիլեյի, իսկ հետագայում՝ Նյուտոնի, Կեպլերի, Բրահեի, Լոմոնոսովի աննախընթաց վերելք ապրեցին կոնկրետ, արտադրությանն անմիջականորեն առնչվող գիտությունները, առանձնապես մեխանիկան։ Ծովագնացության աշխուժացումը և ընդլայնումը պահանջում էր երկնային ճշգրիտ քարտեզների (ատլասների) ստեղծում, և դա պայմանավորեց աստղագիտության զարգացումը։ Այս ամենն անհնար էր առանց մաթեմատիկական խոր գիտելիքների, որոնց զարգացումը և կատարելագործումը պսակվեց տեսական մտքի խոշորագույն նվաճումներից մեկով՝ դիֆերենցիալ և ինտեգրալ հաշվի ստեղծմամբ։

Նույնը կարելի է տեսնել բազմաթիվ այլ օրինակներով։ Բայց այստեղ կարևորը նաև մեկ այլ հանգամանքի ընդգծումն է։ Եթե իմացության զարգացումը պայմանավորվում է արտադրության զարգացման կարիքներով, ապա նրա վրա չեն կարող միաժամանակ չներգործել և իրոք ներգործում են այն արտադրահարաբերությունները, որոնց պայմաններում իրականանում է այդ արտադրությունը։ Առանց այս հանգամանքի անբացատրելի կլինեն իմացության, մասնավորապես գիտության, զարգացման որոշ ժամանակաշրջաններ և որոշ առանձնահատկություններ։

Օրինակ, ինչպե՞ս բացատրել արդի դարաշրջանի բուրժուական գիտության առանձնահատկությունները. մի կողմից արտասահմանում գիտության և տեխնիկայի որոշ բնագավառներում անժխտելի հաջողություններ կան, որոնք որոշակի արժեք են ներկայացնում նաև սոցիալիստական արտադրության տեխնիկական հետագա կատարելագործման համար։ Այդ հաջողությունները բացատրվում են արտադրության կատարելագործման և կազմակերպական վերակառուցման միջոցով առավելագույն շահույթ ստանալու պահանջներով, ուրեմն և կապված են գիտության այն մասնաճյուղերի հետ, որոնք կոչված են անմիջականորեն կամ անուղղակի կերպով սպասարկելու արտադրությանը (տեխնիկական գիտություններ, ֆիզիկա, քիմիա և այլն)։ Բայց, մյուս կողմից, արտասահմանյան գիտության բնորոշ առանձնահատկություններից մեկն այն է, որ այդ իսկ հայտնագործություններից տեսական այնպիսի եզրակացություններ են բխեցվում, որոնք շատ հաճախ թյուր պատկերացում են տալիս այդ հայտնագործությունների իսկական էության ու նշանակության մասին,



ծառայում են իդեալիստական կամ էլ ագնոստիկական տեսակետի, երբեմն էլ ուղղակի աստծո գաղափարի հիմնավորմանը։ Դա, անկասկած, բացատրվում է բուրժուական հասարակության մեջ իշխող հարաբերությունների ազդեցությամբ։

Այն դրույթից, որ հասարակական-արտադրական պրակտիկան իմացության հիմքն է կազմում, ամենևին էլ չի հետևում, թե իմացության յուրաքանչյուր կոնկրետ երևույթ իր բոլոր մանրամասնություններով կարելի է անմիջականորեն բխեցնել պրակտիկայից։ Պրակտիկայի հետ իմացության կապը շատ ավելի բարդ է։ Գիտության այս կամ այն հայտնագործությունը միշտ և անպայման իր նյութական նախադրյալներն ունի ժամանակի հասարակական-տնտեսական կյանքում, բայց միաժամանակ այդ հայտնագործությունը սերտորեն կապված է ուրիշ հայտնագործությունների և ուրիշ գիտությունների նվաճումների հետ, և արդեն դրանց միջոցով է միայն առնչվում մարդկանց նյութական գործունեությանը։ Դա ցույց տալու համար անդրադառնանք էներգիայի պահպանման օրենքին, որի նշանակությունը, ի դեպ, ֆիզիկայի շրջանակներից դուրս է գալիս. այն կազմում է մատերիալիստական աշխարհայացքի կարևորագույն անկյունաքարերից մեկը, որովհետև արտացոլում է մատերիայի և շարժման հավիտենականությունը։

Էներգիայի պահպանման օրենքի հայտնագործման նյութական նախադրյալը հանդիսացան շոգետեխնիկայի վիթխարի առաջընթացը և դրա հետ կապված արդյունաբերական խոշոր վերակառուցումը, մեքենայական խոշոր ինդուստրիայի ստեղծումը։ Շոգու ուժով աշխատող մեքենաներն սկսեցին արտադրությունից մասսայաբար դուրս մղել մանուֆակտուրային մեքենաները։ Միաժամանակ շոգին մուտք գործեց տրանսպորտի ասպարեզը. 1807 թվականին առաջին նավարկությունը կատարեց շոգու ուժով աշխատող առաջին նավը, իսկ 1825 թվականին Ստեֆենսոնի կառուցած շոգեքարշը երկաթուղային տրանսպորտի դարագլուխը բացեց։ Շոգետեխնիկայի այս վերջին նվաճումներն ակնառու, զգայաբար շոշափելի դարձրին այն, որ էներգիայի մի ձևը (ջերմայինը) որոշ հաստատուն համամասնությամբ վեր է ածվում մեկ ուրիշ ձևի (մեխանիկական էներգիայի)։ Բնորոշ է, որ էներգիայի պահպանման օրենքը հայտնագործողներից մեկի՝ Մայերի առաջին աշխատության մեջ շոգեքարշը բերվում է որպես ուժերի փոխակերպման ակնառու օրինակ։ Այն հանգամանքը, որ էներգիայի պահպանման օրենքի հայտնագործումը միմյանցից անկախ, միանգամայն ինքնուրույն կերպով կատարեցին մի քանի գիտնականներ (Լենց, Մայեր, Հ. Հելմհոլց, Ջոուլ), վերստին հաստատում է, որ դա ժամանակի հրամայական պահանջն էր դարձել, որովհետև կյանքում հասունացել էին նրա նախադրյալները։

Բայց էներգիայի պահպանման օրենքի հայտնաբերման նախադրյալները շոգետեխնիկայի արդյունաբերական լայն կիրառումով չեն սահմանափակվում։ Բացի այդ անմիջականորեն նյութական (և ամենագլխավոր) նախադրյալից, այդ օրենքի հայտնագործումը նախապատրաստված էր ֆիզիկայի, ինչպես և մյուս գիտությունների զարգացումով։

Օրենքի հայտնաբերման պահին՝ անցյալ դարի 40-ական թվականներին արդեն մշակված էին դրա համար անհրաժեշտ մաթեմատիկական աբստրակցիաները և դրանք արդեն կիրառում էին գտել տեսական մեխանիկայում. առանձնապես կարևոր էր պոտենցիալ էներգիայի հասկացության մշակումը։

Նույն ժամանակաշրջանում ֆիզիոլոգիան, մասնավորապես բույսերի ֆիզիո-
լոգիան, ապացուցեց, որ կենսական պրոցեսներն ընդհանուր են մյուս բնա-
կան պրոցեսների հետ։ Ժխտվեց այն տեսակետը, թե կենդանի բնությունը իր
որակական առանձնահատկությամբ պարտական է ինչ-որ «կենսական ուժի»
առկայությանը։ Հետազոտությունները հաստատեցին, որ օրգանիզմները մի
յուրատեսակ քիմիական լաբորատորիա են, որոնցում անօրգանական նյութը
վերածվում է օրգանական նյութի, ընդ որում նյութի այդ փոխակերպումն
ուղեկցվում է էներգիայի կլանումով ու անջատումով (արեգակի ճառագայթա-
յին էներգիայի վերածումով ջերմայինի և այլն)։ Վերջապես, ֆիզիկան արդեն
ապացուցել էր, որ բնության ուժերը միասնություն են կազմում և փոխարկ-
վում են միմյանց (էլեկտրականություն, մագնիսականություն, ջերմություն և
այլն)։

Այսպիսով, էներգիայի պահպանման օրենքի հայտնագործումը, շնորհիվ
տեխնիկայի ու արդյունաբերության զարգացման, հասունացավ պրակտիկա-
յում, այդ հայտնագործման նյութական նախադրյալները ստեղծվեցին կյան-
քում, և ֆիզիկան, հենվելով իր իսկ նվաճումների ու մյուս գիտությունների
տվյալների վրա, հայտաբերեց և ձևակերպեց այն։

Պրակտիկայի հետ իմացության կապը ճիշտ ըմբռնելու համար պետք է
նկատի ունենալ մի հանգամանք ևս. բարձրանալով մարդու հասարակական-
արտադրական գործունեության հիմքի վրա, նրա նկատմամբ լինելով երկրոր-
դային, ածանցյալ երևույթ՝ իմացությունը ձեռք է բերում հարաբերական
ինքնուրույնություն, իր հարաբերական ինքնազարգացման ոլորտը։ Դա հատ-
կապես ակներև է տեսական բնագիտության, մաթեմատիկայի և իդեոլոգիա-
յի բնագավառում։ Հենվելով ժամանակակից գիտության նվաճումների վրա,
նոր հայտնաբերված նյութերի վրա, տեսական միտքը կարող է շատ առաջ
անցնել՝ կառուցելով գիտական հիպոթեզներ, անելով կանխատեսումներ։ Այս
տեսակետից բնորոշ է, որ վերը հիշատակված՝ էներգիայի պահպանման օրենքի
գաղափարն իր ժամանակին, այսինքն՝ այդ օրենքի հայտնագործումից ամբողջ
երկու հարյուրամյակ առաջ, ձևակերպել էր ֆրանսիական ականավոր փիլիսո-
փա Դեկարտը։ Սա, առաջին հայացքից, կարծես թե հակասում է այն պընդ-
մանը, որ գիտության առաջընթացը վերջին հաշվով պայմանավորված է նյու-
թական կյանքի զարգացմամբ։ Բայց Դեկարտի կողմից էներգիայի պահպան-
ման օրենքի գաղափարի առաջադրումը իրականում ցույց է տալիս, որ արդեն
17-րդ դարում առկա էին այդ օրենքի հայտնագործման տեսական հիմքերը, և
հենց այն հանգամանքը, որ Դեկարտի հանճարեղ կռահումը մոռացվեց, ապա-
ցուցում է, որ տվյալ հայտնագործության համար նյութական հիմքերը կյան-
քում, պրակտիկայում չէին հասունացել։ Էքսպերիմենտալ բնագիտությունը,
որը անմիջականորեն է առնչվում տեխնիկայի ու արդյունաբերության զար-
գացման մակարդակին, Դեկարտի ժամանակներում ի վիճակի չէր կոնկրետ
փաստերով, կոնկրետ փորձնական տվյալներով ո՛չ հայտաբերել, ո՛չ էլ հիմ-
նավորել այդ օրենքը։ Պատահական չէ, որ Դեկարտի կողմից էներգիայի պահ-
պանման օրենքի գաղափարը բխեցվում էր զուտ հայեցողաբար, զուտ տե-
սականորեն, «մաքուր մտքի» ոլորտում։ Միաժամանակ այս փաստը ցույց է
տալիս, որ աշխարհի ճանաչման գործում մարդու մտածողությունը ակտիվ է,
որ տեսական միտքը կարող է ճեղքել իր ժամանակի նեղ մտահորիզոնը։ Բայց
նույնիսկ այս դեպքում էլ պրակտիկան վերջին հաշվով որոշիչն է մնում։ Այն



նախադրյալները, որոնցից ելնում էր Դեկարտը իր կռահումների համար, սեր-
տորեն կապված էին ժամանակի հասարակական-արտադրական կյանքի հետ։
Մասնավորապես հասարակական կյանքի աշխուժացումը և առևտրի ու ծովա-
գնացության զարգացումը սկիզբ էին դրել կոնկրետ գիտական հետազոտու-
թյուններին՝ գլխավորապես մեխանիկայի ու ֆիզիկայի բնագավառում, իսկ
վերջիններիս առաջընթացը հանգեցրել էր մաթեմատիկայի բուռն զարգացմանը։
Այս երեք բնագավառներում էլ Դեկարտն իր ժամանակի խոշորագույն դեմքե-
րից էր։ Այս հանգամանքը վճռական դեր խաղաց այն բանում, որ նա, չնա-
յած տեխնիկական ու արդյունաբերական անբավարար զարգացմանը, տեսա-
կանորեն հանգեր էներգիայի պահպանման օրենքի գաղափարին, ավելի ճիշտ՝
կռահեր բնության այդպիսի օրինաչափության առկայությունը։

Մտածողության, գիտության հարաբերական ինքնազարգացմամբ, հարա-
բերական ինքնուրույնությամբ է բացատրվում, որ գիտության մեջ տարբեր
ուղղությունների պայքարը և հին տեսակետների հաղթահարումը երբեմն ան-
միջականորեն պրակտիկ նպատակներ չեն հետապնդում, և առաջին հայացքից
թվում է, թե այդ ամենը տեղի է ունենում մաքուր մտքի ոլորտում։ Վերցնենք,
օրինակ, մաթեմատիկայի բնագավառը։ Այստեղ մտքի հարաբերական ինքնա-
զարգացումը առավել աչքի է զարնում. մաթեմատիկան միմյանցից բխեցնում,
ապացուցում է նոր բանաձևեր, թեորեմներ, օրենքներ։ Եվ թվում է, թե այդ
աշխատանքն անվերջ շարունակելի է։ Պատահական չէ, որ շատ մաթեմատի-
կոսներ միայն «մաքուր մտքի» արգասիքն են համարել այնպիսի հայտնագոր-
ծություններ, ինչպիսին է, ասենք, դիֆերենցիալ և ինտեգրալ հաշիվը։ Ան-
շուշտ, այս և նման հայտնագործությունները ցույց են տալիս մարդկային
մտածողության ձեռք բերած կատարելությունն ու ամենազորությունը։ Բայց
միաժամանակ, մոտիկից քննելիս, պարզվում է, որ մարդկային մտածողու-
թյան ինքնուրույն զարգացումը միայն և միայն հարաբերական է, որովհետև
բանաձևերի ու թեորեմների դուրս բերումը միմյանցից շարունակվել չի կարող,
եթե մաթեմատիկական գիտելիքները չկիրառվեն գործնականում և, իր հերթին,
գործնական կյանքը նոր տվյալներ չմատակարարի տեսական մաթեմատիկա-
յին։ Այսպես, դիֆերենցիալ և ինտեգրալ հաշվի ստեղծումը որքան էլ, իրոք,
տեսական մտքի հաղթանակն է, բայց, այնուամենայնիվ, նա իր խոր արմատ-
ներն ունի մարդկանց պրակտիկ գործունեության մեջ։ Բավական է թեկուզ
նշել հետևյալ հանգամանքը. բարձրագույն մաթեմատիկայի ստեղծողներ
Լայբնիցը և Նյուտոնը հենվում էին, մասնավորապես, Կեպլերի մաթեմատի-
կական մի այնպիսի աշխատության վրա, որը վերնագրված է՝ «Տակառների
չափումը»։ Փաստը մնում է փաստ. գինու տակառների ծավալի չափման հար-
ցերն արծարծող, այսինքն՝ գործնական պահանջներով թելադրված ու պրակ-
տիկ նպատակներ հետապնդող, մաթեմատիկական աշխատությունը դիֆերեն-
ցիալ ու ինտեգրալ հաշվի ստեղծման անկյունաքարերից մեկն էր հանդի-
սանում։

Վերջապես, կարելի է բերել ժամանակակից բնագիտության մեջ մղվող
փիլիսոփայական վեճերի օրինակը։ Առաջին հայացքից կարող է թվալ, թե
պրակտիկայի հետ չեն առնչվում, պրակտիկ նպատակներ չեն հետապնդում և
զուտ տեսական նշանակություն ունեն այն վեճերը, թե արդյոք ատոմը և մի-
ջուկային մասնիկները նյութակա՞ն համարել, թե՞ սոսկ շարժման ձևեր, էներ-
գիայի հանգուցակետեր, իրականության զգայական ընկալման ձևեր և այլն։

Այնինչ այդ վիճելի հարցերը այնքա՞ն սերտորեն կապված են ժամանակակից հասարակական կյանքի հետ։ Այդպիսի վեճերը ոչ միայն իմացաբանական արմատներ ունեն (աշխարհի վերաբերյալ մեխանիստական հայացքի կործանումը, ֆիզիկայի մաթեմատիզացումը, մեր գիտելիքների հարաբերականության տարբեր ըմբռնումը և այլն), այլև սոցիալական հիմքեր։ Բանն այն է, որ իմպերիալիզմի դարաշրջանում, ինչպես Լենինն է նշում, բուրժուական փիլիսոփայությունը մասնագիտացել է իմացաբանության բնագավառում, մատերիալիզմի դեմ պայքարում է՝ օգտագործելով բնագիտության նորագույն նվաճումներից բխող իմացաբանական հետևությունները։ Ընդհանրապես մատերիալիզմը և մասնավորապես դիալեկտիկական մատերիալիզմը՝ պրոլետարիատի փիլիսոփայությունը բուրժուական գաղափարների հարձակումից պաշտպանելը կազմում է այն անհաշտ դասակարգային պայքարի գաղափարական արտահայտությունը, որ պրոլետարիատը մղում է բուրժուազիայի դեմ։

Այս բոլոր հանգամանքները պետք է հաշվի առնվեն, երբ խոսքը վերաբերում է, օրինակ, աստղագիտության մեջ այս կամ այն երևույթի բացատրության համար առաջ քաշվող հիպոթեզների պայքարին, մաթեմատիկայի մեջ՝ կեղծ թվերի օբյեկտիվ նշանակությունը պարզելու համար մղվող վեճերին և այլն, որոնք անուղղակիորեն են առնչվում ժամանակի հասարակական-քաղաքական կյանքին ու արտադրության առաջադրած պահանջներին և միայն միջնորդված կերպով կարող են կիրառական, պրակտիկ նշանակություն ունենալ։

* * *

Փիլիսոփայության հիմնական հարցը՝ մտածողության և կեցության փոխհարաբերության հարցը մեկ ուրիշ կողմ ունի. արդյոք մտածողությունն ի վիճակի՞ է ճիշտ արտացոլել կեցությունը, ճշմարիտ գիտելիքներ տալ աշխարհի մասին։ Այլ կերպ ասած՝ աշխարհի մասին մեր գիտելիքները արդյոք օբյեկտիվ ճշմարտություննե՞ր են հանդիսանում։ «Փիլիսոփաների ահագին մեծամասնությունը դրական իմաստով է լուծում այս հարցը,—ասում է Էնգելսը, նկատի ունենալով ո՛չ միայն բոլոր մատերիալիստներին, այլև ամենահետևողական իդեալիստներին, օրինակ, բացարձակ իդեալիստ Հեգելին...» (Վ. Ի. Լենին, «Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ», Երկեր, հատոր 14, էջ 119—120)։

Բայց կան փիլիսոփաներ և փիլիսոփայական ուղղություններ, որոնք ժխտում են աշխարհի ճանաչելիությունը, գտնելով, որ մարդու գիտելիքները օբյեկտիվ ճշմարտություններ չեն, այլ սոսկ մտածողության օգնությամբ կարգավորված զգայություններ, աշխարհի վերաբերյալ «հարմար ու օգտակար սխեմաներ» և այլն։

Սա ագնոստիցիզմի տեսակետն է, որը հատուկ է Հյումի սկեպտիցիզմին, Կանտի տրանսցենդենտալ իդեալիզմին, նեոկանտականությանը, պոզիտիվիզմին, մախիզմին, ժամանակակից տրամաբանական պոզիտիվիզմին, պրագմատիզմին և այլն։

Իսկ ինչպե՞ս հերքել ագնոստիցիզմը։ Չէ՞ որ դրա համար բավական չէ սոսկ պնդել, որ մեր գիտելիքները օբյեկտիվ ճշմարտություններ են։ Անհրաժեշտ է բերել այնպիսի ապացույց, որը հավաստի մտածողության օգնությամբ ձեռք բերված գիտելիքների համապատասխանությունը օբյեկտիվ աշխարհին, այսինքն՝ նրանց ճշմարտության չափանիշը լինի։



Այդ ապացույցը մինչմարքսյան ամբողջ փիլիսոփայությունը որոնել է մտածողության ոլորտում։ Այնինչ մնալով մտածողության ոլորտում՝ տրամաբանական փաստարկներով, տեսական վեճերով հնարավոր չէ ապացուցել, որ մեր գիտելիքները համապատասխանում են օբյեկտիվ իրականությանը։ Ի տարբերություն ամբողջ նախամարքսյան փիլիսոփայության, ըստ դիալեկտիկական մատերիալիզմի այդ ապացույցը գտնվում է մտածողության ոլորտից դուրս։ Միայն այն ժամանակ, երբ մտածողության օգնությամբ ձեռք բերված գիտելիքները կիրառվում են պրակտիկայում և հասցնում սպասվող արդյունքին, ապացուցվում է դրանց համապատասխանությունը օբյեկտիվ աշխարհին։ Այսպիսով, պրակտիկան հանդես է գալիս ոչ միայն որպես իմացության հիմք, այլև որպես ճշմարտության չափանիշ։

Եթե աշխարհի մասին մարդու գիտելիքները ճշմարիտ չլինեին, ապա դրանք կիրառելի չէին լինի և չէին կարող սպասվող արդյունքին հասցնել։ Այսպես, մարդու կողմից իր պրակտիկ նպատակներով էներգիայի մի ձևի փոխարկումը մեկ ուրիշ ձևի, լավագույն ապացույցն է այն բանի, որ այդպիսի փոխակերպում տեղի է ունենում բնության մեջ և որ ֆիզիկայի այդ օրենքը բնության օրենքի արտացոլումն է, այսինքն՝ օբյեկտիվ ճշմարտություն է հանդիսանում։

Այսպիսով, պրակտիկան որպես ճշմարտության չափանիշ ապացուցում է, որ մտածողությունն ի վիճակի է տալ իրականությանը համապատասխանող գիտելիքներ, այսինքն՝ հասցնել օբյեկտիվ ճշմարտության։

Մտածողության օգնությամբ ձեռք բերված գիտելիքների պրակտիկ կիրառումը միաժամանակ ցույց է տալիս, որ այդ գիտելիքների համապատասխանությունը իրականությանը բացարձակ ու լրիվ չէ։

Դա բացատրվում է, նախ, նրանով, որ մարդ ի վիճակի չէ միանգամից ճանաչել ամբողջ անսահման աշխարհն իր ամբողջ բազմազանությամբ։ Իմացության յուրաքանչյուր առաջընթաց քայլ խորացնում է մեր գիտելիքները իրերի ու երևույթների մասին, դրանց նոր հարաբերությունների մասին, նրա որոշակի հատկությունների մասին։

Մյուս կողմից, մարդը իրականության իրերն ու երևույթները վերցնում է որոշակի սահմաններում և որոշակի հարաբերություններում, աբստրահելով այն բոլոր կողմերից ու հարաբերություններից, որոնք տվյալ դեպքում կողմնակի են, երկրորդական կամ ածանցյալ։ Ահա թե ինչու նրա հայտաբերած օրինաչափությունները ճշմարիտ են միայն որոշակի սահմաններում ու որոշակի հարաբերությունների համար և դրանցից դուրս կիրառելի չեն։ Այսպես, օրինակ, համեմատաբար ոչ մեծ տարածությունների ու արագությունների համար ընդունելի է, որ երկրագնդի մակերեսին իջեցրած ուղղահայացները զուգահեռ են։ Այն օրինաչափությունները, որոնք համապատասխանում են այս նախադրյալին, չեն կարող կիրառելի լինել որոշակի սահմաններից դուրս՝ ավելի մեծ տարածությունների և ավելի մեծ արագությունների համար, որովհետև երկրագնդի մակերեսին իջեցրած ուղղահայացներն իրականում իրար զուգահեռ չեն, այլ ճառագայթաձև հեռանում են միմյանցից։

Վերջապես, պետք է նկատի ունենալ նաև մի երրորդ հանգամանք։ Մտածողությունը օբյեկտիվ աշխարհի հետ առնչվում է միջնորդված կերպով՝ զգայությունների միջոցով։ Այն վերամշակում է զգայական նյութը՝ ստեղծում հասկացություններ, կազմում դատողություններ ու մտահանգումներ, կատարում է

*զանազան գործողություններ՝ համեմատություններ, անալոգիաներ, առաջադրում, ապացուցում կամ հերքում է հիպոթեզներ և այլն։ Մտածողական այս աշխատանքի պրոցեսում հնարավոր են սխալներ ու անճշտություններ, որոնք ի հայտ են բերվում մտածողության արդյունքները կիրառելիս։*

*Ահա թե ինչու մարդու գիտելիքներն իրենց մեջ միշտ պարունակում են հարաբերականության մոմենտ։ Գիտությունը երբեք չի կարող ասել, թե ինքն արդեն սպառել է աշխարհն ամբողջովին։ Աշխարհի երևույթներն անսպառ են, բայց միաժամանակ ըստ էության անվերջ է իմացության պրոցեսը։ Եթե իմացության յուրաքանչյուր աստիճանում աշխարհի մասին մարդու գիտելիքները հարաբերական ճշմարտություններ են, ապա դրանք միաժամանակ պարունակում են բացարձակ ճշմարտություն։ Այդ բացարձակապես ճշմարիտն է, որ իմացության հետագա առաջընթացի ժամանակ հիմք է հանդիսանում նոր գիտելիքների համար, որպես բաղկացուցիչ մաս մտնում է նոր գիտելիքների մեջ։ Հարաբերական ճշմարտությունների անվերջ գումարից ստացվում է բացարձակ ճշմարտությունը։*

*Այսպիսով, իմացության դիալեկտիկան որպես անհրաժեշտ մոմենտ պարունակում է հարաբերականություն, բայց ամբողջովին չի հանգում նրան։ Մեր գիտելիքների հարաբերականությունը մատնանշելիս չպետք է մոռանալ նաև այն բացարձակ ճշմարտության մասին, որ կա յուրաքանչյուր գիտելիքի մեջ։ Այլապես, եթե անտեսվի այդ բացարձակ ճշմարտությունը, եթե անտեսվի, որ մեր գիտելիքները եթե ո՛չ ամբողջովին, ապա իրենց մի մասով լիովին ու վերջնականորեն համապատասխանում են օբյեկտիվ իրականությանը, ապա դա կարող է հանգեցնել նաև մեր գիտելիքների օբյեկտիվ ճշմարտություն լինելու փաստի ժխտմանը։*

*Այս կարևոր հանգամանքը չըմբռնելը այն պատճառներից մեկն էր, որոնք մեր դարասկզբին հասցրին «ֆիզիկական իդեալիզմին»։ Ներատոմային աշխարհի օրինաչափությունների ուսումնասիրությունը ցույց տվեց, որ դրանց նկատմամբ կիրառելի չեն կլասիկ մեխանիկայի սկզբունքները։ Պարզվեց, որ դրանք անկիրառելի են մատերիայի ու նրա շարժման նորահայտ ձևերի համար. դրանով իսկ դրսևորվեց դրանց հարաբերական բնույթը, սահմանափակվածությունը մատերիայի որոշակի ձևերով և որոշակի, համեմատաբար ոչ մեծ, արագություններով։*

*Այնինչ մեր գիտելիքների այդ սահմանափակությունից, իմացության առաջընթացին զուգընթաց նրանց ճշգրտումից ու խորացումից որոշ ֆիզիկոսներ այն եզրակացությունն արեցին, թե մեր գիտելիքներն աշխարհի մասին ամբողջովին հարաբերական են, թե դրանք բացարձակ ճշմարտության ոչ մի հատիկ չեն պարունակում։*

*Անժխտելի է, որ ատոմի և նրա ներքին օրինաչափությունների մասին մեր ժամանակի գիտելիքները հարաբերական ճշմարտություններ են և գիտության հետագա առաջընթացին զուգընթաց պետք է փոփոխվեն, լրացվեն ու ճշգրտվեն, բայց և նույնքան անժխտելի է, որ դրանք պարունակում են բացարձակ ճշմարտություն (ուրեմն և օբյեկտիվ ճշմարտություններ են)։ Այդ բանի փայլուն ապացույցը այն հաջողություններն են, որ ձեռք են բերվել արդյունաբերության, գյուղատնտեսության, բժշկության, կենսաբանության մեջ և այլ բնագավառներում այդ օրինաչափությունների օրեցօր ընդլայնվող կիրառման ժամանակ։*



*Այսպիսով, ըստ դիալեկտիկական մատերիալիզմի արտացոլման տեսության, իմացությունը, աշխարհի ճանաչումը զուտ սուբյեկտիվ պրոցես չէ. այն չի սահմանափակվում իրերի ու երևույթների սոսկ զգայական ընկալումով և զգայության տվյալների մտածական, տեսական վերամշակումով։ Մարդն աշխարհը ճանաչում է ո՛չ թե պարզապես այն դիտելով, այլ վերափոխելու միջոցով։ Մարդու կողմից աշխարհի արդեն զգայական ընկալումն իսկ այն առանձնահատկությունն ունի, որ դա կատարվում է իրերն ու երևույթները ձևափոխելիս, դրանք բազմազան հարաբերությունների մեջ դնելիս, այսինքն՝ պրակտիկ գործունեության ընթացքում։ Մտածողությունը վերամշակում է զգայարանների միջոցով ստացված նյութը, անում ընդհանրացումներ, անհրաժեշտն ու մնայունը զատում է պատահականից ու երկրորդականից։ Եթե իրերի ու երևույթների զգայական ընկալումը՝ կենդանի հայեցողությունը իմացության պրոցեսի առաջին աստիճանն է, ապա զգայական նյութի մշակումը մտածողության կողմից կազմում է երկրորդ, այսպես կոչված՝ տրամաբանական, ռացիոնալ, աստիճանը։ Իսկ կարելի՞ է արդյոք ասել, թե զգայական նյութի տեսական, մտածական մշակումով իմացության պրոցեսն ավարտվում է։ Ո՛չ, չի կարելի, որովհետև իմացության նպատակը այնպիսի գիտելիքների հասնելն է, որոնք օբյեկտիվ ճշմարտություն լինեն, այսինքն՝ համապատասխանեն օբյեկտիվ աշխարհին, ճշմարիտ արտացոլեն նրա օրինաչափությունները։ Իսկ մեր գիտելիքների օբյեկտիվության հաստատումը, դրանց ճշմարտության չափանիշը մտածողության ոլորտից դուրս է։ Այդ գիտելիքների միայն պրակտիկ կիրառումն է հաստատում դրանց օբյեկտիվ ճշմարտություն լինելը։ Հետևաբար, որպեսզի իմացության պրոցեսն ամբողջական լինի, այն պետք է ևս մի աստիճան անցնի. մտածողության օգնությամբ ձեռք բերված արդյունքները պետք է ստուգում անցնեն պրակտիկայի բովում։ Այսպիսով, մարքսիստական-լենինյան իմացաբանությունը ցույց է տալիս, որ իմացության պրոցեսը որպես անհրաժեշտ մոմենտ ներառնում է պրակտիկան (տե՛ս Լենին, «Փիլիսոփայական տետրեր», էջ 174, ինչպես և Երկեր, հատ. 14, էջ 172—180)։ Իմացության ուղին համառոտակի ու հստակորեն Լենինը հետևյալ կերպ է բնորոշում. «Կենդանի հայեցողությունից դեպի աբստրակտ մտածողությունը* **և նրանից դեպի պրակտիկան՝** *այսպիսին է ճշմարտության ճանաչման, օբյեկտիվ ռեալականության ճանաչման դիալեկտիկական ուղին» («Փիլիսոփայական տետրեր», էջ 146—147)։*



*Մարքսիզմ-լենինիզմի ուսմունքի անօրինակ հաջողությունների և մեր օրերում նրա հաղթարշավի գաղտնիքը նրա սերտ կապն է պրակտիկայի հետ։ Մարքսիզմը ծնունդ առավ որպես այն պատմական անհրաժեշտության թեորիական արտահայտությունը, որ կապիտալիստական արտադրաեղանակի զարգացումը աստիճանաբար տանում է դեպի նրա հիմքերի խարխլումը և կործանումը պրոլետարիատի ձեռքով։ Իր ստեղծման պահից ի վեր մարքսիզմը անընդհատ զարգանում է՝ հարստանալով պատմական նոր փորձով, մասսաների ռևոլյուցիոն պրակտիկայի թեորիական ընդհանրացումներով։ Մարքսից և Էնգելսից հետո Լենինը, ապրելով կապիտալիզմի նոր ստադիայում՝ իմպերիա-*

լիզմի օրոք, զարգացրեց մարքսիզմը՝ ստեղծեց սոցիալիստական ռևոլյուցիայի նոր թեորիա, փայլուն հաղթանակի հասցրեց Հոկտեմբերյան ռևոլյուցիան և, ընդհանրացնելով սովետական իշխանության պրակտիկայի փորձը, մշակեց մեր երկրում սոցիալիզմի կառուցման ծրագիրը։ Մարքսիզմ-լենինիզմի կլասիկները ոչ միայն թեորիական մտքի հսկաներ էին, այլև ռևոլյուցիոն պրակտիկայի առաջամարտիկներ։ Պրակտիկայի հետ սերտ կապը ապահովում է մարքսիստական-լենինյան ուսմունքի դրույթների գիտական ճշմարտությունը։

Մարքսիզմ-լենինիզմին խորթ է ուտոպիաներով տարվելը։ «Պետություն և ռևոլյուցիա» աշխատության մեջ ընդգծելով մարքսիզմի այս բնորոշ հատկանիշը, Լենինը գրում է, որ պրոլետարիատի դիկտատուրայի մասին իրենց տեսությունը մշակելիս Մարքսը և Էնգելսը մասսայական շարժման փորձից էին պատասխան սպասում իրենց հուզող հարցերին։ Նույն կերպ, ապագա կոմունիստական հասարակարգի մասին գիտական ուսմունք ստեղծելիս «Մարքսի մոտ մի կաթիլ անգամ ուտոպիզմ չկա այն իմաստով, որ նա հնարեր, երևակայությամբ «նոր» հասարակություն ստեղծեր»։ Պատմական իրողությունը, մասսայական պրոլետարական շարժման փորձը այն ոլորտն էր, որի ուսումնասիրությունից պրակտիկ դասեր էր քաղում գիտական կոմունիզմի մեծ հիմնադիրը։ Ապագա կոմունիստական հասարակարգի մասին Մարքսը խոսում էր միայն այնչափ, որչափ այդ թույլ էին տալիս իր ժամանակի տվյալները, միայն այն առումով, որ կոմունիզմը, որպես օրինաչափ երևույթ, պատմականորեն ծնունդ է առնում կապիտալիզմի նույնքան օրինաչափ մահացման հետևանքով։

Պատմական հետագա զարգացումը, մասնավորապես սոցիալիզմի հաղթանակը մեր երկրում, երկրորդ համաշխարհային պատերազմից հետո աշխարհում ստեղծված նոր իրադրությունը, ռևոլյուցիայի հաղթանակը Չինաստանում և ժողովրդական դեմոկրատիայի երկրներում, փորձի այն գանձարանը եղան, որը հնարավորություն տվեց է՛լ ավելի հարստացնելու մարքսիզմ-լենինիզմի ամբողջ ուսմունքը։

Հետևաբար, մարքսիստական-լենինյան ուսմունքը մի անընդհատ զարգացող թեորիա է՝ խարսխված պրակտիկայի ամուր պատվանդանին։ Պրակտիկայի սերտ առնչությամբ թեորիայի հարատև զարգացումը վերաբերում է ոչ միայն մարքսիզմ-լենինիզմին, այլև ամեն մի գիտական տեսության։

Սրանից բխում է մեկ ուրիշ կարևոր հետևություն։ Գիտությանը խորթ է դոգմատիզմը։ Հասարակական-արտադրական անընդհատ զարգացող պրակտիկան պահանջում է գիտության առաջ քաշած տեսությունների ու տեսակետների մշտական զարգացում, հին, իրենց դարն ապրած տեսությունների համարձակ քննադատություն ու քննադատական յուրացում։ Պատմական իրողությունը, ռեալ կյանքը, կոնկրետ փաստերը գիտության կենսունակության անսպառ ակունքն են։

Վերափոխելով բնությունը՝ մարդը միաժամանակ ճանաչում է նրա զարգացման օրինաչափությունները։ Վերափոխելով հասարակությունը՝ մարդը տիրապետում է նրա օբյեկտիվ օրենքներին։ Այդ վերափոխիչ գործունեության՝ հասարակական-արտադրական պրակտիկայի հետ անխզելի կապը ամեն մի թեորիայի ուժն է։

---



# ԳՈՐԾԻՄԱՑՈՒԹՅԱՄԲ ՊՐՈՊԱԳԱՆԴԵԼ ՆՈՐԸ, ԱՌԱՋԱՎՈՐԸ

Վերջին տարիներս մեր ռեսպուբլիկայում հրատարակվող մի շարք նոր թերթերի ու ամսագրերի մեջ իր ուրույն տեղն է գրավում «Հայաստանի կոլտնտեսական» գիտա-արտադրական ամսագիրը, որը սոցիալիստական գյուղատնտեսության հետագա զարգացման ուղղությամբ որոշակի դեր է խաղում։ Մոտ կանգնած լինելով գյուղատնտեսության արտադրությանը, այս ամսագիրն օգնում է կոլտնտեսային գյուղի աշխատավորների ուժերի մոբիլիզացմանը, նրանց մտահորիզոնի զարգացմանը, երկրագործության կուլտուրայի բարձրացմանն ու նյութական բարիքների արտադրության ավելացմանը։

Իր գոյության երեք տարվա ընթացքում ամսագիրը դարձել է ՄՏ կայանների, սովետական տնտեսությունների աշխատողների, կոլտնտեսականների, գյուղատնտեսության մասնագետների խորհրդատուն, մտերիմ բարեկամն ու օգնականը։ Նրա էջերում լայնորեն լուսաբանվում է ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների, ՄՏ կայանների ու սովետական տնտեսությունների բազմաբովանդակ կյանքը, նրանց աշխատանքի հարուստ առօրյան, գիտության ու առաջավոր փորձի նվաճումները և արտադրության մեջ նրանց արմատավորման ձևերն ու մեթոդները։ Ամսագրի յուրաքանչյուր համարում գյուղատնտեսության տարբեր ճյուղերում աշխատողներն իրենց համար կարող են գտնել հետաքրքրական, կարևոր ու բովանդակալից նյութեր, կոնսուլտացիոն հոդվածներ, արժեքավոր խորհուրդներ, արտադրության առաջավորների ելույթներ, որոնցից կարելի է շատ բան սովորել։ «Հայաստանի կոլտնտեսական»-ի խմբագրությունը հաղթահարելով իր աշխատանքի սկզբնական շրջանում եղած դժվարությունններն ու թերությունները, կարողացավ բարելավել ամսագրի որակը և բարձրացնել նրա գաղափարական մակարդակը։ Խմբագրությունը դրան կարողացավ հասնել շնորհիվ այն բանի, որ մոտիկից կապվեց կոլտնտեսությունների, ՄՏ կայանների, սովետական տնտեսությունների հետ, իր շուրջը համախմբեց հեղինակային լայն ակտիվ։

Ամսագիրը կոլտնտեսային գյուղի աշխատավորներին տարբեր ձևերով ու մեթոդներով բացատրում է վեցերորդ հնգամյակի ընթացքում ռեսպուբլիկայի, տվյալ շրջանի ու կոլտնտեսության առջև դրված խնդիրները, դրանց կատարման միջոցներն ու հնարավորությունները։ Միաժամանակ կոնկրետ փաստերով ու թվերով նա ցույց է տալիս, թե ինչպես առանձին առաջավոր կոլտնտեսություններ զգալի հաջողություններ են ձեռք բերել գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման գործում։ Այսպես. ամսագրի № 10-ում (1956 թ.) ասված է, որ Իջևանի շրջանի Ներքին Աղդան, Ոևազլու, Ուզունթալա և Աչաջուր գյուղերի կոլտնտեսությունները հացահատիկային կուլտուրաների բերքատվության գծով արդեն հասել են 1960 թվականի համար սահմանված մակարդակին։ Մի այլ հոդվածում ցույց է տրված, որ Շահումյանի շրջանի Վորոշիլովի անվան կոլտնտեսությունը տարվա ընթացքում 100 հեկտար հացահատիկային կուլտուրաների դիմաց ստացել է 198 հազար ձու, որով կատարված է 1960 թվականի պլանը։ Հաղորդելով այդպիսի փաստեր, ամսագիրը վերջակետ չի դնում և համոզիչ կերպով ցույց է տալիս, որ դեռևս կան այլ ռեզերվներ, որոնց օգտագործման դեպքում կոլտնտեսությունները կարող են ավելի բարձր արդյունքի հասնել։

Ամսագրի տարբեր համարներից իմանում ենք, թե ինչպես կոլտնտեսությունների ղեկավար կազմը ուժեղացնելու, տնտեսությունը խելացիորեն վարելու և եղած ռեզերվները հմտորեն օգտագործելու շնորհիվ անցյալում ետ մնացող շատ կոլտնտեսություններ հասել ու հասնում են առաջավորների մակարդակին։ Այսպես, 1956 թվականի դեկտեմբեր ամսվա համարում տպագրված հոդվածներից մեկում ասված է, որ Միկոյանի շրջանի Շահումյանի անվան կոլտնտեսությունը երեք տարի առաջ ետ մնացող կոլտնտեսություններից մեկն էր, որի տարեկան եկամուտը 490 հազար ռուբլուց չէր անցնում։ Բայց այժմ դրությունը հիմնովին փոխվել է. 1956 թվականին կոլտնտեսությունը մոտ 3 ցենտներով գերակատարեց հացահատիկի և 4 ցենտներով ծխախոտի յուրաքանչյուր հեկտարից ստացվող բերքի պլանը։ Գերակատարված է նաև անասունների գլխա-

է նաև Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսի մասնակիցների փորձը, ժամանակակից գյուղատնտեսական գիտության ու տեխնիկայի նորագույն նվաճումները։ Այն արժեքավոր տեղեկություններ է հաղորդում նոր մեքենաների մասին, ծանոթացնում է նրանց օգտագործման ձևերին, հաճախ իր էջերում հանդես է բերում նորարար մեխանիզատորներին, որոնք համարձակ նախաձեռնությունների և ստեղծագործական աշխատանքի վառ օրինակներ են ցույց տալիս։

Խրախուսելի է, երբ ամսագրում գյուղատնտեսության առաջավորների հետ միասին հանդես են գալիս նաև գիտության աշխատողները, որոնք իրենց խորհուրդներով և գիտության նորագույն տվյալներով կոլտնտեսային գյուղի մարդկանց օգնություն են ցույց տալիս նորանոր հաջողությունների հասնելու համար։ Արժեքավոր են ամսագրի տարբեր համարներում տպագրված պրոֆեսոր Գ. Աղաջանյանի, տնտեսական գիտությունների թեկնածու Հ. Ղուշչյանի, պրոֆեսոր Ա. Մաթևոսյանի և մյուսների հոդվածները։

Լավ է, երբ «Հայաստանի կոլտնտեսական»-ը անդրադառնում է նաև կոլտնտեսություններում և ՄՏ կայաններում աշխատանքի կազմակերպման ու վարձատրման հարցերին, որոնք ակտուալ նշանակություն ունեն հանրային տնտեսության զարգացման գործում։ Այդ տեսակետից ուսանելի են «Կոլտնտեսականներին վարձատրել ըստ արտադրանքի քանակի» (№ 5, 1957 թ.) և «Նոր ձևով աշխատելու օրինակ» (№ 4, 1957 թ.) հոդվածները։

Վերը նշված, ինչպես նաև մի շարք այլ փաստեր ակնառու ցույց են տալիս, որ ամսագիրը որոշակի աշխատանք է կատարում ռեսպուբլիկայի գյուղատնտեսության առջև դրված խնդիրների կատարման ուղղությամբ։ Բայց ամսագրի 1956 թվականի և 1957 թվականի առաջին հինգ ամսվա համարների ուսումնասիրությունը մեզ բերում է այն համոզման, որ նրա աշխատանքում դեռևս կան էական թերություններ։

Ամենահիմնական ու լուրջ թերությունն այն է, որ «Հայաստանի կոլտնտեսական»-ում տպագրված հոդվածների մի զգալի մասը տառապում է մակերեսայնությամբ։ Այդ բանին, անկասկած, ազդել է այն հանգամանքը, որ ամսագրում տպագրված հոդվածների ծավալը 2—3 էջից չի անցնում, ավելին, նրանց մեջ կան 1—1,5 էջանոց հոդվածներ և ինֆորմացիոն բնույթի բազմաթիվ մանր թղթակցություններ, որոնցում շոշափված թեմաներն ու հարցերը խոր ու բազմակողմանի լուսաբանում չեն ստանում։ Ամսագրի շատ համարներ ու բազմաթիվ հոդվածներ փաստորեն կրում են օրաթերթային բնույթ։ Խմբագրության ընկերներն ըստ երևույթին մոռանում են, որ ամսագիրը նյութերի մատուցման ձևերով ու մեթոդներով պետք է տարբերվի օրաթերթերից, որ ամսագրի ծավալը հնարավորություն է տալիս գյուղատնտեսության կարևոր, արմատական հարցերը լուսաբանելու բազմակողմանիորեն, գիտական խորությամբ։

Իհարկե, հոդվածների որակը ծավալով չի որոշվում։ Լավ հոդված կարելի է գրել նաև փոքր ծավալով։ Բայց բոլոր դեպքերում պետք է նկատի ունենալ թեման, նրանում արծարծվող հարցերի շրջանակը։ Չի կարելի հոդվածները չափից դուրս սեղմելով, կրճատելով իջեցնել նրանց որակը։ Որպես օրինակ կարող ենք բերել Հիդրոտեխնիկայի և մելիորացիայի գիտահետազոտական ինստիտուտի դիրեկտորի գիտական գծով տեղակալ Լ. Բունիաթյանի «Ոռոգման ռեժիմը որպես բամբակենու բերքատվության բարձրացման կարևոր գործոն» հոդվածը (№ 1, 1957 թ.)։ Այս ակտուալ թեմային հատկացված է միայն երկու էջ և թերևս մասամբ այդ է պատճառը, որ հեղինակի առանձին փաստարկները, տվյալները, մեկնաբանությունները լոկ հայտարարության բնույթ են կրում։ Ընթերցողն սպասում է, որ հեղինակը, օրինակ, պետք է հիմնավորի ու բացատրի, թե ինչու հողի 10—12 սմ պնդացման դեպքում ջրման նորման բարձր է մնում, ինչու առաջին ջրման ժամանակ ջրման նորման 2,5—3 անգամ բարձր է, կամ թե ինչու է տափանումը ագրոնոմիայի տեսակետից արդյունավետ և այն ինչ ազդեցություն է թողնում սերմերի հավասար ծլումն արագացնելու վրա։ Բայց, ցավոք սրտի, հեղինակը չի պատասխանում այս հարցերին։ Ընկ. Բունիաթյանն իր հոդվածում նշում է, որ իրենք փորձերը կատարել են Արտաշատի շրջանի Մխչյան գյուղի կոլտնտեսության № 9 բրիգադայում, որը «յուրաքանչյուր հեկտարից միջին հաշվով ստացավ 28,7 ցենտներ բամբակ և պլանը կատարեց 130 տոկոսով: Դա կոլտնտեսության միակ բրիգադան էր, որը կատարեց և գերակատարեց բամբակի բերքատվության պլանը»: Սրանից անմիջապես հետո հեղինակը գրում է. «Բրիգադայի ցանքատարածություններում բերքի փոքր ինչ ցածր լինելը (3—5 ցենտներով) բացատրվում է գլխավորապես նրանով, որ ցածր էր ջրման տեխնիկան» (ընդգծումները մերն են—Վ. Գ.)։ Այս հակասական և խճճված պարբերությունից ոչինչ չի կարելի հասկանալ։

Մենք հեռու ենք այն մտքից, թե «Հայաստանի կոլտնտեսական»-ը պետք է տպագրի միայն գիտական մեծածավալ հոդվածներ։ Ոչ, խոսքն այդ մասին չէ, այլ այն մասին, որ ամսագրի հոդվածներն իրենց ծավալով, խորությամբ ու մատուցման ձևով պետք է լինեն բազմազան, միաժամանակ մատչելի։



Ինչպես վերևում ասվեց, ամսագիրը զգալի գործ է կատարում գյուղատնտեսության առաջավորների փորձի տարածման ուղղությամբ։ Բայց չի կարելի չնշել, որ երբեմն առաջավորների փորձի անվան տակ հրապարակվում են այնպիսի հոդվածներ, որտեղ բուն փորձի նկարագրությունը բացակայում է։ Այսպես, օրինակ, ամսագրի 1956 թվականի № 3-ում «Առաջավոր կթվորուհիների փորձից» ընդհանուր խորագրի տակ տպագրված է Շահումյանի շրջանի Կալինինի անվան կոլտնտեսության կթվորուհի Մ. Մկրտչյանի ելույթը, ուր փորձ է արված ցույց տալու, թե նա ինչպես է յուրաքանչյուր կովի կաթնատվությունը հասցրել 3 413 լիտրի։ Սկզբից նշենք, որ առաջավոր կթվորուհու ելույթի տակ գրված է՝ «Պատմածը գրի առավ զոոտեխնիկ Ջ. Մկրտչյանը»։ Տեսնենք, թե զոոտեխնիկը ինչպես է գրի առել կթվորուհու պատմածը, ինչպես է հաղորդել նրա փորձը։ Ելույթի սկզբում ասված է, որ «ճշտությամբ կիրառում էի օրվա աշխատանքի ռեժիմը, որը մեծ դեր խաղաց կաթնատվության բարձրացման գործում»։ Բայց թե ինչպես է կազմված այդ ռեժիմը և այն ինչպես է կիրառվել, ընթերցողը լրիվ պատկերացում չի կազմում։ Այնուհետև, «Կերը մենք տալիս ենք խմբային ձևով, միաժամանակ յուրաքանչյուր կովի նկատմամբ առանձին մոտեցում ենք ունենում»։ Իսկ թե ինչումն է կայանում այդ առանձին մոտեցումը, գաղտնիք է մնում։ Կամ, «Ձմեռը, ցերեկվա ժամերին կովերին հանում ենք զբոսանքի, իսկ արոտային շրջանում կովերը և՛ արածում են, և՛ լրացուցիչ կեր ստանում»։ Մի՞թե զոոտեխնիկը չի նկատում, որ այդ բանը կատարվում է պարտադիր զոոկանոնների համաձայն, բոլոր ֆերմաներում, և որպես փորձ նորություն չէ։ Ուրիշ բան է, եթե նա պատմեր, թե արոտային շրջանում ինչ լրացուցիչ կեր է տալիս կովերին, ինչ քանակությամբ, օրվա որ ժամերին և դա որքանով է բարձրացնում կաթնատվությունը։

Նույն համարում տպագրված է նաև զոոտեխնիկ Լ. Գրիգորյանի «Բազմամյա կթվորուհին» վերնագրով հոդվածը։ Մոտ մեկ էջանոց այս հոդվածի մեծ մասը ընդհանուր դատողություններ են։ Այսպես. «Բազմամյա կթվորուհի Ն. Խաչատրյանը այդպիսի արդյունքի է հասել երկրի առաջավոր անասնապահների փորձը արտադրության մեջ արմատավորելու», «զոոտեխնիկական կանոնները ճշտորեն կիրառելու շնորհիվ», «Նա կովերին կերակրում է ըստ նրանց ֆիզիոլոգիական վիճակի, մթերատվության ու պահանջի», «ծնելուց 10—15 օր առաջ կովերի կերաբաժնի մեջ որոշ փոփոխություն է մտցնում» և այլն։ Այս բոլորը կարոտ են բացատրության, հիմնավորման ու պարզաբանման։ Առաջավոր փորձին նվիրված նման մի շարք հոդվածները զուրկ են կոնկրետությունից։ Սա լուրջ թերություն է, որը պետք է հաղթահարել։

Գյուղատնտեսության առաջավորներն իրենց ելույթներում հաճախ առաջ են քաշում ուշադրության արժանի հարցեր, որոնք, ցավոք սրտի, երբեմն մնում են ստվերի տակ։ Բերենք միայն մեկ օրինակ։ Ամսագրի 1957 թվականի № 3-ում Հոկտեմբերյանի շրջանի Ջանֆիդա գյուղի կոլտնտեսության կթվորուհի Ա. Ավետիսյանի փորձի մասին տպագրված հոդվածում ասված է, թե «Առաջավոր կթվորուհին շարունակ հետևում է, որ իր խնամած կովերի կաթի մեջ չիջնի յուղի տոկոսը։ Նա կոլտնտեսության վարչության առաջ հարց է հարուցել, որ կթվորներին աշխօրեր գրանցելիս նկատի ունենալ ոչ միայն կթած կաթի քանակը, այլև նաև կաթի յուղայնությունը։ Դա նյութական շահագրգռվածություն կառաջացնի կթվորուհիների մեջ և կբարձրացնի կաթի որակը»։ Ասված է պարզ ու որոշակի։ Այդ հարցն արդեն հասունացած հարց է։ Բայց ամսագիրը դրա վրա անհրաժեշտ ուշադրություն չի դարձնում և իր ընթերցողներին չի տեղեկացնում, թե կյանքում ինչպես է կիրառվում առաջավոր կթվորուհու այդ կարևոր առաջարկությունը։

Ամսագրում տպագրված շատ հոդվածներում աչքի է զարնում տրաֆարետը, կրկնողությունները, ոճի միապաղաղությունը։ Անասուններին տրվող կերաբաժնի, կրծի մասաժի, ցանքի ժամկետների, պարարտացման և այլ հարցերի մասին հաճախ նույն բանն է ասվում։ Դժբախտաբար երբեմն այդ կատարվում է նույն համարում և նույնիսկ իրար հաջորդող հոդվածներում։ Օրինակ, ամսագրի 1956 թվականի № 7-ի «Մեխանիզացիա և էլեկտրիֆիկացիա» բաժնում տպագրված Մ. Հարությունյանի «Ինչպես կկազմակերպենք հացահատիկային կուլտուրաների բերքահավաքը» հոդվածում հիմնականում խոսվում է կոմբայններով խմբային հունձ կատարելու մասին և ցույց տրվում դրա օգուտը։ Դրանից անմիջապես հետո տպագրված է Գ. Գզոյանի «Լայնորեն կիրառել կոմբայնների խմբային աշխատանքի մեթոդը» հոդվածը, ուր հիմնականում արծարծված է այն հարցը, ինչի մասին ասված է նախորդ հոդվածում։

Խոսելով կոլտնտեսությունների հանրային տնտեսության այս կամ այն ճյուղի մասին, շատ հեղինակներ ոչ միայն կրկնում են միմյանց, ոչ միայն գրում են նույն պլանով ու

նույն ձևով, այլև բազմակողմանիորեն ու խորությամբ առաջ չեն քաշում տվյալ ճյուղին վերաբերող հանգուցային հարցերը, երբեմն էլ շրջանցում են այն արմատական հարցերը, որոնց հաջող լուծումը մեծ չափով կբարձրացնի այդ ճյուղերից ստացվող եկամուտը։ Դա առանձնապես վերաբերում է ծխախոտագործությանը։ «Ստալինի անվան կոլտնտեսության ծխախոտագործների հաջողությունները», «Ծխախոտագործական առաջավոր բրիգադան», «Հեկտարից 36 ցենտներ ծխախոտի համար», «Հեկտարից 23 ցենտներ ծխախոտի համար», «Հեկտարից 21 ցենտներ բերք» հոդվածները որպես կանոն սկսվում են հողի նախապատրաստման, գարնան կրկնավարի ու պարարտացման, ջերմոցային տնտեսության, սածիլման, պլանտացիաների մշակման մասին խոսելով և վերջանում տերևաքաղի նկարագրությամբ։ Բայց այնպիսի կարևոր հարցեր, ինչպիսիք են առաջին տեսակի ծխախոտի հումքի արտադրության ավելացումը, չորանոցային տնտեսության կարգավորումն ու ընդարձակումը, ծխախոտի մշակության աշխատատար պրոցեսների մեքենայացումը և այլն, համարյա չեն արժանանում ուշադրության։ Մինչդեռ դրանք ծխախոտագործության ներկայիս նեղ տեղերն են, որոնց հաղթահարումը խոշոր չափով կբարձրացնի այդ արժեքավոր կուլտուրայից ստացվող եկամուտը։

Ամսագրում կան այնպիսի հոդվածներ, որտեղ խոսվում է բազմաթիվ հարցերի մասին, որի հետևանքով էլ նրանցից և ոչ մեկը խոր լուսաբանում չի ստանում։ Օրինակ, Մեղրու շրջանի Լիճք գյուղի «Ինտերնացիոնալ» կոլտնտեսության նախագահ Գ. Մարգարյանը իր հոդվածում խոսելով սոցիալիստական մրցության ստանձնած պարտավորությունների կատարման ընթացքի մասին, շոշափում է աշնանացան տարածությունների նախապատրաստման, դաշտերի պարարտացման, եգիպտացորենի մշակության, այգեգործության և բանջարաբուծության հարցերը։ Խոսելով վերջին հարցի մասին, նա ասում է. «Անցած տարում մեկ հեկտարի վրայից ստացանք 750 ցենտներ կաղամբ»։ Մեզ թվում է, որ լավ կլիներ հենց միայն այդ հարցի մասին առանձին հոդված գրվեր և բազմակողմանիորեն ցույց տրվեր բանջարաբույծների աշխատանքի փորձը, որն ավելի օգտավետ կլիներ։

Հայտնի է, որ ՄՏ կայանները կոլտնտեսային արտադրության ղեկավարներ ու կազմակերպիչներ են և լիակատար պատասխանատվություն են կրում կոլտնտեսությունների ամբողջ գործունեության և պլանային առաջադրանքների կատարման համար։ Այստեղից էլ «Հայաստանի կոլտնտեսական»-ի առաջնահերթ խնդիրն է՝ ցույց տալ, թե ՄՏ կայաններն ինչպես են իրականացնում իրենց կազմակերպող, ղեկավար դերը, ինչպես են ապահովում հանրային տնտեսությունների առջև դրված խնդիրների կատարումը։ Բայց ամսագիրը հաճախ գործին այդպես չի մոտենում և միակողմանիորեն է լուսաբանում ՄՏ կայանների աշխատանքը։ Նրա 1956 թվականի №№ 2, 3, 7, 10, 11, 12 և 1957 թվականի № 2 և № 4-ում ՄՏ կայանների մասին տպագրված հոդվածները հիմնականում վերաբերում են այն հարցին, թե նրանք ինչպես են կատարում իրենց արտադրական-ֆինանսական պլանները, կոլտնտեսությունների հետ ունեցած պայմանագրային պարտավորությունները։ Դրանք, ինչ խոսք, կարևոր հարցեր են և լավ է, որ ամսագիրը լուսաբանում է։ Բայց լավ կլիներ դրանց հետ միասին ցույց տալ, թե ՄՏ կայաններն ինչպես են ղեկավարում կոլտնտեսություններին, ինչպես են ապահովում իրենց կազմակերպչական դերը։

Մեկ անգամ միայն ամսագիրը փորձ է արել անդրադառնալու այդ հարցերին, տպագրելով Հայկական ՍՍՌ Գյուղատնտեսության մինիստրի տեղակալ Կ. Քոչարյանի «Մեքենատրակտորային կայանների կազմակերպչական դերը» վերնագրով հոդվածը։ Բայց բանն այն է, որ այդ հոդվածը ընդհանուր է և չի պատասխանում առաջադրված հարցին։

Ամսագիրը հաճախակի նյութեր չի տպագրում Գյուղատնտեսության մինիստրության գիտա-հետազոտական ինստիտուտների աշխատանքի մասին, ցույց չի տալիս, թե նրանք ինչ պրոբլեմների վրա են աշխատում և ինչպիսի օգնություն են ցույց տալիս կոլտնտեսություններին, որոնք են նրանց աշխատանքի թերությունները։

Սոցիալիստական գյուղատնտեսության զարգացման գործում բացառիկ կարևոր նշանակություն ունի հանրային և անհատական շահերի ճիշտ զուգակցումը, կոլտնտեսականների նյութական շահագրգռվածության բարձրացումը։ Դրա համար շատ ձևեր կան։ Դրանցից է կոլտնտեսականների ամենամսյա ավանսավորումը, որը ոչ միայն մեծապես խթանում է հանրային տնտեսության եկամտաբերության ավելացմանը, այլև բարձրացնում է կոլտնտեսականների ակտիվությունն ու ստեղծագործական նախաձեռնությունը։ Այդ ուղղությամբ բազմաթիվ օրինակներ կարելի է բերել երկրի առաջավոր կոլտնտեսություններից։ Բայց բանն այլ է մեզ մոտ, Հայաստանում։ Դեռ անցյալ տարվա սեպտեմբեր ամսին եղբայրական Կիրգիզիայի գյուղատնտեսության աշխատողների դելեգացիայի անդամները մեր ռեսպուբլիկայի մի



շարք կոլտնտեսություններ ուսումնասիրելուց հետո արժեքավոր դիտողություններ արին եղած թերությունների մասին, որոնք տպագրվեցին «Հայաստանի կոլտնտեսական»-ում։ Դիտողություններից մեկն այն է, որ Հայաստանի նույնիսկ ամենաառաջավոր կոլտնտեսություններում ամենամսյա ավանսավորում չի կիրառվում, չնայած բոլոր հնարավորությունները կան այդ անելու համար։

«Թերևս դրանով պետք է բացատրել,— նշեցին դելեգացիայի անդամները,— որ շատ կոլտնտեսություններում աշխատող ձեռքերն անբավարար են օգտագործվում։ Մեզ մոտ յուրաքանչյուր կոլտնտեսական տարվա ընթացքում միջին հաշվով վաստակում է 400—450 աշխօր, իսկ այստեղ (Հայաստանում— Վ. Գ.) մեր ուսումնասիրած կոլտնտեսություններում, մեկ կոլտնտեսականի տարվա ընթացքում վաստակած աշխօրերը միջին հաշվով հասնում է 200—250-ի»։ Այս տեղին դիտողությունից հետո էլ «Հայաստանի կոլտնտեսական»-ը փորձ չի անում անդրադառնալու այդ հարցին, քննադատության չի ենթարկում այն կոլտնտեսությունների ղեկավարներին, որոնք անտեսել են կոլտնտեսականների ամենամսյա ավանսավորման գործը։

Ամսագրի էջերում միանգամայն անբավարար է ծավալվում քննադատությունը։ Ետ մնացող առանձին շրջանների, ՄՏ կայանների, կոլտնտեսությունների ու սովետական տնտեսությունների մասին շատ հազվադեպ են քննադատական-վերլուծական հոդվածներ երևում։ Ամսագիրը փորձ չի անում, ասենք, առանձին հոդվածներով կանգ առնելու այն հարցի վրա, թե ինչու Արթիկի, Թալինի, Սիսիանի շրջանները և առանձնապես մի շարք կոլտնտեսություններ ետ են մնում, որոնք են տվյալ շրջանների հողային օրգանների աշխատանքի թերությունները, կամ այդ օրգանների ո՞ր ղեկավար աշխատողներն են խախտում պետական կարգապահությունը և չեն ապահովում պլանային առաջադրանքների կատարումը։ Բոլշևիկյան առողջ, գործարար քննադատության փոխարեն ամսագիրը երբեմն թմբկահարում է աննշան հաջողությունները, այս կամ այն կոլտնտեսության հանրային տնտեսության առանձին ճյուղերում ձեռք բերված բարձր ցուցանիշների հովանու տակ անտեսում է ետ մնացող ճյուղերը։

Ամսագրում հանդես եկող առանձին հեղինակներ ձեռք բերված հաջողությունները ցույց տալու համար հաճախ դիմում են համեմատությունների մեթոդին։ Ի՛նչ խոսք, համեմատություններ պետք է կատարել, դա անհրաժեշտ է։ Բայց բոլոր դեպքերում գլխավոր շեշտը պետք է դնել պլանային առաջադրանքների կատարման վրա, որով և գնահատվում է ամեն մի շրջանի, կոլտնտեսության ու ՄՏ կայանի աշխատանքը։

Երբեմն էլ բանն այնպես է պատահում, որ «Հայաստանի կոլտնտեսական»-ը գյուղատնտեսական որևէ ճյուղի մասին տարբեր տեղերից գրում է միայն դրականը, առաջավոր փորձը, իսկ թերությունները, այդ ճյուղի ամբողջությամբ վերցրած ետ մնալը երկար ժամանակ չի նկատում։ Այդ տեսակետից շատ բնորոշ է հետևյալ օրինակը։ 1956 թվականի ընթացքում ամսագիրը տարբեր համարներում հոդվածներ է տպագրել Շահումյանի շրջանի Նորագավիթ գյուղի կոլտնտեսության, Վորոշիլովի անվան կոլտնտեսության, Հոկտեմբերյանի շրջանի Հոկտեմբեր, Էջմիածնի շրջանի Աղավնատուն գյուղերի թռչնաբուծական ֆերմաների լավ աշխատանքի, նրանց ձեռք բերած լուրջ հաջողությունների մասին։ Բայց դրանց կողքին կան շատ ու շատ կոլտնտեսությունների ֆերմաներ, որոնք գտնվում են միանգամայն անմխիթար վիճակում և նույնիսկ չեն արդարացնում իրենց պահպանման վրա կատարվող ծախսերը։ Այդպիսի ֆերմաների մասին ամսագիրը 1956 թվականի ընթացքում ոչ մի հոդված չի տպագրել և ամբողջ խորությամբ ցույց չի տվել ռեսպուբլիկայում թռչնաբուծության ետ մնալու պատճառը։ Միայն 1957 թվականի ապրիլ ամսին ամսագիրը անդրադարձել է այդ հարցին ու գրել, որ «մի շարք շրջաններում ՄՏ կայանների ու կոլտնտեսությունների վատ աշխատանքի պատճառով թռչունների գլխաքանակը, ինչպես նաև մսի և ձվի արտադրությունը, վերջին 3—4 տարիների ընթացքում ոչ միայն չի ավելացել, այլ նույնիսկ նվազել է»։

«Հայաստանի կոլտնտեսական»-ը դեռևս անբավարար է լուսաբանում նաև գյուղատնտեսության մասնագիտացման, աշխատանքի արտադրողականության բարձրացման, պլանավորման, գյուղատնտեսական արտելի Կանոնադրության կենսագործման հարցերը, ինչպես նաև կոլտնտեսականների ագրոզոո-տեխնիկական ուսուցման, կուլտուր-կենցաղային պայմանների բարելավման, գյուղերում բնակելի տների, բաղնիքների, ակումբների և այլ օբյեկտների շինարարության հարցերը։

Ամսագրի տարբեր համարներում մենք հանդիպում ենք ակնարկների, և դա լավ է։ Առանձին ակնարկներ, ինչպես, ասենք, Վ. Անանյանի «Արենի» ակնարկն է, հետաքրքրությամբ է կարդացվում։ Բայց կան նաև այնպիսի ակնարկներ, որոնք սովորական հոդվածներից չեն տարբերվում։ Այս հանգամանքի վրա խմբագրությունը պետք է ուշադրություն դարձնի։ Խմբագրությունը պետք է լուրջ ուշադրություն դարձնի նաև նամակների բաժնի վրա, որովհետև տպագրված շատ նամակներ ոչ մի նոր

հարց չեն բարձրացնում և ոչնչով չեն տարբերվում փոքր թղթակցություններից ու ինֆորմացիաներից։

Ամսագրի նյութերում երբեմն թույլ են տըրվում ոճական և լեզվական սխալներ։ Օրինակ՝ «Բանող ձիերի օգտագործման ասպարեզում լավ փորձ ունի նաև Հայկական պետական ձիաբուծական ախոռը. այդ փորձը պետք է լայն տարածում գտնի մեր ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում» (№ 2), «Կատարվել ու գերակատարվել է անասունների գլխաքանակի պլանը» (№ 12), (ընդգծումները մերն են—Վ. Գ.)։ Կան նաև խրթին, դժվարամարս նախադասություններ, որոնցից նշենք մեկը. «Սովետական գիտնականները մշակել և այժմ գործադրում են տարբեր կոնստրուկցիաների շիթուղղիչ սիստեմներ, որոնց օգնությամբ ոռոգման սիստեմը մեծ չափով պահպանվում է հատակյա ջրաբերուկներից հենց մայր ջրանցքի գլխամասում» (№ 2)։

Միանգամայն անբավարար է ամսագրի պոլիգրաֆիական կատարումը, մասամբ էլ՝ գեղարվեստական ձևավորումը։ Հատկապես վատ են տպագրվում կլիշեները. մի շարք ֆոտո նկարներ դժգույն են, խավար ու ոչ տպավորիչ։

«Հայաստանի կոլտնտեսական»-ի խմբագրությունը, հենվելով հեղինակային լայն ակտիվի վրա, կարող է և պետք է վերացնի վերը նշված թերությունները։ Դրա հետ միասին պետք է ավելի լայնորեն լուսաբանի կոլտնտեսությունների էկոնոմիկայի հարցերը, ուժեղ պայքար ծավալի գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության և անասնաբուծության մթերատվության բարձրացման համար, հետևողականորեն գլխավորի կոլտնտեսային աշխատավորության հայրենասիրական այն պայքարը, որ նրանք մղում են յուրաքանչյուր շնչին ընկնող կաթի, յուղի և մսի արտադրությամբ առաջիկա տարիներին հասնելու Ամերիկայի Միացյալ Նահանգներին։ Այդ գործում խմբագրությանը պետք է կոնկրետ օգնություն ցույց տա ՀՍՍՌ Գյուղատնտեսության մինիստրությունը և էլ ավելի բարձրացնի ամսագրի դերը՝ սոցիալիստական գյուղատնտեսության հետագա վերելքի համար մղվող պայքարում։

Վ. ԳԵՎՈՐԳՅԱՆ

Խմբագրության հասցեն՝
Երևան, ՀԿԳ Կենտկոմի շենք,
Հեռ. 2—03—18, 2—56—92, 2—04—66.

Адрес редакции: Ереван, здание
ЦК КП Армении. тел. 2—03—18,
2—56—92, 2—04—66.



ՎՖ 08374 Պատվեր 2050 Տիրաժ 5900
Տպ. 8 մամուլ, մամուլում 63.840 նիշ: Ստորագրված է տպագրության 20/VIII 1957 թ.։
ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Գլխհրատի № 6 տպարան, Երևան, Լենինի պող. № 51։



Գին 2 ռ. 50 կ.